ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք







# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ • 1989

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՍԵՊՏԵՄԲԵՐ
9
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Սոցիալական արդարությունը վերակառուցման պայման է միջոց* . . . . . . . 3

*Հ. ԱՐՇԱԿՅԱՆ— Դիտական աշխատանքի արդյունավետությունը և մարդկային գործոնը* . . . . . . . 11

*Ռ. ՊՈՂՈՍՅԱՆ— Դիտողություններ քրեական դատավարության օրենսդրության կատարելագործման վերաբերյալ* . 16

*Վ. ԱՍԼԱՆՅԱՆ— Հասարակական-քաղաքական գրքի հրատարակման ու տարածման մի քանի խնդիրներ* . . 24

*Մ. ԲԱԼՈՅԱՆ— Ագրարդի կադրերին՝ տնտեսագիտական գիտելիքներ* . . . . . . . . . 30

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ռ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ— Կուսակցական դեմոկրատիան՝ հաջողության գրավական* . . . . . . . 36

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

*Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ— «Սառը պատերազմի» մարումը* . . 44

ԶՐՈՒՅՑՆԵՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Բ. ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ— Պատմությունը և մենք* . . . 53

ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԽԻՎՆԵՐԻՑ

*Անհատի պաշտամունքի և դրա հետևանքների մասին։ ԽՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XX համագումարին 1956 թվականի փետրվարի 25-ին* . . . . . . . . . 61

## ՄՇԱԿՈՒՅԹ ԵՎ ԿՅԱՆՔ

*Ս. ՀԱՍՄԻԿՅԱՆ— Կինոն, մենք և ազգային գաղափարը* . 83

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— «Աստղային երկինք գլխավերևում...»* . 88

*Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Ընդդեմ պատերազմի և հանցագործության* . . . . . . . . . 94



**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 42—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11







# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՅՄԱՆ ԵՎ ՄԻՋՈՑ

**Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ արմատական շահերը շոշափող հեղափոխական ընթացումն անխուսափելիորեն սրում է սոցիալական արդարության պրոբլեմը, դրա համատարած ներդրումը դարձնում օրվա հրամայական։ Հասարակական հարաբերությունների կատարելագործմամբ՝ դեմոկրատիայի ընդլայնմամբ, հրապարակայնությամբ, տնտեսական մեխանիզմի կարգաբերմամբ խթանված սոցիալական արդարությունը վերակառուցման ծանրակշիռ պայման է։

Սոցիալական արդարության գաղափարն արդ ներթափանցում է մեր կյանքի բոլոր ոլորտները՝ սոցիալ-տնտեսական, քաղաքական, հոգևոր և միջազգային։

Սոցիալ-տնտեսական ոլորտում այդ սկզբունքի հետագա կատարելագործումը ենթադրում է հասարակական հարաբերությունների նյութական հիմքերի ամրապնդում, բաշխման սկզբունքի կատարելագործում, ճշգրիտ կիրառում, կյանքի և աշխատանքի պայմանների բարելավում, անհատի սոցիալական իրավունքների երաշխիքներ, հասարակության բոլոր սոցիալական խմբերի ու խավերի շահերի հաշվառում։

Քաղաքական ոլորտում սոցիալական արդարությունը պետք է արտահայտվի խորհրդային, ամբողջությամբ վերցված սոցիալիստական դեմոկրատիայի, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ծավալման, անհատի համակողմանի ազատության ապահովման, հասարակական և պետական գործերի կառավարմանը աշխատավորների ավելի լայն ու ներգործուն մասնակցության մեջ, աշխատավոր մարդկանց սոցիալական ակտիվության բարձրացման, դասակարգերի ու խմբերի սոցիալական միասնականության, ժողովուրդների ազգային մշակույթի ու լեզվի անկաշկանդ զարգացման, հանրապետությունների ու ազգային միավորումների սուվերենության ընդլայնման, ԽՍՀՄ ազգերի և ժողովուրդների անշահախնդիր բարեկամության ու իրավահավասար փոխհարաբերությունների ամրապնդման մեջ։

Հոգևոր կյանքի ոլորտում այն պետք է դրսևորվի մշակույթի, արվեստի, գրականության, գիտության, կրթության մատչելիության հարցում հասարակության բոլոր անդամների համար առավել բարենպաստ ու միատեսակ պայմանների ապահովմամբ, յուրաքանչյուր մարդու համակողմանի ու ներդաշնակ զարգացման համար հավասար հնարավորությունների ստեղծմամբ։

Միջազգային ոլորտում այն դրսևորվում է սկզբունքորեն նոր ու արդարացի միջպետական հարաբերությունների ստեղծմամբ, որն իրականում դառնում է ժողովուրդների բնականոն հարաբերությունների, խաղաղության, բարեկամության և համագործակցության իդեալների հաստատման գործուն միջոց։

Սոցիալիզմի ձևախեղումների հետևանքով անհամաչափություն գոյացավ անհատի իրավական վիճակում, այդ թվում՝ սոցիալ-տնտեսական, կուլտուրական, քա-

*ՀՈՎՍԵՓՅԱՆ ԱՐՄԵՆ ԱՍԻՐԽԱՆԻ— ՀԿԿ Կենտկոմի գաղափարախոսական բաժնի կոնսուլտանտ, պատմական գիտությունների թեկնածու։*

ղաքացիական և քաղաքական իրավունքների հարաբերակցության մեջ: Այնուհետև անարդյունավետ և երաշխիք չապահովող դարձան մի շարք սոցիալական, անձնային, քաղաքական իրավունքներ, գերագնահատվեց պետական հարկադրման դերը: Նշմարվեց անձի իրավական պաշտպանվածության մակարդակի անկման կայուն միտում: Այդ երևույթների արմատները պետք է որոնել քսանական թվականներից սկսված սոցիալիզմի ձևախեղումների մեջ: Դրանցից շատերի պատճառները հարկ է փնտրել նաև այսօրվա պրակտիկայում, այս կամ այն օղակի, առանձին աշխատողի թույլ տված սխալի, մեր զարգացման իրական պրոբլեմների ու դժվարությունների, դաստիարակչական գործերի թերացումների մեջ:

Սոցիալական արդարության էության հարցի տեսական ծավալուն մշակումը սկսվել է ոչ այնքան վաղուց: Այս հարցի լուսաբանմանն է նվիրված ԽՄԿԿ Կենտկոմին կից հասարակական գիտությունների ակադեմիայի գաղափարախոսական աշխատանքի ամբիոնի և երկրի տասնմեկ ռեգիոնների կուսակցական կոմիտեների հետ համատեղ կատարված վստահության արժանի սոցիոլոգիական կոմպլեքս հետազոտությունը: Դա վերակառուցման ընթացքում բարոյական գիտակցության ներկայացուցչական լայնամասշտաբ ուսումնասիրության առաջին փորձն է, որին մասնակցել են սոցիալական բոլոր խմբերի ներկայացուցիչները (Нравственное сознание: состояние и изменение под влиянием перестройки. АОН при ЦК КПСС. М., 1988 г.): Ստացված տվյալները՝ տեղական պայմաններից ու առանձնահատկություններից բխող քիչ հավելումով կամ պակասով կարելի է ընդհանրական համարել նաև մեր հանրապետության համար:

Ակնհայտ է աշխատավորների մեծագույն շահագրգռվածությունը սոցիալական արդարության սկզբունքների կենսագործման նկատմամբ: Առաջարկված հարցադրումների նկատմամբ հետաքրքրության տեսակետից հարցվողներն առաջին տեղը հատկացնում են սոցիալական արդարության սկզբունքին (72,4 տոկոս), երկրորդը՝ ընտանեկան հարաբերություններն են ու երեխաների դաստիարակությունը, հաջորդը՝ բարոյականության խախտումներն են ու դրանց դեմ պայքարը և այլն:

Հետազոտությունը միաժամանակ վկայեց բոլոր ուղղություններով դեռևս շարունակվող հասարակության ստեղծագործական ներուժի զարգացումն արգելակող, մարդկանց հասարակական ակտիվությունն ու սոցիալական ինքնազգացումը խաթարող, բարոյական նիհիլիզմ ծնող արդարության խախտումների փաստը, ցույց տվեց, որ սոցիալական արդարության որևէ կարգի խախտում, բարոյազանցության նկատմամբ հանդուրժողականություն չի կարող մեր կյանքի նորմ լինել, որ այս իմաստով «ներքևները» այլևս չեն ուզում ապրել նախկինի պես: Հարցվածների 70 տոկոսը դատապարտում է կաշառքը, նվիրատվությունները, պրոտեկցիոնիզմը, հասարակական ունեցվածքի նկատմամբ տիրոջ զգացում ունի 63,3 տոկոսը: Դրա հետ մեկտեղ հետազոտության նյութերը խոսում են մեր կյանքի բարոյական հիմքերի լուրջ ձևախեղման, բարոյական արժեքների մակարդակի անկման, սոցիալական կոռոզիայի, բարոյական ոլորտի աղտոտման մասին: Հարցմանը պատասխանած բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների 76,7 տոկոսը նշել են, որ իրենց կոլեկտիվներում գոյություն ունի սոցիալական անարդարություն, 69,5-ը՝ մարդու հանդեպ անտարբերություն, 62,2 տոկոսը՝ «պետական» մարդկանց հետ ծանոթության, կապերի օգտագործում, լավ ապրել կարողանալու համար ղեկավարության հետ լեզու գտնելու անհրաժեշտություն:

ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը նոր փուլ սկզբնավորեց նաև խորհրդային հասարակության կյանքում, սոցիալական արդարության հաստատման գործում: Կուսակցության XXVII համագումարը հավաստեց. «Սոցիալական արդարության սկզբունքի խստիվ կիրառումը ժողովրդի միասնության, հասարակության քաղաքական կայունության, զարգացման դինամիզմի կարևոր պայմանն է» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 62):

Տասնամյակներ շարունակ պրակտիկա էր դարձել ցանկացած գործողությունների ու վարվեցողության համակողմանի կանոնակարգումը, արգելքներն ու սահմանափակումները աշխատանքի ընդունելիս ու ազատելիս, մարդկանց գրանցելիս, անգամ՝ երկրի, հանրապետության ներսում տեղաշարժվելիս, անվերջ արգելափակոցները գյուղատնտեսական արտադրության մեջ, առևտրում, քաղաքացիական այլ գործարքներում, ընկերություններ ու միություններ ստեղծելիս, մամուլում խոսքի ազատություն իրագործելիս և այլն: Սոցիալական արդարության լիարժեք հաղթանակի համար մենք դեռևս պետք է ամբողջությամբ ազատագրենք անհատին, հանենք



նրա տնտեսական, սոցիալական, քաղաքական, հոգևոր ակտիվությունը կաշկանդող սահմանափակումներն ու արգելքները: Վերակառուցման պրոցեսում զգալիորեն բարձրացել է ուշադրությունը մարդու, նրա կարիքների, հետաքրքրությունների, ինչպես և հարգանքը նրա պատվի ու արժանապատվության նկատմամբ: Նշանակում է մենք պետք է վերակառուցենք նաև մեր սեփական հոգեբանությունը, որպեսզի սոցիալական արդարությունը չդիտվի որպես մի ինչ-որ պարգև, պատահական բարեբարություն, այլ որպես մարդկային կեցության բնական կենսավիճակ:

Մենք նոր պիտի ընդունենք օրենքներ բացախոսության, մամուլի ու մասսայական ինֆորմացիայի միջոցների, հասարակական կազմակերպությունների գոյության իրավունքի, խղճի ազատության, գործադուլների և այլնի մասին: Իսկ այս ձեռնարկումներից յուրաքանչյուրը, շոշափելով քաղաքացիների և կոլեկտիվների իրավունքներն ու օրինական շահերը, վկայելով նրանց սոցիալական, քաղաքական, հոգևոր ազատության սահմանների մասին, ունի նաև սոցիալական արդարության ընդգծված ենթատեքստ:

«Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիստական սկզբունքը սոցիալական արդարության հիմքերի հիմքն է: Ասենք, որ առավել պաշտպանության կարիք ունի «ըստ աշխատանքի» սկզբունքը, քանի որ դրա խախտումը ուղղակիորեն վնասում է մեր էկոնոմիկային, հանգեցնում արդարության մեր ընկալման մեջ ամենևին չտեղավորվող երևույթների գոյավորմանը, հարուցում մարդկանց արդարացի զայրույթը: Այդ երևույթներից առավել տարածվածները համահարթման և իր միջոցներից ավելիով ապրելու միտումներն են: Եթե առաջինը բարերարություն է անբանին, խոտանարարին, միաժամանակ ոտնահարելով, վիրավորելով լավ ու բարեխիղճ աշխատողի արժանապատվությունը, գցելով ազնիվ ու շահադիր աշխատանքի վարկը, մարելով մարդկանց հասարակական ակտիվությունը, ապա երկրորդն ուղղակի դրսևորումն է մակաբուծության՝ իր հակաբարոյական երբեմն հանցագործ էությամբ հանդերձ:

Համահարթումը խոչընդոտում է տնտեսական առաջընթացին, աշխատանքի արտադրողականության աճին: Այսօր մենք ցավով ենք խոստովանում, որ անհատի ազատության և անհատական նախաձեռնության ճնշման, արդարությունը հավասարությամբ նենգափոխելու հետևանքով մարդկանց տնտեսական, բնական նախաձեռնությունը վերասերվել է ընդհատակյա բիզնեսի: Ցավոք, մեզ յոթ տասնամյակ էր պետք համոզվելու համար, որ նյութական շահագրգռության սկզբունքից հրաժարվելն անխուսափելիորեն թուլացնում է աշխատանքի նկատմամբ եղած տնտեսական ու բարոյական խթանները, բացասաբար ազդում ոչ միայն արտադրության զարգացման, այլև հասարակական կյանքի մյուս բոլոր կողմերի վրա: Ճիշտ կլիներ, որ նույն պրոֆիլի և մոտավորապես համանման պայմաններում գտնվող ձեռնարկություններն ունենային շահույթի բաշխման միևնույն նորմատիվը, որը հնարավորություն կընձեռեր առավել արդյունքով աշխատողին իր կարիքների համար ավելի շատ միջոցներ ստանալու, իսկ վատ աշխատողին՝ քիչ:

Այժմ, երբ ձեռնարկություններն անցնում են լրիվ տնտհաշվարկի, ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման, երբ գյուղատնտեսության մեջ, սպասարկման ոլորտում բացվել է դեպի բրիգադային ու ընտանեկան կապալ տանող ճանապարհը, անհեռանկար է հավասարարության պրակտիկան: Վերջ է տրվելու այն արատավոր իրավիճակին, երբ թե՛ լավ, թե՛ վատ աշխատողը վարձատրվում էին գրեթե նույն չափով: Մերժելով հավասարարությունը որպես կոմունիստական հավասարության չափանիշ, կուսակցությունը իրականացնում է տնտեսական այնպիսի քաղաքականություն, որը միտում է բանվորների և գյուղացիների եկամուտների մերձեցմանը, աշխատավորների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձի բարձրացմանը: Սակայն նման հավասարեցումը համահարթմանը միանշանակ չէ, քանի որ դա այս կամ այն կերպ հենվում է աշխատանքի և որակավորման բնույթի փոփոխությունների վրա: Այս նշանակությամբ հավասարեցումը սոցիալիստական հասարակության մեջ տեղի ունեցող սոցիալական տարբերությունների վերացման պրոցեսների արտացոլումն է:

Մեր հասարակության արդի փուլի պայմաններում առկա են երկու կարգի՝ օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներ, որոնք կասեցնում են լրիվ ծավալով սոցիալական արդարության սկզբունքի կենսագործումը: Արտադրաուժերի զարգացման ներկա մակարդակը դեռևս հնարավորություն չի ընձեռում մարդկանց բոլոր կենսական, խելամիտ պահանջմունքների բավարարմանը: ԽՄԿԿ XXVII համագումարում քըն-

նադատվեցին այն պարզունակ ու դոգմատիկ պատկերացումները, որոնց համաձայն սոցիալիզմի պայմաններում ասես ինքնաբերաբար, ապահովվում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների համապատասխանությունը, որ արտադրության միջոցների վրա հանրային սեփականության հաստատումը ինքնին երաշխավորում է բոլոր սոցիալական խմբերի շահերի համընկնումը, իսկ դրա հետ մեկտեղ՝ հասարակական շահերին խմբային և անհատական շահերի ենթարկումը: Սակայն հասարակական շահերը սոցիալական բոլոր խմբերի համար առաջնային դարձնելու նպատակով հարկավոր է շատ մեծ աշխատանք կատարել՝ հաղթահարելու աշխատանքից մարդու աղետաբեր օտարման հետևանքները:

Այժմ մեր երկրում տեղի ունեցող քաղաքական իրադարձությունների ազդեցությամբ վերջապես ազատվեցինք այն պատրանքից, թե հանրայնացումը ինքնին կամ համապատասխան բացատրական աշխատանքի դեպքում, իբր աշխատավորներին մղում է տնտեսական պարտականությունների բարեխիղճ կատարմանը: Արդ անհրաժեշտ է, որ աշխատավորը լիովին ձերբազատվի վարձու աշխատողի բոլոր «կոմպլեքսներից», տեսնի հանրային սեփականության առավել որոշակի արտահայտությունը, ծանրակշիռ տնտեսական հիմքեր ունենա իրեն դրա համատերը զգալու համար:

Արդարությունը ոտնահարող սոցիալական մեծ չարիք են ապօրինի, անաշխատ եկամուտները և հատկապես դրանց կորզման այնպիսի մի եղանակը, ինչպիսին է կաշառակերությունը՝ մարդկանց այս կամ այն խմբի, երբեմն մեծ խմբի կողմից իր պաշտոնեական դիրքի չարաշահման միջոցով պարբերական հարստացումը հանրային սեփականության հաշվին, որից հետո ստացված անաշխատ եկամուտները «բաշխվում են» նրանց միջև ըստ պաշտոնի՝ շարքային աշխատողներից դեպի վերադասները: Ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում բացորոշ խոսվեց կաշառակերության, մաֆիայի, դրամաշորթության, պրոտեկցիոնիզմի աճի մասին:

Իր կոնկրետ պատճառներն ունի սոցիալական անհավասարության յուրատեսակ իրավիճակը, որտեղ մենք հայտնվել ենք: Դա, առաջին հերթին, տարբեր հատույցով աշխատող մարդկանց կենսավիճակի սահմանագիծը ջնջող հավասարության տարօրինակ գոյակցությունն է սոցիալական արտոնությունների և անաշխատ եկամուտների լայն տարածվածության փաստից սերված անհավասարության հետ: Նախ՝ արտոնությունների մասին. իրոք, մինչև այսօր էլ աշխատանքի վարձատրությունը հաճախ պայմանավորված է ոչ թե անհատական աշխատանքային իրական ներդրումով, այլ տվյալ աշխատանքը կատարելու մարդու ենթադրվող ունակությունն արտացոլող ձևական գործոններով՝ պաշտոն, բանվորի տարիֆային կարգ, կատեգորիա և այլն: Դրան գումարած՝ որոշակի «ընտրանու» լրացուցիչ արտոնությունները: Այնուհետև՝ ունեցվածքային աչք ծակող տարբերակում ստեղծող անաշխատ եկամուտների մասին: Դեռևս մեծ է իրենց բարեկեցությամբ բնակչության հիմնական խմբերին վիթխարի չափով գերազանցող մարդկանց թիվը: Սակայն բանը ոչ այնքան «միլիոնատերերի» ու «հարյուրհազարականների» թվի մեջ է, որքան բացասական սոցիալական օրինակի, նրանց հարուցած հասարակական արդարացի զայրույթի չափի մեջ: Այդ կարգի անհատների ու սոցիալական խմբերի գոյությունն ավելի անարդար ու անբնական է թվում բնակչության հիմնական զանգվածի տնտեսական լուրջ դժվարությունների, սակավապահովված տասնյակ միլիոնների հասնող մարդկանց ֆոնի վրա:

Եկամուտների ու սպառման տարբերակման վրա էապես ներգործում են բնակչության առանձին կատեգորիաների համար նախատեսված տարբեր կարգի հատուկ իրավունքներն ու առավելությունները: Դրանք կարելի է բաժանել առանձնաշնորհումների ու արտոնությունների: Արտոնություններն այն առավելություններն են, որոնք տրամադրվում են նրանց, ովքեր դրանց կարիքն իրոք ունեն ու արժանի են: Դրանք օրենսդրականորեն վավերագրված, հասարակության կողմից ըմբռնումով ընդունվող արտոնություններ են առանձին սոցիալ-ժողովրդագրական խմբերի՝ երիտասարդության, անչափահաս երեխաներ ունեցող կանանց, կենսաթոշակառուների, պատերազմի հաշմանդամների ու մասնակիցների համար, ինչպես նաև այնպիսի արտոնություններ, որոնք փոխհատուցում են համեմատաբար վատ և ավելի վտանգավոր աշխատապայմանների դիմաց և այլն: Դրանց կողքին գոյություն ունեն հատուկ արտոնությունների ու առավելությունների որոշ տեսակներ, որոնք ծագել են



պատմականորեն անցողիկ պատճառների, երբեմն՝ կամային վճիռների հետևանքով և որոնց գոյությունը մեր օրերում հակասում է սոցիալիստական արդարության սկզբունքներին:

Ըստ աշխատանքի բաշխումը սոցիալիզմի արտադրահարաբերությունների ամենաէական կողմերից մեկը կարգավորող օբյեկտիվ տնտեսական օրենքը չէ միայն: Այն նաև հանդես է գալիս որպես սոցիալիստական հասարակության կյանքի սոցիալ-քաղաքական, բարոյաէթիկական արժեք: Այդ պատճառով դրա խախտումը, անկատարությունը ծայրահեղորեն վնասակար է ազդում ոչ միայն տնտեսական ցուցանիշների, այլև ազնիվ աշխատավորների բարոյահոգեբանական վիճակի, հասարակական հարաբերությունների ամբողջ համակարգի վրա:

Սոցիալիզմի այս հիմնարար սկզբունքի հետևողական իրականացման, հասարակության յուրաքանչյուր չափահաս անդամի համար իր ընդունակությունների լրիվ ներդրումով, սոցիալիստական արդարության սկզբունքին համապատասխան աշխատելու հնարավորություն ստեղծելու համար անհրաժեշտ է մի քանի գլխավոր պայման:

Նախ, քանի որ սոցիալ-պրոֆեսիոնալ տարբեր խմբերի աշխատավարձի չափերի անհամամասնության վերացումը զգալի միջոցներ կպահանջի, իսկ առանց դրա անհնար է բարձրացնել կառավարչական, գիտական, կոնստրուկտորական, ինժեներական, մանկավարժական աշխատանքի վարկը, անհնար է արդյունավետորեն նպաստել գիտատեխնիկական առաջադիմությանը, այդ միջոցների աղբյուրները պետք է փնտրել ոչ միայն էկոնոմիկայի մեջ, այլև սոցիալական ոլորտում, այսինքն՝ վարելով ակտիվ պետական բաշխման քաղաքականություն: Երկրորդ «մեկնարկային» հնարավորությունների հետագա մերձեցում՝ հասարակական տարբեր խմբերի պատկանող, երկրի տարբեր շրջաններում, քաղաքներում, գյուղերում և այլուր ապրող մարդկանց ընդունակությունների զարգացման համար: Դա ենթադրում է տարբեր տիպի հիմնարկներում երեխաների նախադպրոցական դաստիարակության նույնական որակ, գյուղական ու քաղաքային, մայրաքաղաքային ու ծայրամասային դպրոցների տված գիտելիքների մակարդակի մերձեցում, բարդ, հետաքրքիր, սոցիալապես առավել հարգի պրոֆեսիաների տիրապետելու գործում երիտասարդության տարբեր խմբերի հնարավորությունների հավասարեցում:

Այստեղից կարևորվում է ըստ ընդունակության աշխատանքի սոցիալիզմի հիմնարար սկզբունքը: Ըստ ընդունակությունների աշխատելու երրորդ պայմանը հանրային արտադրությունում գործատեղերի բաշխումն է՝ պայմանավորված անհատական աշխատանքային պոտենցիալով և մարդկանց գործարար հատկանիշներով: Այստեղ դժվարությունն այն է, որ արդյունաբերության մեջ զբաղվածների ավելի քան 30 և գյուղատնտեսության մեջ զբաղվածների 70 տոկոսն առայժմ կատարում են սովորական ձեռքի աշխատանք, ինչը չի համապատասխանում հասարակական խմբերից ոչ մեկի, ինչպես նաև առանձին աշխատավորների պահանջմունքներին ու կարողություններին: Սակավ որակյալ և ծանր ֆիզիկական աշխատանքն ըստ ամենայնի կրճատելու խնդիրը սուր անհրաժեշտություն է, սակայն դա լուծվում է դանդաղորեն: Այդ պայմաններում պակաս կարևոր չէ նաև հանրային արտադրության մեջ առկա աշխատողների ճիշտ տեղաբաշխումը, մասնավորապես բարդ ու պատասխանատու աշխատանք պահանջող տեղերում համապատասխան գործարար հատկանիշներ ունեցող, առավել օժտված աշխատողների առաջքաշումը:

Չորրորդ պայմանը հանրային արտադրության բոլոր կատեգորիաների և աշխատողների համար ամբողջ կարողությամբ աշխատելու հնարավորության առկայությունն է. սոցիալական արդարությունը, կարծում ենք, անխտիր բոլորին բացարձակապես հավասար հնարավորությունների ընձեռում է: Իսկ թե ով ինչի է ընդունակ, նրա մոտ գործն ինչպես կստացվի, ապա այդչափ էլ նա կվարձատրվի:

Սոցիալական արդարության սկզբունքի լավագույն գործառության համար անհրաժեշտ է օգտագործել սոցիալիզմի քաղաքական սիստեմի հնարավորությունները: Այս առումով առաջադրվում է քաղաքական դեմոկրատիայի և սոցիալիստական ինքնակառավարման ըստ ամենայնի զարգացման ու ամրապնդման հարցը: Նախ և առաջ պետք է խորացնել հրապարակայնության՝ որպես քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի կարևորագույն տարրի ընդլայնումը, բարձրացնել վերահսկողության դերը, ապահովել աշխատավորական կոլեկտիվների ամենօրյա կյանքում սոցիալական արդարության սկզբունքի գործողության ծավալման հնարավորությունները:

Արդարության սկզբունքի իրագործման կարևոր տարրը կոլեկտիվում բարոյա-

հոգեբանական առողջ մթնոլորտն է, միջանձնային ձևական և ոչ ձևական հարաբերությունների կարգավորումը՝ աշխատանքի հստակ կազմակերպման, կոլեկտիվի անդամների միջև պարտականությունների ճիշտ բաշխման, ձեռներեցության խրախուսման, ընկերականության և փոխօգնության պայմանների ստեղծման, նորի, առաջավորի աջակցության, աշխատապայմանների մշտական բարելավման միջոցով:

Ղեկավարման կոլեկտիվ եղանակը նույնպես աշխատավորական խմբերում սոցիալական արդարության իրագործման ձևերից մեկն է, քանի որ այն թույլ է տալիս գտնել բարդ պրոբլեմների ճիշտ լուծումը, աշխատանքում նվազագույնի հասցնել սխալները: Ղեկավարման այս եղանակի անտեսումը հող է ստեղծում բյուրոկրատիզմի հաստատման համար:

Սոցիալական անարդարություն ծնող մերժելի երևույթների վերացման, կոմունիստական բարոյականության նորմերի հաստատման և հասարակության բարոյական հիմքերի ամրապնդման նպատակով տարվող աշխատանքի առանցքը պետք է դառնա խոսքի ու գործի, հռչակված կարգախոսների և պրակտիկ գործողությունների, ընդունվող որոշումների ու դրանց պլարկոտ կենսագործման միջև եղած կործանարար խզման վերացումը: Սոցիալական արդարության խախտման ամեն մի դրսևորում մեծ վնաս է հասցնում աշխատավոր զանգվածների ակտիվ կենսադիրքորոշման ձևավորմանը: Անարդարության յուրաքանչյուր դեպք, լինի դա արտադրության թե բաշխման ոլորտում, կադրերի ընտրության թե տեղաբաշխման գործում, արդարադատություն իրագործելիս թե պետական ունեցվածքն ու ծառայական դիրքն անձնական հարստացման նպատակով օգտագործելիս և այլ խոտորում, մարդկանց մոտ բնական բողոք է հարուցում, վիրավորում նրանց արժանապատվությունը: Իսկ դա հանգեցնում է, մասնավորապես, ազնիվ, բարեխիղճ աշխատանքի վարկի անկման, մարդկանց հասարակական ակտիվության նվազեցման և, որ ամենից անցանկալին է, մեր կարգերի, սոցիալիստական գաղափարախոսության նկատմամբ հավատի կորստյան: Ի դեպ, սոցիալական անարդարությունից վիրավորված անհատին ավելի դյուրին է ազգային կոնֆլիկտի, անարդարացի սոցիալական պահանջներ ներկայացնող խմբերի գործունեության մեջ ներքաշելը:

Սոցիալական արդարության խախտումը հանգեցնում է սոցիալական անկայունության: Այն, անկախ մարդկանց ազգությունից, սերտորեն կապված է ազգերի ու ազգությունների իրավահավասարության հետ: Սա քաղաքակրթության, հումանիզմի անառարկելի սկզբունքն է: Հաստատ կարելի է ասել, որ լարվածության առումով մեր երկրում տնտեսականից հետո իր օբյեկտիվ ցուցանիշներով երկրորդ տեղում գտնվող ազգային հարցի ներկայիս սրման հիմնական պատճառներից են սոցիալական արդարության խախտման տարբեր դրսևորումները. մի դեպքում այն հանդես է եկել երկրի ժողովրդատնտեսական կոմպլեքսում փոխանակության համարժեքության խախտման, ազգային շահերի և կենտրոնական գերատեսչությունների շահերի աններդաշնակության, հասարակական արդյունքի անհավասարաչափ բաշխման, համապետական սոցիալական նորմատիվների անմշակ վիճակի, մեկ այլ դեպքում՝ հանրապետությունների ազգային կազմում բնիկ ազգի քանակի պակասեցման միտումի, լեզվի գործադրման ոլորտի նեղացման և դրանից ծնված՝ իրենց կուլտուրայի դերի նվազեցման վախից նաև՝ հանրապետությունների սուվերենության հարաբերակցության ու ԽՍՀ Միության շրջանակներում դրանց միասնության ձևերի տեսքով և այլն:

Այս ամենի արմատները գնում-հասնում են տասնամյակների խորքը: Ստալինի և նրա շրջապատի ստեղծած՝ սոցիալիզմի և սոցիալական արդարության սկզբունքներին, խորհրդային դեմոկրատիայի հետհոկտեմբերյան փորձին հակադիր իշխանության և կառավարման համակարգի պայմաններում էլ հենց ձևավորվեցին մարդու էությանը հակադրվող վարչաբյուրոկրատական համակարգի տարրերը: Աստիճանաբար զորանալով, այն զրկեց մարդուն ամեն տեսակի իրավական պաշտպանվածությունից: Դասակարգային մոտեցման և քաղաքական սկզբունքայնության քողի տակ հասարակական հարաբերություններում համատարած ներդրվեց անմարդկայնություն և բարոյազրկություն, արհամարհանք նրա արժանապատվության ու զգացմունքների հանդեպ:

Կա մի ոլորտ, որն առավելապես զգայուն է արդարության խախտումների նկատմամբ. դա ազգամիջյան հարաբերություններն են: Սոցիալական արդարության կոպիտ խախտման առաջին փաստը ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների ոտնահարումն էր, պատմական-տարածքային ծանրակշիռ գործոնի անտեսումը, Ստալինի ակտիվ միջամտությամբ Լեռնային Ղարաբաղը Ադրբեջանական ԽՍՀ-ի



կազմի մեջ մտցնելը՝ տեղի տալով քեմալական Թուրքիայի ճնշմանը, նույնը կատարելով նաև Նախիջևանի հետ: Կամ վերցնենք Ալ. Մյասնիկյանի և Կամոյի մահվան առեղծվածները. այդ մասին կենտրոնական մամուլում այսօր վերջապես սկսել են թափանցել ճշմարտության շողերը: 20-ական թվականների վերջերին սպեցիֆիզմի մեջ մեղադրվելով «անցանկալի անձ» համարվեց և փաստորեն հանրապետությունից վտարվեց (հետագայում ռեպրեսիայի ենթարկվելով) ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Աշոտ Հովհաննիսյանը: Ժողովրդի գերակշիռ մասն այնպես էլ չիմացավ, թե որն է նրա մեղքը և ինչ ասել է այդ «սպեցիֆիզմը»: Իրականում ստալինիզմի անդրկովկասյան դրածոներին՝ կասկածելի ճանապարհներով կուսակցության մեջ խցկված թերուսներին, դուր չէր եկել 1907 թվականից Յենայի համալսարանի դոկտորի, աննկուն բոլշևիկի, ականավոր մարքսիստ-պատմաբանի լենինյան քաղաքական կեցվածքն ու կենսադիրքորոշումը: 1936-ին Բերիան Մ. Բաղիրովի անմիջական մասնակցությամբ իր աշխատասենյակում գնդակահարեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Խանջյանին: Պարբերաբար բնաջնջվեցին մեր կուսակցական, գիտական, գեղարվեստական մտավորականության ընտրանին, անվանի զինվորական գործիչները:

Սոցիալական անպաշտպանվածության օրինակ չէ՞ր արդյոք հանրապետությունում ու նրա սահմաններից դուրս բնակվող հազարավոր հայերի, այդ թվում հայրենադարձների 1949 թ. դաժան աքսորը: Այդ կարգի օրինակ չէ՞ր արդյոք մեր ժողովրդին պատմական իր հիշողությունից զրկելու, նրա կոնսոլիդացումն արգելակելու տևական դրամատիկ վիճակը: Տասնամյակներ ի վեր խուսափում էինք Ղարաբաղ անունն արտաբերելուց, ազգային դեմքը կորցնող մեր ներքին սփյուռքի մասին խոսելուց՝ վախենալով քաղաքական այլազան պիտակներից, որոնք շատ հաճախ ողբերգական վախճան էին ունենում:

Կառավարման գերկենտրոնացումից, դրա վարչահրամայական եղանակներից սերված ազգային արդարության խախտումները տարբեր դրսևորումներ ունեցան: Հետագա տարիներին, ոտնահարելով ժողովրդի բուն գոյատևումը, հանրապետությունը լցնվեց «մեծ քիմիայով», ծայրաստիճան սրվեց էկոլոգիական իրավիճակը: «Վերևից» պարտադրված քմահաճ որոշման և էկոլոգիական անգրագիտության հուշարձաններ դարձած ցամաքող Սևանա լիճն ու հայկական ատոմակայանը դարձյալ սոցիալական անպաշտպանվածության վկայությունն են:

Սոցիալական անարդարության օրինակ էր մեր երկրում «արդարադատության» գլխավոր երաշխավորներից մեկի՝ ԽՍՀՄ նախկին դատախազ Ռեկունկովի կողմից Արարատյան դաշտում էկոլոգիապես աղետաբեր ոչխարաբուծության վերացման մասին հանրապետության կառավարության ճիշտ որոշման թրատումը: Այդպիսին էր ղարաբաղյան դեպքերի առիթով մեր՝ վերակառուցմամբ հարուցված, ժողովրդի ազգային-քաղաքական շարժումը անբավարար քաղաքական հասունություն ունեցող լրագրողների կողմից այստեղից-այնտեղից թռցրած վիրավորական, անվայել պիտակներով որակումը, Սումգայիթում տեղի ունեցած հակահայկական, մեր երկրի պատմության մեջ աննախադեպ ջարդերի փաստին քաղաքական գնահատական տալու փոխարեն իրավապահ մարմինների կողմից այն շարքային խուլիգանություն որակելը և այլն: Նման օրինակներից են նաև 1988 թվականին մեր հանրապետությունում ղարաբաղյան դեպքերի կապակցությամբ ծավալված գործադուլներին մասսայական ինֆորմացիայի կենտրոնական միջոցների կողմից տրված նենգափոխված գնահատականները, մասնավորապես՝ այն ազգային եսասիրություն, ազգային էթնոցենտրիզմ համարելը, երկրի մասշտաբով մատակարարումների կանխամտածված վիժեցում դիտելը, դրանով իսկ՝ մեր երկրի աշխատավորներին հայ ժողովրդի դեմ անբարյացակամորեն տրամադրելը:

Այսօր քայլեր են ձեռնարկվում վերականգնելու սոցիալական արդարությունը մի այնպիսի ոլորտում, ինչպիսին է պետականությունը: Անհատի պաշտամունքի և լճացման տարիներին կամայականություններն ու ռեպրեսիաները, ազգային կադրերի ոչնչացումը, ղեկավարության ավտորիտարությունը, կառավարման վարչահրամայական եղանակները պրակտիկորեն նվազագույնի հասցրին հանրապետությունների սուվերենությունը, իրենց կենսական պրոբլեմներն ինքնուրույն լուծելու հնարավորությունները:

Կենտրոնի և տեղերի միջև ծագած և «ազգ-գերատեսչություն» հակասության պայմաններում այնքան անհրաժեշտ օրենքի ուժի գերակայումը, պետությունը իսկական իրավական դարձնելը մեզ հարկավոր է, որպեսզի ամեն մի ազգ զգա, որ

օրենքը իշխանությունից, գերատեսչական «ագրեսիայից» զորեղ է. այս դեպքում ազգը կընդունի, իսկ մարդը կզգա, որ նրան օգնում է ոչ թե ինչ-որ մեկ այլ անձ, այլ՝ օրենքը:

Այսօր, երբ մերժելով ազգային հարցի ստալինյան կամային, վարչահրամայական մեթոդները, մենք փորձում ենք վերադառնալ սոցիալական հարաբերությունների այդ նրբին ու զգայուն տեսակի լենինյան կերպին, առավել իրատեսորեն են երևում այս ոլորտում սոցիալական արդարության խախտման վնասները: «Ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը,— զգուշացրել է Վ. Ի. Լենինը,— ինչպես ազգային անարդարությունը, և «վիրավորված» նացիոնալները ոչ մի բանի նկատմամբ այնպես զգայուն չեն, ինչպես հավասարության զգացումի և այդ հավասարության խախտման հանդեպ...» (ԵԼԺ, հ. 45, էջ 425:)

Սոցիալական արդարության արմատավորումը միանվագ գործողություն չէ, առավել ևս միամտություն կլինի հուսալ, որ այն կհաստատվի կարճ ժամանակում: Մենք նոր-նոր ենք դիմաշրջվում դեպի բաղձալի իրավական պետության ստեղծումը, ամրապնդում այն գիտակցությունը, որ հասարակական պրոբլեմների լուծման գործում ռեպրեսիվ եղանակներն անընդունելի են և դեպի դրանք վերադարձ չպետք է լինի:

Մեր երկրում սկսված վերակառուցման դեմոկրատական պրոցեսի նպատակն է քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների միասնությունը, օրենքի հանդեպ բոլորի հավասարությունը և բոլորի համար օրենքի հավասարությունը՝ մեկ կարգապահություն և մեկ բարոյախոսություն, հարգանք անձի արժանապատվության նկատմամբ՝ անկախ նրա սոցիալական դիրքից ու ազգային պատկանելությունից:

# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԸ

**Հ. ԱՐՇԱԿՅԱՆ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ գլխավոր պրոբլեմներն են գիտատեխնիկական առաջադիմության արագացումը և հասարակության արտադրողական ուժերի արմատական վերափոխումը: Գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի արագացումն առաջին հերթին պայմանավորված է ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորային բյուրոների, ինչպես նաև բուհերի գիտատեխնիկական գործունեության վերակառուցմամբ:

Գիտական պոտենցիալի օգտագործման արդյունավետության բարձրացման և գիտության ու տեխնիկայի առաջադիմության արագացման կարևորագույն գործոն է գիտահետազոտական աշխատանքների և մշակումների արդյունքների արգասավորության գնահատումը: Այդ աշխատանքների արդյունքների արգասավորությունը պրակտիկայում գնահատելիս ընդունված է առաջնորդվել դրա իրականացման դըժվարությամբ պայմանավորված հետևյալ դրույթներով. գիտահետազոտական աշխատանքների արդյունքները չի կարելի գնահատել միաչափանիշային հիման վրա, օրինակ, հնարավոր չէ գիտական հետազոտությունների բոլոր արդյունքները գնահատել մեկ չափանիշով՝ տնտեսական արդյունավետությամբ. հետազոտությունների նախնական արդյունքների գնահատումը կատարվում է անորոշության գործոնի առկայության պայմաններում, որը կասկածի է ենթարկում կանխատեսումների հավաստիությունը. հաշվարկների կարգի անհամապատասխանությունը հետազոտությունների և մշակումների արդյունավետ կառավարման պահանջներին՝ պայմանավորված արդյունավետության գնահատման և կառավարչական որոշումների ընդունման միջև փոխադարձ կապի բացակայությամբ:

Ինչ վերաբերում է հետազոտությունների արդյունավետությունն այն բանից հետո որոշելուն, թե դրանք ինչպես են արդեն ավարտվել, ապա դա նման է «դիահերձման» և, անշուշտ, չի կարող նպաստել կառավարման արդյունավետության բարձրացմանը: Այսպիսով, ակնհայտ է, որ գիտական հետազոտությունների և մշակումների արդյունքների արգասավորությունը պետք է փոփոխական մեծություն համարել՝ ընդհուպ մինչև հետազոտությունների ավարտը: Գիտահետազոտական լաբորատորիաների ղեկավարներին քաջ հայտնի է, որ նախնական ձեռքբերումների պրոցեսի վրա ազդում են բազմաթիվ գործոններ, որոնք դեռևս անբավարար են ուսումնասիրված: Դրանցից մեկը մարդկային գործոնն է:

ԽՄԿԿ ծրագրում, ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերում և վերջին ժամանակաշրջանի կուսակցական այլ փաստաթղթերում ընդգծված է խորհրդային հասարակության արմատական վերափոխումներում մարդկային գործոնի նշանակությունը, մարդու և հասարակության փոխհարաբերությունների դիալեկտիկական ըմբռնումը: Դժվար է խոսել մարդկային հաղորդակցման ոլորտում տիրող իրավիճակի մասին՝ շրջանցելով անհատների գործունեության կոնկրետ պայմանները և դրդապատճառները: «Առաջադիմության գլխավոր շարժիչը, նրա հոգին եղել է, կա և կմնա մարդը» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 43): Կոլեկտիվի և անհատի փոխգործակցությունը մարդկային գործոնի նշանակության վերլուծության էական կողմն

*ԱՐՇԱԿՅԱՆ ՀԱՅԿԱՆՈՒՇ ՌՈՄԱՆԻ— Մոսկվայի Վ. Վ. Կույբիշևի անվան ինժեներա-շինարարական ինստիտուտի ասպիրանտ*

է, որովհետև չի կարելի մարդու գործունեության դերը իմաստավորել՝ վերացարկվելով կոլեկտիվի հետ նրա անձնական շահերի հարաբերակցության բնույթից:

Մարդկային գործոնի պրոբլեմն արժանացել է Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի լուրջ ուշադրությանը: Սակայն այնուհետև երկար ժամանակ դա գիտական վերլուծության առարկա չի դարձել: Այսօր արդեն մարդկային գործոնի դերի մեծացման հարցերին անդրադառնում են գիտնականները և տարբեր ուղղությունների մասնագետները: Կուսակցությունը շտկում է թե՛ տեսության մեջ, թե՛ պրակտիկայում օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառներով հասարակության զարգացման գործում մարդու դերի ի հայտ եկած թերագնահատումը: Մեր երկրի ոչ վաղուցվա՝ 70-ական թվականների և 80-ական թվականների սկզբի պատմությունն աչքի է ընկնում բացասական լուրջ միտումներով, սոցիալ-տնտեսական զարգացման «արգելակման մեխանիզմի» առաջացումով: Դրա հետևանքով շատ դեպքերում անտեղի էր ծախսվում երկրի աշխատանքային պոտենցիալը, շեշտակիորեն ընկել էր աշխատանքային կարգապահությունը, մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվությունը, իջել էր պատասխանատվության մակարդակը: Առայժմ չի հաջողվել լիովին հաղթահարել բացասական միտումների ազդեցությունը:

Մարդկային գործոնի ոլորտում իրադրության սրությունը կապված է այն բանի հետ, որ երկիրը կանգնած է իր պատմության որակական նոր փուլի շեմին: Ծառացել է գիտատեխնիկական առաջադիմության ասպարեզում մարդկային գործոնի դերի խորացված ուսումնասիրման և օգտագործման խնդիրը: Անշուշտ, ակներև է ԳՏԱ-ի փոխկախվածությունը հենց տեխնիկայի, տեխնոլոգիայի և գիտության զարգացումից: Չի կարելի պատկերացնել ժամանակակից լաբորատորիաներ առանց նրբագույն սարքերի ու ռեակտիվների, առանց համակարգիչների: Սակայն ոչ մի բարդ համակարգ չի կարող փոխարինել մարդուն: Մարդը՝ ահա այն հրաշքը, որը հասարակականորեն անհրաժեշտ իմացություն է ծնում: Այդ դերը գլխավորն է և՛ գիտության մեջ, և՛ տեխնիկայում:

Սոցիալ-տնտեսական ուսումնասիրությունների շրջանակներում «մարդկային գործոն» հասկացությունը նպատակահարմար է պարզաբանել վերլուծության երկու հիմնական մակարդակներով: Առաջինը ներառնում է գիտական կոլեկտիվում անձի հնարավորությունների, ընդունակությունների և ստեղծագործական կարողությունների, իսկ երկրորդը՝ այդ կոլեկտիվի արդյունավետության վերլուծությունը: Այսօր, մեր կարծիքով, չափազանց անհրաժեշտ է երկու մոտեցումների ինտեգրացումը, այսինքն՝ համատեղ գիտական գործունեության վրա անհատական բնութագրերի ազդեցության և հակադարձ ներգործության միաժամանակյա ուսումնասիրումը: Խնդիրը հանգում է սոցիալական և տնտեսական այն մեխանիզմների որոնմանը, որոնք հնարավորություն կընձեռեին փոխհատուցել համատեղ գիտական գործունեության ընթացքում ի հայտ եկած թերությունները: Ընդ որում, մարդկային գործոնի ակտիվացման պրոբլեմն առաջադրում է մի շարք նոր հարցեր, որոնք նախկինում առաջ չէին քաշվել, հետևաբար՝ նաև չէին քննարկվել: Դրանցից է, օրինակ, կոլեկտիվում սոցիալ-հոգեբանական հարաբերությունների կարգավորման հիման վրա գիտական աշխատանքի արդյունավետության կառավարման խնդիրը:

Կարևոր գիտատեխնիկական խնդիրների լուծման ուղղությամբ մարդկային գործոնի վերլուծությունը հանգում է ղեկավարների և ենթակաների ծավալած գործունեության գնահատմանը:

ԽՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերում առաջադրված է այնպիսի արժեքային կողմնորոշման խնդիրը, երբ անձի արժեքավորությունը սահմանվում է նրա վարպետության և տաղանդի, հասարակական գործունեությանը ներդրած ռեալ ավանդի հիման վրա: Այսպիսի լենինյան մոտեցումը հրատապ է նաև մեր օրերում, երբ հասարակական արտադրության բոլոր մասնակիցների գիտակցության վերակառուցումը զուգակցվում է յուրաքանչյուր աշխատողի, ձեռնարկության գործունեության իրական, այլ ոչ թե ձևական հաստատմանը:

Ինչպես էլ ընկալենք մարդկային գործոնը, ինչպիսի դիրքերից էլ մոտենանք դրան, ակներև է, որ դա ամենից առաջ մարդկանց ակտիվությունն է, նրանց պրակտիկ գործունեությունը: Խնդիր է դրված ուսումնասիրել սոցիալական ակտիվության, նրա չափանիշների, պատճառների, հետևանքների, պայմանների տարբեր ձևերը, խմբի ակտիվության յուրահատկությունը:

«Մարդկային գործոնի» էությունը կարելի է բնորոշել որպես հասարակական զարգացման ընթացքի վրա կոնկրետ մարդկանց գործունեության ազդեցության չափ: Դրա նշանակությունը մեծանում է այնքանով, որ կուսակցության նախաձեռնությամբ



սկսված հեղափոխական վերակառուցումը ենթադրում է երկու հանդիպադիր գործոնների փոխգործողություն՝ սոցիալական կառուցվածքի, կառավարման եղանակների, հասարակական հաստատությունների վերակազմավորում և յուրաքանչյուր մարդու, սոցիալիստական հասարակության անդամի գործունեության զգալի ակտիվացում: Գործոններից ոչ մեկը, առանձին վերցրած, չի կարող ապահովել առաջադրված խնդիրների լուծումը: Ուստի «մարդկային գործոնը» պետք է դիտել որպես սոցիալական զարգացման խթանիչ, կոնկրետ լծակ: Ահա թե ինչու ԽՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում ընդունված «Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման հիմնական դրույթներում» ընդգծված է. «ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ քաղաքական, տնտեսական ու սոցիալական ամենագլխավոր խնդիրն է՝ բարձրացնել մարդկային գործոնի դերը...»:

Ժամանակակից գիտությանը հատկորոշ է, որ այն կերտում են ոչ թե միայնակ աշխատող, գիտական փոխադարձ հաղորդակցումից կտրված գիտնականներ, այլ կոլեկտիվ ջանքերով միավորված գիտաշխատողների ամբողջ խմբեր: Հասարակությունը շահագրգռված է, որպեսզի ընթանա գիտատեխնիկական առաջադիմությունը: Գիտությունն ամենից առաջ մարդկանց միավորում է, մեծ ու փոքր կոլեկտիվներ են, որոնք ունեն տալագիր օրգաններ, այդ բարդ մեխանիզմի կառավարման օղակների ստորակարգություն: Մարդկանց համախմբող գիտական կոլեկտիվներն ունեն մի շարք հատկանիշներ, որոնցով նմանվում են այլ պրոֆեսիոնալ միավորումների (հաստիքների ցուցակ, օրակարգ, ծառայողական ստորակարգություն և այլն): Բայց կան նաև առանձնահատկություններ: Գիտական կոլեկտիվների խնդիրն է բացահայտել նոր գործոններ, օբյեկտիվ օրենքներ և առնչություններ: Այդ առանձնահատկությունը ներազդում է գիտնականի անձի, գիտական կոլեկտիվի հետ նրա առընչությունների բնույթի վրա:

Չի կարելի անտեսել նաև գիտական կոլեկտիվի կախվածությունը իր անդամների անհատական առանձնահատկություններից, նրանց ընդունակություններից, հիշողությունից, բազմագիտակցությունից, բնավորությունից, մտածելակերպից: Այն մեծ չափով, քան որևէ այլ կոլեկտիվ, ինֆորմացիոն ապահովման կարիք է զգում: Գիտության մեջ չկան աշխատողների ռեալ կոլեկտիվի հաշվարկման այլ չափանիշներ, բացի միասնական հետազոտական ծրագրով ծավալած գործունեությունից: Դա գիտական կոլեկտիվի ևս մեկ առանձնահատկությունն է:

Կ. **Մարքսը** գիտական գործունեությունը սահմանել է որպես ընդհանրական աշխատանք: «Ընդհանուր է ամեն մի գիտական աշխատանք, ամեն մի հայտնագործություն, ամեն մի գյուտ: Այն պայմանավորված է մասամբ ժամանակակիցների կոոպերացիայով, մասամբ՝ նախորդների աշխատանքի օգտագործմամբ» (К. Маркс, Ф. Энгельс, т. 25, ч. 1, с. 116):

Այդ դրույթի վրա են հիմնված նաև արդի գիտնականների բնորոշումները. «Գիտությունն ամբողջական, հարաբերականորեն ներփակ ինքնուրույն սոցիալական համակարգ է, գործունեության առանձնահատուկ ձև, որը միավորում է գիտնականներին, տեխնիկական հաստատությունները և ծառայում բնության, հասարակության ու մարդկային գիտակցության օբյեկտիվ օրենքների սահմանմանը» (Лейман Н. И., Наука как социальный институт, Л., 1971, с. 12):

Գիտության ոլորտում տիրապետում է համատեղ աշխատանքը, այսինքն այնպիսի անհատների անմիջական փոխգործակցությունը, որոնց միջև բարդ միջանձնային հարաբերություններ են հաստատվում: Դրանք հասկանալու համար կարևոր են անհատների անձնական բնութագրերը: Միջանձնային հարաբերությունները պատահական չեն և համակարգ են դառնում՝ սահմանելով կոլեկտիվի անդամների գործնական միասնությունը: Դա հարաբերությունների մի համակարգ է, որը ներառնում է համակրանքներ ու հակակրանքներ, ընկերականություն և հակամարտություններ, որոշում կոլեկտիվում տիրող մթնոլորտը: Իսկ այդ միկրոկլիմայի վիճակն անմիջականորեն ազդում է կոլեկտիվի գործունեության արդյունավետության վրա: Միջանձնային հարաբերությունները զարգանում են, բարձրացնում կամ նվազեցնում կոլեկտիվի աշխատանքի արգասավորությունը: Գիտության ասպարեզում համատեղ աշխատանքին ներհատուկ է ստեղծագործությունը: Գիտնականը ոչ թե պարզապես անձ է, այլ ստեղծագործող, տաղանդավոր, ինքնատիպ անձ:

Գիտնականի անձի մասին պատկերացում է կազմվում երկար տարիների ընթացքում: Խնդիրն այսպիսին է՝ ինտենսիվացնել հետազոտական գործունեությունը, այսինքն փնտրել-գտնել այն միջոցները, որոնցից կախում ունի գիտության պրոցեսը: Պատմական նոր իրադրությունը գիտնականի անձին առանձնակի պահանջներ է

ներկայացնում: Ինտեգրացիա, գիտական գիտելիքների շերտավորում, գիտական գործունեության նոր ձևերի և հետազոտական կոլեկտիվների կառուցման սկզբունքների առաջացում,' հետազոտողների անցում գիտելիքների մեկ բնագավառից մյուսը, միջդիսցիպլինային ուսումնասիրությունների աճ, ինֆորմացիոն պայթյուն՝ այս ամենը յուրաքանչյուր գիտնականի առաջադրում է այնպիսի պրոբլեմներ, որոնք պահանջում են հոգեբանական վերակառուցում, ներքին ստեղծագործական ռեսուրսների մոբիլիզացում:

Գիտական կոլեկտիվի ժամանակակից կառուցվածքային և ֆունկցիոնալ միավորը հետազոտական խումբն է: Գիտության մեջ ներգրավված են բազմաթիվ մարդիկ, և դա բնական է: Բնական է նաև, որ նրա լայն բացված դռներով ներս են մտնում թե տաղանդներ և թե միջակություններ: Սակայն չի կարելի ասել, թե համեմատաբար պակաս շնորհալիները բալաստ են. նրանք կարող են կոնկրետ կիրառում գտնել: Չէ որ մեկնումեկը պետք է «սև աշխատանք» կատարի: Խմբում ներգրավվածների թիվը կայուն չէ, այլ պայմանավորված է ընդհանուր խնդիրներով և պլանով, ընդհանուր հետազոտական ծրագրով:

Ստեղծագործական ակտիվությունն զգալիորեն կանխորոշում է գիտնականի վարմունքը և բարոյական կացությունը: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ժամանակաշրջանում, երբ ԽՄԿԿ-ն խորհրդային հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխման ստրատեգիական կուրս՝ ԳՏՀ-ի նվաճումների հիման վրա նրա նյութատեխնիկական բազայի արմատական նորացման, հասարակական, առաջին հերթին տնտեսական հարաբերությունների կատարելագործման, խորհրդային մարդկանց աշխատանքի, նյութական ու հոգևոր պայմանների խոր վերափոխումների կուրս է վերցրել, գիտնականներից, որպես գիտության «շարժիչներից», ստեղծագործական ակտիվություն է ակնկալվում:

Երկրի առջև ծառացած խնդիրները կարելի է հաջողությամբ լուծել միայն մարդկային գործոնի դերի ուժեղացմամբ: Վերջին ժամանակներս մշակվող բազմապիսի գաղափարներից կարելի է առանձնացնել խմբային գիտական գործունեության վերլուծությունները, քանի որ հենց այստեղ են կենտրոնացած գիտական աշխատանքում մարդկային գործոնի ակտիվացմանն առնչվող պրոբլեմները: Կարևորվում է գիտատեխնիկական գործունեության մեջ մարդկային գործոնի ակտիվացման կոնկրետ եղանակների սահմանման խնդիրը:

Դա առանձնապես հրատապ է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արդի փուլում, երբ ԳՏԱ-ի արագացման անհրաժեշտ պայմանը գիտության անցումն է լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման: Նման իրավիճակում գիտական աշխատանքի խթանումը առանձնապես կապակցված է նրա արդյունավետության գնահատման հետ, որի ճշգրտության աստիճանի մեծացումը արգասավորության բարձրացման ուղիներից մեկն է: Վաղ փուլերում գիտական աշխատանքի արդյունքները օբյեկտիվորեն գնահատել և դրա հիման վրա գիտատեխնիկական գործունեության արգասավորությունը կառավարել կարողանալը գիտության մեջ տնտհաշվարկ մտցնելու անհրաժեշտ պայմանն է: Այդ առնչությամբ սոցիալ-տնտեսական ու սոցիալ-հոգեբանական հարաբերությունները հաշվի առնելու հնարավորությունները, որոնք առաջանում են այս կամ այն հետազոտական խմբում, նրա աշխատանքի կոմպլեքսային գնահատման դեպքում, ինչպես նաև գիտատեխնիկական գործունեության արդյունավետության հետ այդ հարաբերությունների փոխառնչությունների բացահայտումը կանխորոշում են քննարկվող պրոբլեմի հրատապությունը, որի լուծման համար անհրաժեշտ է կոնկրետացնել «մարդկային գործոն» հասկացությունը գիտական աշխատանքում:

Մեր անցկացրած փորձագիտական հարցումների հիման վրա բացահայտվեցին մարդկային գործոնի՝ անմիջաբար գիտական արդյունքների վրա ազդող գլխավոր բաղադրամասերը: Դրանք են անհատ կատարողների և կոլեկտիվների ներդաշնակ միավորման, ինչպես նաև գիտական դպրոցների, միջանձնային հարաբերությունների, կոլեկտիվի գիտական ղեկավարման ոճի ազդեցությունը գիտատեխնիկական գործունեության արդյունքների վրա:

Ստացված տվյալների հիման վրա սոցիոլոգ-հոգեբանների, ԽՍՀՄ ԳԱ բնագիտության և տեխնիկայի պատմության ինստիտուտի գիտական ստեղծագործության պրոբլեմների սեկտորի աշխատակիցների հետ մշակել ենք նոր, արդյունավետ մեթոդիկա: Այստեղ հիմնական ուղղությունը գիտական խմբերի աշխատանքի արդյունավետության սոցիալ-տնտեսական և սոցիալ-հոգեբանական գործոնների ուսումնասիրությունն է, որը ենթադրում է աշխատանքի կատարումը անհատական գրույցի



ձևով: Նպատակն է խմբային գիտական գործունեության արդյունավետության արմատական ռեակտորների բացահայտումը և ուսումնասիրումը: Ռեսպոնդենտը (իրազեկիչը) պետք է ձևակերպի խմբի կողմից լուծվող այն հիմնական խնդիրները, որոնք միավորում են աշխատակիցների գործունեությունը (տեսական մոտեցումներ, աշխատանքի մեթոդներ, սարքավորումներ և սարքեր, հետազոտական ծրագիր և այլն): Պետք է պարզել, թե ով երբվանից է աշխատում խմբում, ովքեր են նրա գիտական ուսուցիչները և դաստիարակները, մշտական ընդդիմադիրներ կա՞ն արդյոք, թե ինչպես է կազմակերպված փոխգործակցությունը և կարծիքների փոխանակումը խմբում, կարծիքը այլ խմբերի կողմից լուծվող պրոբլեմների մասին:

Իրազեկիչի համար կարևոր նշանակություն ունեն գործընկերներից յուրաքանչյուրի կարծիքը, մասնագիտական դատողությունը, ուսուցման ինտենսիվությունը: Իրազեկիչին որքա՞ն է հետաքրքրում այն պրոբլեմը, որը լուծում է խմբի մեկ այլ աշխատակից. գնահատվում է 7 բալանոց սանդղակով:

«Գիտական ղեկավարության կարծիքի ազդեցությունը սկզբնական գիտական կոլեկտիվի գործունեության արդյունքների վրա» մեթոդիկայի աշխատանքի ձևը անհատական զրույցն է: Մեթոդիկան շոշափում է այսպիսի հարցեր.

գիտական հարցերի քննարկումը խմբում հաճա՞խ է արդյոք կարծիքների բազմազանության պայմաններում ընթանում. գիտական հարցերի քննարկումն ազդու՞մ է արդյոք միջանձնային հարաբերությունների բնույթի վրա. խմբի աշխատակիցը կարո՞ղ է արդյոք բացեիբաց հայտնել իր կարծիքը, մասնագիտական դատողությունը. ի՞նչ չափով է գործում նյութական խրախուսման համակարգը. այն նպաստու՞մ է արդյոք ակադեմիական գիտահետազոտական ինստիտուտների գիտնականների մասնակցությանը պրակտիկ գիտական մշակումների պրոցեսին. աշխատակիցը որքա՞ն է գոհ խմբի այլ աշխատակիցների, ինչպես նաև ղեկավարի հետ գիտական փոխհարաբերություններից. նա գո՞հ է արդյոք խմբում աշխատանքի կազմակերպումից. գո՞հ է արդյոք տեխնիկաապարատուրային ապահովումից:

Հաջորդ մեթոդիկան «Դերային ցուցակն» է: Ամեն մի գիտական կոլեկտիվի անդամներ կատարում են որոշակի ֆունկցիաներ, որոնք կարելի է դերեր անվանել: Իսկ տվյալ կոլեկտիվի աշխատակիցների միջև այդ ֆունկցիաների բաշխումը կարելի է դերային անսամբլ անվանել: Խմբի բոլոր անդամներին դերերի ցուցակ է տրվում: Իրազեկիչը աշխատակիցների համար ընտրում է նրանց համապատասխանող դերեր, ըստ որում, դրանց քանակը չի սահմանափակվում: Կարելի է ընտրել 8 կլաստեր, որոնք առաջատար ֆունկցիայի գծով միավորված կլինեն խմբային փոխհարաբերությունում:

Կոնկրետ գիտահետազոտական խմբի համար մշակված մեթոդիկաների հիման վրա ստացված քանակական սոցիալ-հոգեբանական բնութագրերը հնարավորություն են տալիս հետամուտ լինել գիտական կոլեկտիվի արդյունավետության վրա այս կամ այն սոցիալ-հոգեբանական հարաբերությունների ունեցած ազդեցությանը:

Գիտահետազոտական աշխատանքների ընթացքում օպտիմալ սոցիալ-հոգեբանական հարաբերությունների մոդելավորման հիման վրա գիտական աշխատանքի ծրագրված արդյունքների ձեռքբերումը հնարավորություն կընձեռի էապես բարձրացնել մարդկային գործոնի դերը գիտության կառավարման համակարգի մշակման մեջ:

# ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՔՐԵԱԿԱՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

**Ռ. ՊՈՂՈՍՅԱՆ**

ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ առաջին համագումարին տված զեկուցման մեջ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահ Մ. Ս. Գորբաչովը շեշտեց, որ պետք է ժամանակին, նոր պատկերացումներին ու խնդիրներին համապատասխանեցնել թե՛ քրեական, թե՛ քաղաքացիական, թե՛ աշխատանքային, թե՛ ընտանեկան օրենսդրությունը: «Այլ կերպ ասած, նորացված հասարակությունը պետք է հենվի նորացված օրենսդրության վրա»: Այս առումով և առաջադրված պահանջի լույսով էական կատարելագործման, զարգացման ու լրացման կարիք ունեն ԽՍՀ Միության և միութենական հանրապետությունների քրեական դատավարության հիմունքները և համամիութենական միասնական այդ օրենսդրական ակտի հիման վրա 1961 թվականի հուլիսի 1-ից կիրարկության դրված Հայկական ԽՍՀ քրեական դատավարության օրենսգիրքը (այսուհետ կրճատ՝ «Հիմունքներ» ՀԽՍՀ քրեական դատավարության օրենսգիրքը՝ «ՔԴՕ», իսկ ՀԽՍՀ քրեական օրենսգիրքը՝ «ՔՕ»):

Հասարակայնության և մասնագետների ուշադրությանն ու քննարկմանն ենք ներկայացնում քրեադատավարական օրենսդրության կատարելագործմանը նվիրված առաջարկություններ, դատողություններ, որոնք բխում են գործնական աշխատանքի փորձից: Ինչպես հայտնի է, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության 1988 թվականի դեկտեմբերի 15-ի որոշմամբ համաժողովրդական քննարկման է դրվել ԽՍՀ Միության և միութենական հանրապետությունների քրեական օրենսդրության հիմունքների նախագիծը, որը ներառում է քրեական օրենսդրության շինարարության ընթացքում գործնական կիրառություն գտած մի շարք հիմնարար սկզբունքներ: Միաժամանակ այն նորովի իրավական կարգավորման է ենթարկում հանցագործության ու պատժի, դրանց հետ սերտորեն կապված քրեաիրավական մյուս ինստիտուտները: Եվ այնուամենայնիվ, չնայած նախագծի անչափ կարևորությանը, կարծում եմ, գործը շատ ավելի կշահեր, եթե նախագիծը համաժողովրդական քննարկման ներկայացվեր միութենական մյուս օրենսդրական ակտերի, մասնավորապես քրեական դատավարության, դատարանակազմության և ուղղիչ աշխատանքային օրենսդրության հիմունքների նախագծերի հետ:

Անդրադառնալով Հայկական ԽՍՀ քրեական դատավարության գործող օրենսգրքին, նկատենք, որ դրա ընդհանուր և հատուկ մասերի առանձին հատվածներ, դրույթներ ու իրավանորմեր հնացել են, չեն համապատասխանում հասարակական հարաբերությունների կարգավորման ներկայիս պահանջներին: Ժամանակին օրենսդիր մարմնի կողմից հաշվի չեն առնվել սովերեն հանրապետության պետական-ազգային առանձնահատկությունները, պատմականորեն ձևավորված իրավունքն ու իրավագիտակցությունը, արմատավորված սովորույթները, հայ ժողովրդին յուրահատուկ բարոյական ըմբռնումներն ու չգրված օրենքի ուժ ստացած հոգեբանական գործոնները:

Միութենական բոլոր, այդ թվում Հայկական Հանրապետության գործող ՔԴՕ-ների «Ընդհանուր դրույթներ» հատվածում շարադրված են քրեական դատավարության հիմնական սկզբունքները, որոնք այսօր կարիք ունեն առավել կատարյալ իրավաբանական ձևակերպումների և, անշուշտ, նաև՝ լրացման:

Հետևաբար, միանգամայն տեղին կլինի, եթե «Ընդհանուր դրույթները» լրացվեն դատավարության բոլոր փուլերում օրենքի գերակայության, մրցակցության ապահովման, անմեղության կանխավարկածի անշեղ կիրառման, պատժի անխուսափելիության, կատարած հանցավոր արարքին համաչափ պատիժներ նշանակելու, անպարտ ճանաչված ու դատարանով արդարացված քաղաքացիների աշխատանքային, նյութական, բարոյական ու քաղաքական ռեաբիլիտացման երաշխիքների սահմանման և հրապարակային ապահովման սկզբունքներով:

ՔԴՕ-ի «Դատարան և ընդդատություն» գլխի 25, 36 և 41 հոդվածներում առկա է հակասություն. դրանցից առաջինում անթույլատրելի է համարվում դատավորի կրկին մասնակցությունը գործի լրացուցիչ քննությանը, որը, ըստ օրենսդրի պահանջի, իր հերթին հիմք է հանդիսանում բացարկման համար: Մինչդեռ վերջին երկու հոդվածներում հնարավոր է համարվում դատախազի և քննիչի հետագա մասնակցությունը գործին, անկախ նախաքննությանը և հետաքննությանը նրանց ունեցած մասնակցությունից, դատարանում դատախազի կողմից մեղադրանքը պաշտպանած լինելու հանգամանքից: Փաստորեն նման վիճակը քրեական դատավարությունում ինքնուրույն ստատուս ունեցող պաշտոնատար անձանց անհավասարություն է ստեղծում, մի կողմից՝ դատավորի, մյուս կողմից՝ քննիչի և դատախազի միջև, վերջիններիս «արտոնյալ գործելու» ակնհայտ իրավունք ու հնարավորություն տալով: Նման պարագայում հիմք է առաջանում ոչ հազվադեպ հանդիպող այն գործելակերպի համար, երբ հատկապես քրեական գործերը դատարանի կողմից լրացուցիչ քննության վերադարձնելուց հետո, գործի սկզբնական քննությունը վարած քննիչները, մեղադրական եզրակացությունը հաստատած և քննության վրա հսկողություն իրականացնող, իսկ հաճախ էլ պետական մեղադրանքը դատարանում պաշտպանած դատախազները «քննչական խոտանի» համար պատասխանատվությունից խուսափելու նպատակով, խախտելով գործի հանգամանքների բազմակողմանի և օբյեկտիվ հետազոտման դատավարական պահանջը, ձգտում են ինչ գնով էլ լինի հիմնավորել «մեղադրանքը»: Հետևությունը միակն է. դատավորի համար բացարկի հիմք հանդիսացող բոլոր սկզբունքները օրենսդրորեն պետք է հավասարապես տարածվեն և քննիչի և դատախազի վրա: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարի որոշման մեջ ամրագրված է. «Անաչառ քննություն, ուժեղ դատապաշտպանություն և անկախ դատարան՝ ահա սոցիալիստական արդարադատության եռամիասնական բանաձևը»: Խոր իմաստ ու բովանդակություն պարունակող այս գաղափարը կարելի է լրացնել նաև «դատախազական հսկողության արդյունավետ գործունեություն» արտահայտությամբ:

Միասնականություն գոյություն չունի տարբեր հանրապետությունների ՔԴՕ-ներում՝ կապված ստորադաս դատական ատյանի դատավճիռները մեկից ավելի անգամ բեկանվելու պայմաններում գործերի ընդդատությունը քննելու հարցերում (օրինակ, ՌԽՖՍՀ ՔԴՕ-ի 38-րդ հոդվածի «բ» կետ և ՀԽՍՀ ՔԴՕ-ի 28-րդ հոդված և այլն): Ընդունելի չափանիշներ չկան նաև նյութական օրենսգրքի հատուկ մասի առանձին բարդություն չներկայացնող հանցատեսակները (վատորակ շինարարություն, պլանների կատարման վերաբերյալ հավելագրումներ ու աղավաղումներ և այլն) վերադաս դատական մարմինների քննությանը ընդդատյա լինելու հարցում:

Դատավարական կոռ և տարակարծությունների տեղիք չտվող համակարգ ստեղծելու համար խիստ կարևոր է, որպեսզի հստակություն մտցվի դատավարության փուլերում: Խոսքը, մասնավորապես, բոլոր հանրապետությունների ՔԴՕ-ներում տեղ գտած հետաքննության փուլի մասին է: Այսպես, 1985 թվականի փետրվարի 27-ի ՀԽՍՀ Գերագույն խորհրդի հրամանագրի խմբագրությամբ ՔԴՕ-ի մեջ նախատեսվել է վեց հոդվածներից բաղկացած մի նոր գլուխ, որով հետաքննական մարմիններին իրավունք է վերապահվում առանձին հանցատեսակների գծով (թվով տասնհինգ) այսպես կոչված «արձանագրային ձևով» նյութերը դատարան ուղարկել: Այնինչ, հետաքննական մարմինը քրեական գործ չի հարուցում, հետևաբար, համաձայն ՔԴՕ-ի, նա իրավունք չունի անձին որպես մեղադրյալ պատասխանատվության ենթարկելու որոշում կայացնել, նրան որպես մեղադրյալ կամ կասկածյալ հարցաքննել, նրա նկատմամբ ընտրել խափանման միջոց, կատարել խուզարկություններ, առգրավումներ, գույքի վերգրումներ և ՔԴՕ-ով նախաքննական մարմիններին վերապահված այլ քննչական գործողություններ: Հետաքննական փուլ «նյու-

---

*ՊՈՂՈՍՅԱՆ ՌՈԲԵՐՏ ՍՈՒՐԵՆԻ— Դիլիջան քաղաքի դատարանի նախագահ։*









թերի միջնդատական նախապատրաստման արձանագրային» ձևի ներմուծմամբ սահմանափակվում է նաև անձի պաշտպանական իրավունքը. այնքանով, որքանով ՔԴՕ-ի 43-րդ հոդվածում ամրագրված է. «Այն գործերով, որոնցով նախաքննություն չի կատարված, պաշտպանի մասնակցությունը թույլատրվում է մեղադրյալին դատի տալու պահից», իսկ «արձանագրային ձևի մեղադրանքի» մասին օրենսդիրը ընդհանրապես հիշատակում չունի, ուստի կարելի է ու պետք է եզրակացնել, որ ընդհանուր առմամբ հետաքննության տակ գտնվող անձը, նախաքննական մարմինների քննության տակ գտնվող անձանց համեմատ, ակնհայտ անհավասար վիճակում է:

Մենք պնդում ենք, որ գործող ՔԴՕ-ներից ամբողջովին հանվի դատավարության հետաքննական փուլն ընդհանրապես և նյութերի միջնդատական նախապատրաստման արձանագրային» ձևը մասնավորապես: Այսինքն, դատավարական փուլ պետք է ճանաչվի միայն նախաքննությունը: Լայն առումով պետք է հստակորեն սահմանվեն դատավարության նախաքննական փուլում նախաքննություն կատարող անձի՝ քննիչի իրավունքներն ու պարտականությունները, նրա համար ստեղծվի իրավական պաշտպանվածության մեխանիզմ: Հետևաբար, ժամանակն է, որպեսզի ընդունվի ԽՍՀՄ-ում քննիչի ստատուսի մասին օրենք, որի առթիվ առաջարկություններ են եղել իրավաբանական գրականության մեջ և այլ հրապարակումներում:

Լուրջ լրացումների ու խմբագրումների կարիք ունի նաև ՔԴՕ-ի «Դատավարության մասնակիցները, նրանց իրավունքներն ու պարտականությունները» բաժինը:

Գործող ՔԴՕ-ներով դատապաշտպանի մասնակցությունը թույլատրվում է, որպես կանոն, նախաքննության ավարտման մասին մեղադրյալին հայտնելու և գործի ամբողջ վարույթը, ծանոթանալու համար, մեղադրյալին ներկայացնելու պահից, իսկ մնացած դեպքերում (բացի դատապաշտպանի պարտադիր մասնակցության դեպքերից), մեղադրանք առաջադրելու պահից դատապաշտպանի մասնակցությունը թողնվում է դատախազի հայեցողությանը (տե՛ս ՔԴՕ-ի 43-րդ հոդվածը): Գտնում եմ, որ ճիշտ են այն առաջարկությունները, որոնցով նպատակահարմար է դիտվում դատապաշտպանի մասնակցությունը ավելի վաղ փուլերից՝ քրեական գործ հարուցելու պահից: Իմ կարծիքով, արհեստակցական միությունների և այլ հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների, ինչպես նաև դատաքննչական մարմինների որոշմամբ մեղադրյալի մերձավոր ազգականներին և օրինական ներկայացուցիչներին, երրորդ անձանց որպես պաշտպան դատավարությանը թույլատրելու մասին իրավանորմերի կիրառման օգտակարության գործակիցն աննշան է, և այն գործնականում իրեն չի արդարացնում: Իրականում ներկայացուցչական այդ ինստիտուտը ոչ թե դեմոկրատացնում է դատապրոցեսը, այլ ստեղծում է դեմոկրատացման պատրանք, իսկ առանձին դեպքերում էլ քննության պրոցեսում անհարկի միջամտություններով ու միջնորդություններով դժվարացնում է հանցագործությունների արագ և լրիվ բացման, հանցավորների մերկացման և օրենքի ճիշտ կիրառման ապահովումը: Հետևաբար, հիշյալ իրավանորմերը պետք է ամբողջովին հանվեն ՔԴՕ-ից, իսկ պաշտպանության ֆունկցիայի կատարումը պետք է դրվի միայն պրոֆեսիոնալ իրավաբանների, այսինքն ԽՍՀՄ փաստաբանների միության, փաստաբանների կոլեգիայի և իրավաբանական կոոպերատիվների անդամների վրա: Իրավաբան-գիտնականների և պրոֆեսիոնալ իրավաբանների մի մեծ խումբ առաջարկում է ստեղծել դատարանի նոր «մոդել», որով նախատեսվում է նկատելիորեն ավելացնել հասարակայնության ներկայացուցիչների՝ ժողովրդական ատենակալների թվակազմը, ակտիվացնել նրանց դերը դատապրոցեսում:

Հատուկ խորհրդածությունների տեղիք են տալիս դատավարության սուբյեկտների նկատմամբ դատախազի իրավալիազորությունների մասին դրույթները: Մասնավորապես, ՔԴՕ-ի 35-րդ հոդվածում ամրագրված է. «... դատախազը հսկողություն է իրականացնում... դատարաններում գործերի քննության ժամանակ օրենքների կատարման նկատմամբ»: Կարծում եմ, որ այս դրույթը ուղղակիորեն հակասում է «արդարադատությունը իրականացվում է միայն դատարանի միջոցով» հանրահայտ դատավարական սկզբունքին: Կարևոր նշանակություն տալով այդ հակասությանը, ընդգծենք, որ հատկապես դատաքննության փուլում դատախազը դատապաշտպանի, տուժողի, քաղաքացիական հայցվորի, քաղաքացիական պատասխանողի և դատավարության մյուս մասնակիցների հետ համահավասար, որպես կողմ, կոչված է իրականությունը բացահայտելու հարցում դատարանին աջակցել: Մինչդեռ, դատարաններում գործերի քննության ժամանակ օրենքների կատարման նկատ-



մամբ հսկողություն իրականացնելու ֆունկցիայի կիրառումը դատախազին գերապատվության վիճակում է դնում դատարանի հանդեպ: Ստեղծվում է պարադոքսալ մի վիճակ, երբ դատավարության կողմ հանդիսացող պաշտոնատար անձին օրենսդիրը օժտում է նույն դատարանում դատական գործելակերպի նկատմամբ հսկողություն իրականացնելու ֆունկցիայով, իսկ դա, իր հերթին, նշանակում է, որ դատախազը հնարավորություն է ստանում ճնշում գործադրելու դատարանի վրա: Ավելին, ՔԴՕ-ի 240-րդ հոդվածը նախատեսում է, որ դատախազը «... դատարանին ներկայացնում է իր նկատառումները՝ ամբաստանյալի վերաբերմամբ քրեական օրենքը և պատժի միջոցներ կիրառելու առթիվ»: Ասվածից հետևում է, որ դատախազը «վերուստ» հնարավորություն է ստանում «կանխատեսելու» դատավճիռը և, «վերջին հաշվով, դատարանին թելադրելու, պարտադրելու ամբաստանյալի նկատմամբ ընտրվելիք պատժամիջոցն ու պատժաչափը: Նման վիճակը ակնհայտորեն խախտում է դատավորների անկախության և նրանց՝ միայն օրենքին ենթարկվելու դատավարական ոչ պակաս կարևոր սկզբունքը:

Օրենսդիրը քրեական գործը կարճելու իրավունք է տալիս քննիչին, դատախազին և դատարանին: Ընդ որում, քննիչը և դատախազը միանձնաբար, իսկ դատարանը՝ կոլեգիալ կարգով, իրավունք ունեն և պարտավոր են կարճել գործի վարույթը, եթե բացակայում է հանցագործության դեպքը, արարքի մեջ հանցակազմ չկա, հանցագործության կատարման մեջ մեղադրյալի մասնակցությունը ապացուցված չէ և այլ հիմքերով (տե՛ս ՔԴՕ-ի 5-րդ և 202-րդ հոդվածները): Նախ, այս իրավանորմը ուղղակիորեն հակասում է ԽՍՀՄ սահմանադրության 151-րդ հոդվածով հռչակված՝ «Արդարադատությունն իրականացվում է միայն դատարանի միջոցով» սկզբունքին:

Երկրորդ. օրենսդիրը քրեական գործի կարճման իրավունք վերապահելով քննիչին, դատախազին ու դատարանին (վերջինիս իրավունք է վերապահված նաև այդ հիմքով արդարացման դատավճիռ կայացնել), նշելով, որ կարճման հիմք է հանդիսանում նաև հանցագործության կատարման մեջ մեղադրյալի մասնակցության ապացուցված չլինելը, դրանով իսկ խախտում է անմեղության կանխավարկածի՝ իրավաբանական գիտության կողմից ճանաչված սկզբունքը: Ճիշտ կլինի, եթե գործող ՔԴՕ-ներից հանվի որպես քրեական գործը կարճելու հիմք հանցագործության կատարման մեջ մեղադրյալի մասնակցությունն ապացուցված չլինելու հղումը, ռեաբիլիտացման հիմք համարելով միայն հանցադեպի և հանցակազմի բացակայությունը: Պետք է քննիչին և դատախազին իրավունք վերապահել քրեական գործերը կարճելու միայն վերոհիշյալ երկու դեպքերում, սակայն կարճման որոշման օրինականությունն ու հիմնավորվածությունը դատարանում ստուգելու ու դատական որոշմամբ հաստատելու պարտադիր պայմանով:

Քրեական գործի վարույթը բացառող մյուս հանգամանքներով՝ իրադրությունը փոփոխվելու, անձին վարչական պատասխանատվության ենթարկելու նյութերը ընկերական դատարանին, անչափահասների գործերի հանձնաժողովին կամ անձին երաշխավորության հանձնելու, ինչպես նաև վաղեմության ժամկետը անցնելու, ամնիստիայի ակտով և մյուս բոլոր հիմունքներով քրեական գործերի կարճման իրավունքն ու պարտականությունը, ըստ իս, պետք է դրվեն միմիայն դատական մարմինների վրա:

Համաձայն հիմունքների նախագծի 36-րդ հոդվածի 8-րդ կետի, դատապարտյալի համար ուղղիչ աշխատանքային հիմնարկության տեսակը փոփոխելու հիմք է ծառայում դատարանի որոշումը, իսկ մեղմացման դեպքում լուծումը թողնվում է ուղղիչ աշխատանքային հիմնարկության ղեկավարության և ժողովրդական դեպուտատների տեղական խորհրդի գործկոմներին առընթեր վերադիտող հանձնաժողովների համատեղ քննարկմանը: Անմիջապես նկատենք, որ դատարանը, որպես սոցիալիստական արդարադատություն իրականացնող մարմին, փաստորեն, իր ֆունկցիան պետք է ավարտի դատավճիռ արձակելով, իսկ դատավճիռն ի կատար ածելու հետ կապված հարցերը, հասարակական կազմակերպությունների հետ համատեղ, պետք է լուծեն դատապարտյալի վարքագծի վրա հսկողություն իրականացնող մարմինները, արտադատարանական կարգով, սակայն դատախազի պարտադիր մասնակցությամբ, քանզի սահմանադրության 164-րդ հոդվածով օրենքների ճշգրիտ և միատեսակ կատարման նկատմամբ բարձրագույն հսկողությունը դրված է ԽՍՀՄ գլխավոր դատախազի և նրան ենթակա դատախազների վրա:

Գործող ՔԴՕ-ն ապացույցների շարքն է դասում վկայի, տուժողի, կասկածյալի, մեղադրյալի ցուցմունքները, փորձագետի եզրակացությունը, իրեղեն ապացույցները,

քննչական և դատական գործողությունների արձանագրությունները և այլ փաստաթղթեր (հոդված 56): Ապացույցների շարադրանքը կատարյալ չէ. դրանք պետք է լրացնել մինչ քրեական գործի հարուցումը կատարած կինոնկարահանումներով, տեսագրումներով, լուսանկարահանումներով և նմանօրինակ այլ տեխնիկական եղանակներով ձեռք բերված ուրիշ փաստերով, որոնք հանցագործության բացահայտման նպատակով ձեռնարկված անհետաձգելի գործողությունների բնույթ են կրում: Տվյալ դեպքում ՀԽՍՀ ՔԴՕ-ի 169-րդ հոդվածի անալոգիայով դատախազի սանկցիայի հիման վրա այդպիսի քրեահետախուզական գործողությունների շնորհիվ ձեռք բերված նյութերը պետք է դիտվեն որպես ապացույցներ:

Ինչ վերաբերում է գործող ՔԴՕ-ում ամրագրված այն պահանջին, որ ձայնագրառումների, կինոնկարահանումների (տեսագրությունները դուրս են մնացել) քննչական գործողությունների կատարման ժամանակ պահանջվում է հարցաքննվողի նախնական համաձայնությունը, այնուհետև անհրաժեշտ է վերացնել այս իրավանորմը ևս. այսինքն, նման գործողությունների կատարումը չպետք է կապվի հարցաքննվողի կամաարտահայտության հետ: Նպատակահարմար է միութենական հանրապետությունների ՔԴՕ-ներում մտցնել նոր իրավանորմ, համաձայն որի ապացուցողական նշանակություն չտրվի քննչական այնպիսի գործողությունների կատարմանը, որոնց առթիվ փաստաթղթերը (արձանագրություններ, եզրակացություններ և այլն) կազմվել են քրեական դատավարության օրենսգրքով նախատեսված ձևի խախտումներով:

Գործնական առումով քննության պրոցեսում կարևոր նշանակություն ունեն վկայի, տուժողի ցուցմունքները: Սակայն քիչ չեն դեպքերը, մանավանդ առավել ծանր, հատկապես կազմակերպված հանցագործությունների գործերով, երբ վկան, տուժողը սպառնալիքների, բռնությունների, նյութական շահագրգռվածության և այլ դրդապատճառներով փոխում են իրենց սկզբնական ցուցմունքները, հրաժարվում փաստերը հաստատելուց և հանցագործներին մերկացնելուց: Հետևաբար անհրաժեշտ է ստեղծել դատավարության մասնակիցների, դատարան հրավիրված, այդ թվում վկաների, տուժողների և մյուս անձանց հուսալի իրավական պաշտպանվածության երաշխիքներ: Միաժամանակ վկայի, տուժողի ցանկությամբ և գրավոր խնդրանքով օրենսդրորեն հնարավոր համարել նրանց ծպտյալ, գաղտնի (ինկոգնիտո) մնալը, ընդ որում, կանխելով ինֆորմացիայի արտահոսքը և պատասխանատվություն սահմանելով դրա համար:

Ապացույցների հավաքման ու գնահատության գործում որոշակի դժվարություններ են առաջանում՝ կապված փորձաքննությունների նշանակման ու անցկացման, օրենքով սահմանած քննության ժամկետների պահպանման ու դատական նիստերի փորձագետների մասնակցությունը ապահովելու հարցերի հետ: Հարկ է, որ փորձագետները հանվեն գերատեսչական ենթակայությունից, միավորվեն որպես իրավական ստատուս ունեցող ինքնուրույն ասոցիացիա, ունենան իրենց անկախ և կենտրոնացված ղեկավարությունը, ինչը կապահովեր եզրակացությունների պահանջվող որակը ու արագություն կհաղորդեր գործերի քննությանը:

Տնտեսավարման նոր քաղաքականության պայմաններում, ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման սկզբունքից ելնելով, փորձագիտական գործողությունների հետ կապված ծախսերը դատարանի որոշմամբ պետք է փոխհատուցվեն մեղավորների հաշվին:

Լուրջ մտորումներ են հարուցում նախաքննության ժամկետների, դրանց երկարաձգման մասին ՔԴՕ-ի հոդվածները, որոնք պարունակում են անորոշություններ և թերասացություններ: Համաձայն ՔԴՕ-ի 124-րդ հոդվածի, քրեական գործի նախաքննության ժամկետը սահմանված է երկու ամիս: Այնուհետև նախատեսված է, որ բացառիկ դեպքերում նախաքննության ժամկետի հետագա երկարացում կարող է կատարվել Հայկական ԽՍՀ դատախազի, ԽՍՀՄ գլխավոր դատախազի կամ նրանց տեղակալների կողմից: Այլ օրենսդրական ակտերով վերը նշված պաշտոնատար անձանցից ՀԽՍՀ-ի դատախազին ու նրա տեղակալներին իրավունք է վերապահված «բացառիկ դեպքերում» այդ ժամկետը երկարաձգել մինչև վեց ամիս, իսկ ԽՍՀՄ գլխավոր դատախազին ու նրա տեղակալներին՝ մինչև ինը ամիս: Այդ ժամկետի մեջ չեն մտնում լրացուցիչ քննություն կատարելու համար դատարանի կողմից գործը հետ վերադարձնելու դեպքում ևս մեկ ամիս գործի նախաքննությունը հսկող դատախազի միջոցով երկարաձգելը և այլն: Օրենսդրորեն սահմանված չէ, թե վերը նշված ժամկետները լրանալուց հետո Միության Գերագույն խորհուրդը կամ նրա նախագահությունը որքանով կարող են դարձյալ երկարաձգել գործի նախաքննությունը:



Օրենսդիրը չի մեկնաբանում, թե ինչ հանգամանքներ պետք է համարվեն «բացառիկ», ինչու՞ ՔԴՕ-ում տեղ չի տրված նախաքննության ժամկետները երկարացնելու իրավունքով օժտված դատախազներին վերապահված իրավունքների սահմաններին, արդյոք դատարանների կողմից լրացուցիչ քննության վերադարձվող գործերի ժամկետները տարածվու՞մ են նաև դատախազի կողմից մեղադրական եզրակացությունը չհաստատելու և գրավոր ցուցումներով գործը լրացուցիչ քննության վերադարձնելու վրա (հոդված 212): Ինչու՞ գործը լրացուցիչ նախաքննության վերադարձնելուց հետո կալանքի տակ պահելու ժամկետի երկարացումը պետք է կատարվի ընդհանուր հիմունքներով (հոդված 124, 4-րդ պարբերություն), իսկ նախաքննական և քրեական դատավարության մյուս ժամկետները պետք է սահմանվեն ՔԴՕ-ի տարբեր հոդվածներով:

Այստեղից եզրակացություն. նախաքննության և ընդհանրապես դատավարության բոլոր ժամկետների վերաբերյալ հոդվածները պետք է խմբավորվեն ու տեղ գտնեն ՔԴՕ-ի մեկ բաժնում. ՔԴՕ-ում գործածվող «բացառիկ դեպքերում» առաձգական հասկացությունը պետք է հանվի, դրա փոխարեն ուղղակիորեն նշելով, որ հանրապետական դատախազները (տեղակալները բացառյալ) իրավունք ունեն նախաքննության ժամկետը երկարացնել մինչև երկու ամիս, իսկ Միության գլխավոր դատախազը՝ երեք ամիս: Այսպիսով նախաքննության ամբողջ ժամկետը, ներառյալ գործերը լրացուցիչ նախաքննության վերադարձնելը և այլն, չպետք է գերազանցի յոթ ամսից. օրենսդիր մարմնին իրավունք պետք է վերապահվի միայն որոշակի ժամկետով երկարաձգել անձին նախնական կալանքի տակ պահելը. նշված ժամկետների լրանալու դեպքում օրենսդրորեն ամրագրել այն դրույթը, որ անձը անհապաղ ազատ արձակվի նախնական կալանքից՝ առանց վերոհիշյալ պաշտոնատար անձանց կամ իշխանության բարձրագույն մարմնի որոշման ու համաձայնության:

Գործերը լրացուցիչ քննության վերադարձնելու վերաբերյալ քրեական-դատավարական օրենքով նախատեսված ինստիտուտը գիտագործնական առումով որոշակի կիրառում ունի: Բավական է նշել, որ բացարձակ թվերով տարեկան հանրապետության դատարանների, այդ թվում նաև վճռաբեկ և հսկողական ատյանների կողմից լրացուցիչ քննության են վերադարձվում միջին հաշվով 300 անձի նկատմամբ քրեական գործեր: ՀԽՍՀ ՔԴՕ-ի 229-րդ հոդվածը դատարաններին պարտադրում է գործը լրացուցիչ քննության վերադարձնելու որոշման մեջ նշել, թե հատկապես որ հանգամանքները պետք է լրացուցիչ կերպով պարզաբանվեն և քննչական ինչ գործողություններ պետք է կատարվեն:

Այլ հանրապետությունների ՔԴՕ-ներում այս իրավանորմը տարբեր բովանդակություն ունի: ՌԽՖՍՀ ՔԴՕ-ի համապատասխան 232-րդ հոդվածը պարտադիր համարելով անհրաժեշտ լրացուցիչ հանգամանքների պարզումը որոշման մեջ արձանագրելը, դատարանին չի պարտավորեցնում նշել այդ հանգամանքները պարզելու համար կատարվելիք քննչական գործողությունների մանրամասները: Հանրապետության գործող ՔԴՕ-ն, փաստորեն լինելով ՌԽՖՍՀ ՔԴՕ-ի թարգմանված պատճենը, այս իրավանորմի հարցում դրսևորել է ավելորդ «ինքնուրույնություն»: Կարծում եմ, որ ՌԽՖՍՀ ՔԴՕ-ի նշված հոդվածի ձևակերպումն ավելի ընդունելի է, որովհետև այն չի ծանրաբեռնում դատարաններին և չի կաշկանդում լրացուցիչ քննություն կատարող քննչական մարմիններին:

1989 թվականի հունվարի 20-ին Հայկական ԽՍՀ գերագույն դատարանի պլենումի՝ «Հայկական ԽՍՀ դատարանների կողմից գործերը լրացուցիչ քննության վերադարձնելու վերաբերյալ օրենսդրության կիրառման պրակտիկայի մասին» № 3 որոշման 14-րդ կետում դատարաններին ղեկավար պարզաբանում է տրվել, որ «Գործերը լրացուցիչ քննության վերադարձնելիս դատարանները պարտավոր են ՀԽՍՀ քր. դատ. օրենսգրքի $55^2$ հոդվածի պահանջներին համապատասխան կայացնել մասնավոր որոշումներ, ինչպես հետաքննության կամ նախաքննության ընթացքում թույլ տրված քրեական դատավարական օրենքի էական խախտումների, այնպես էլ օրենքի մյուս խախտումների վերաբերյալ, որոնք առաջ են բերել քաղաքացիների օրենքով նախատեսված իրավունքների անտեսում կամ ոտնահարում» մինչև այժմ հրապարակված չէ ՀԽՍՀ գերագույն դատարանի պլենումների պարզաբանումների և ղեկավար ցուցումների համակարգված ժողովածու: Ի տարբերություն ՌԽՖՍՀ, Մոլդավական ԽՍՀ-ի և մի շարք հանրապետությունների, Հայաստանում չի հրատարակվում գերագույն դատարանի տեղեկագիր):

Այս ղեկավար ցուցումը բխում է լայն մեկնաբանման հիմք տվող ՀԽՍՀ ՔԴՕ-ի
309-րդ հոդվածի պահանջներից, սակայն, իմ կարծիքով, և՛ հոդվածը, և՛ ցուցումը
տարակուսանք են առաջացնում հետևյալ առումով. նախ, դատարանի մասնավոր
որոշումը ուղղակիորեն կապվում է դատավճռի կայացման հետ, ուստի և դրանք
դիտվում են որպես իրավական միասնություն (ինչպես, օրինակ, նախատեսված է
ՌԽՖՍՀ ՔԴՕ-ի 321-րդ հոդվածով): Հայտնի է, որ դատարանի կողմից գործերը
լրացուցիչ քննության վերադարձնելու որոշումները բովանդակում են նաև նախա-
քննական մարմնի կողմից թույլ տրված քրեադատավարական և մյուս կարգի իրա-
վախախտումներն ու բացթողումները, հետևաբար առանձին վերցրած մասնավոր ո-
րոշում կայացնելը դառնում է ավելորդ: Մասնավոր որոշումը, որպես հանցագոր-
ծություններ ծնող պատճառներին և դրանց նպաստող հանգամանքներին հակազդող
միակ դատաիրավական փաստաթուղթ, կարող է և պետք է ընդունվի միայն դա-
տավճռի կայացման հետ մեկտեղ:

Ընդունելի չպետք է համարվեն նաև գործնականում կիրառվող՝ դատավճիռ
կայացնելու հետ մասնավոր որոշմամբ նոր անձի նկատմամբ քրեական գործ հա-
րուցելը (այդ առթիվ համապատասխան հիշատակում կա ԽՍՀՄ գերագույն դա-
տարանի 1964 թ. հոկտեմբերի 14-ի՝ հետագա փոփոխություններով որոշման 6-րդ
կետի բ ենթակետում), ինչպես նաև վերադաս դատական ատյանի կողմից ստո-
րադաս դատարանի քննած գործերի ժամանակ թույլ տրված օրինախախտումների
վերաբերյալ մասնավոր որոշումներ կայացնելը: Բանն այն է, որ համաձայն «ԽՍՀՄ-
ում դատավորի ստատուսի մասին» օրենքի, սահմանված են դատավորներին կար-
գապահական պատասխանատվության ենթարկելու սպառիչ հիմքերը, որտեղ վե-
րադաս դատական ատյանի մասնավոր որոշման հիշատակում չկա: Հետևաբար,
ՔԴՕ-ի 55² հոդվածից պետք է հանել երկրորդ պարբերության դատարաններին վե-
րաբերող մասը, հստակորեն ձևակերպել մասնավոր որոշման հասկացությունը, ի-
րավական հիմունքներն ու ընդգրկող հարցերի շրջանակը, իսկ նոր անձի նկատ-
մամբ քրեական գործի հարուցումը թույլատրելի համարել միայն դատարանի որոշ-
մամբ, ինչպես նշված է ՀԽՍՀ ՔԴՕ-ի 247-րդ հոդվածում, հակառակ դեպքում այն
դիտել որպես դատավարական նորմերի խախտում:

Ուշադրության է արժանի ՔԴՕ-ի 320-րդ հոդվածի և 329-րդ հոդվածի 2-րդ կե-
տի խմբագրույթը. դրանցից առաջինում ամրագրված է, որ դատարանի որոշումը յոթ
օրվա ընթացքում կարող են վերադաս դատարանին գանգատարկել դատապարտ-
յալը, տուժողը և նրա ներկայացուցիչները, այն անձի մերձավոր ազգականը, որի
վերաբերյալ քննվել է գործը, ինչպես և կարող է բողոքարկել դատախազը, իսկ
մյուս հոդվածը առաջին ատյանի դատարանի որոշումների դեմ դատավարության
մասնակիցների գանգատարկման իրավունք չի նախատեսում:

Դատաիրավական ռեֆորմի դեմոկրատացման պահանջներից ելնելով հարկ է,
որ վճռաբեկության կարգով գանգատարկելու իրավունք վերապահվի դատավարու-
թյան բոլոր մասնակիցներին, իսկ դատախազին՝ բողոքարկելու ոչ միայն դատա-
րանի կայացրած դատավճիռները, այլև՝ որոշումները: Այդ կապակցությամբ ՔԴՕ-
323-րդ հոդվածից պետք է հանվի «Հայկական ԽՍՀ գերագույն դատարանի քրեա-
կան գործերի դատական կոլեգիայի դատավճիռները վճռաբեկության կարգով գան-
գատարկման և բողոքարկման ենթակա չեն» միտքը:

Դատական գործընթացի հետ կապված հարցերը, պրոբլեմները առանձին հե-
տազոտության առարկա են, ուստի քրեական դատավարության օրենսդրության կա-
տարելագործման ուղղությունների վերաբերյալ ներկայացնում ենք հետևյալ ամփո-
փիչ նկատառումները.

առավել կատարյալ դարձնել եղած քրեական դատավարության սկզբունքների
ձևակերպումները և դրանք լրացնել դատավարության բոլոր փուլերում օրենքի գե-
րակայության, մրցակցության ապահովման, անմեղության կանխավարկածի անշեղ
կիրառման, պատժի անխուսափելիության, կատարած հանցավոր արարքին համա-
չափ պատիժներ նշանակելու, անպարտ ճանաչված ու դատարանով արդարացված
քաղաքացիների աշխատանքային, նյութական, բարոյական ու քաղաքական ռեաբի-
լիտացման երաշխիքների սահմանման և հրապարակային ապահովման սկզբունք-
ներով. վերացնել «Դատարան և ընդդատություն» գլխի հակասությունները, գործող



քրեական դատավարության օրենսգրքերից հանել «հետաքննություն» և «նյութերի
մինչդատական նախապատրաստման արձանագրային ձևը» ինստիտուտները.

ընդունելի համարել գործերի քննության միայն նախաքննության միջոցով կա-
տարումը. նախաքննական մարմինները հանել ներքին գործերի մինիստրության հա-
մակարգից և ստեղծել ԽՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր քննչական անկախ
ապարատ, օրենք ընդունել «ԽՍՀՄ-ում քննիչի ստատուսի մասին».

փաստաբաններին օրենսդրականորեն թույլատրել մասնակցելու դատավարու-
թյանը անձին մեղադրանք առաջադրելու պահից.

սահմանել դատախազի ստատուս և դրա հիման վրա համապատասխան փոփո-
խություններ մտցնել «ԽՍՀՄ-ում դատախազության մասին» օրենքում.

փորձագիտական հաստատությունները հանել գերատեսչական ենթակայությու-
նից, դրանք միավորել իրավական ստատուս ունեցող ինքնուրույն ասոցիացիայի
մեջ.

դատավարության ժամկետները վերանայել, դրանց վերաբերյալ հոդվածները
խմբավորել ու միավորել քրեական դատավարության օրենսգրքի մեկ գլխում.

իրավաբանական հստակ ձևակերպումներով կարգավորել գործերը լրացուցիչ
քննության վերադարձնելու ու մասնավոր որոշումների ինստիտուտները.

դատավարության կողմ հանդիսացող անձանց համար իրավունք վերապահել
վճռաբեկության կարգով գանգատարկելու առաջին ատյանի կարգով ՀԽՍՀ գերա-
գույն դատարանի քրեական գործերի դատական կոլեգիայի դատավճիռները, ինչ-
պես նաև քրեական գործը լրացուցիչ քննության վերադարձնելու, նոր անձի նկատ-
մամբ քրեական գործ հարուցելու, մասնավոր որոշումների առթիվ կայացված դա-
տական որոշումները.

քրեական գործի վարույթը բացառող բոլոր հիմունքներով քրեական գործերի
կարճման պարտականությունը դնել միմիայն արդարադատությունն իրականացնող
մարմինների վրա.

ստեղծել իրավական մեխանիզմ՝ ապահովելու դատավորների, քննիչների, դա-
տախազների, ինչպես նաև դատավարության մասնակիցների ու նրանց մերձավոր-
ների անձի, կյանքի, առողջության, գույքի անձեռնմխելիության երաշխիքներ:

ները (41 տոկոս)։ Եվ դա հասկանալի է, քանի որ ուսանողների ու դպրոցականների համար աշխատանքը հասարակական-քաղաքական գրքի հետ ամենօրյա պարտականություն է։ Այդ կատեգորիայի մարդկանց շրջանում քիչ կարդացողներ հիմնականում չկան։ Ամիսը 2—3 ժամ ընթերցելու մակարդակով (կարելի է համարել ոչ ինտենսիվ աշխատանք հասարակական-քաղաքական գրքի վրա) առջևում են բանվորները (38 տոկոս) և կոլտնտեսականները (29 տոկոս)։

Իհարկե, շատ կարևոր էր պարզել ամենաշատ ընթերցող խմբերը հասարակական-քաղաքական գրքից ակտիվ օգտվողների շրջանում։ Ուսումնասիրել ենք կուլտուր-լուսավորական հիմնարկների (թատրոնների), «Հայգլխէներգո» հանրապետական գլխավոր վարչության և ժողովրդական կրթության աշխատողների մի քանի խմբեր։ Հասարակական-քաղաքական գրքի ընթերցանության ինտենսիվության համեմատաբար բարձր մակարդակի կարողացել են հասնել Երևանի պոլիտեխնիկական և բժշկական ինստիտուտների դասախոսներն ու ուսանողները (66 տոկոս)։ Այնուհետև գալիս են կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողները (48 տոկոս), ինժեներատեխնիկական աշխատողները (38 տոկոս), դպրոցների դասատուները (36 տոկոս)։

Հայտնի է, որ մարդկանց կրթությունը ազդում է ընթերցանության նյութի ու ծավալի ձևավորման, ինտենսիվության վրա։ Ընդհանուր միտումը հաստատվեց, երբ ընթերցողների քննված խմբերը դասակարգեցինք ըստ կրթական մակարդակի։ Ամենաակտիվ ընթերցող է բարձրագույն կրթություն ունեցող անձանց 51 տոկոսը, 6 տոկոսը քիչ է կարդում։ Սակավ ընթերցողների թիվն ավելի մեծ է միջնակարգ-մասնագիտական և ընդհանուր դպրոցական կրթություն ունեցողների շրջանում (12—13 տոկոս)։

Կարևոր ցուցանիշ է ընթերցանության ինտենսիվությունն ըստ բնակչության տարիքային խմբերի։ Ամենաակտիվ ընթերցողներ են 41 և ավելի մեծ տարիք ունեցող մարդիկ (49 տոկոս)։ Հասարակական-քաղաքական գիրքը ուսման համար օգտագործելու գերիշխող հետաքրքրություն է նկատվում ուսանողների, աշակերտների, բանվորների շրջանում։ Բժիշկների և թատրոնի աշխատողների մեծ մասը հասարակական-քաղաքական գրքի նկատմամբ հետաքրքրությունը բացատրեց միջազգային կյանքին իրազեկ լինելու և մտահորիզոնի ընդլայնման ձգտմամբ։

Անմիջականորեն գրքի տիպաբանության կապակցությամբ կոնկրետացվել են նաև հասարակական-քաղաքական գրքի սոցիալական նշանակությունը և դրա նկատմամբ ընթերցողների հետաքրքրության դրսևորման արտահայտությունը Հայաստանի բնակչության շրջանում։ Պարզվել է, որ հասարակական-քաղաքական գրքի հիմնական տիպերին (հանրամատչելի գրքին՝ 58,4 տոկոս, գիտականին՝ 37,8 տոկոս, ընտիր երկերին՝ 19,8 տոկոս) նախապատվություն են տվել բանվորները, ծառայողները, դասախոսները և ուսանողները։ Համադրումը սոցիալական այլ խմբերի հետ ցույց է տալիս, որ բանվորների շրջանում հետաքրքրությունը բարձր է հանրամատչելի հասարակական-քաղաքական գրքի նկատմամբ։ Միևնույն ժամանակ նրանց համար պակաս նշանակություն ունեն ակադեմիական, գիտական հրատարակությունները։ Մոտավորապես նույնն են նաև կոլտնտեսականների նախասիրությունները, հանրամատչելի հասարակական-քաղաքական գիրք՝ 72,6 տոկոս, ընտիր և լիակատար հրատարակություններ՝ 48 տոկոս։ Այլ պատկեր է ներկայացնում ծառայողների վերաբերմունքը։ Նրանց ճնշող մեծամասնությունը նախապատվություն է տալիս գիտական (82 տոկոս) և ակադեմիական (77,2 տոկոս) հրատարակություններին, մոտավորապես մեկ քառորդը հետաքրքրվում է հանրամատչելի հասարակական-քաղաքական գրքով և լիակատար հրատարակություններով։ Նրանց համար պակաս նշանակություն ունեն ընտիր երկերը։ Հանրամատչելի հրատարակություններին նախապատվություն են տալիս աշակերտները (75 տոկոս), ուսանողները (73,2 տոկոս), թատրոնի աշխատողները (72,4 տոկոս), իսկ գիտական (72 տոկոս) և ակադեմիական (69 տոկոս) հրատարակություններին՝ դասախոսները։ Համապատասխանաբար, նրանց շրջանում փոքր է հետաքրքրությունը լիակատար հրատարակությունների և ընտիր երկերի նկատմամբ։

Հասարակական-քաղաքական գրքի տարբեր տիպերի նկատմամբ թատրոնի աշխատողների ու բժիշկների հետաքրքրությունների դինամիկան ուսումնասիրելիս պարզվեց, որ առաջին տեղում են հանրամատչելի (87 տոկոս) և գիտական (84,6 տոկոս) հրատարակությունները։

Հանրագումարի բերելով հասարակական-քաղաքական գրքի տարբեր տիպերին նախապատվություն տալու առանձնահատկությունների վերլուծության տվյալ-



ները, կարելի է տեսնել հետևյալը. հանրամատչելի հրատարակությունը բացարձակ հետաքրքրություն է վայելում բանվորների, աշակերտների, ուսանողների, թատրոնի աշխատողների և կոլտնտեսականների, իսկ գիտական և ակադեմիական հրատարակությունները՝ ծառայողների, դասախոսների, այնուհետև ուսանողների, աշակերտների, բժիշկների շրջանում։ Ընդ որում հասարակական-քաղաքական գրքի տարբեր տիպերի նկատմամբ հետաքրքրությունը առավել բազմակողմանի է արտահայտված աշակերտների և ուսանողների մեջ։

Անկետավորմամբ հատուկ հետազոտվել է Հայաստանում ընթերցողների՝ հասարակական-քաղաքական գրքի տարբեր թեմատիկաներին դիմելու հաճախականությունը։ Հարցման ենթարկվածների մեծ մասը ամենից հաճախ օգտագործում է ԽՄԿԿ համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումների նյութերը, խորհրդային կառավարության որոշումները (47 տոկոս), գրքեր գեղագիտության (38,2 տոկոս), պատմության և պատմական գիտությունների (33,2 տոկոս) վերաբերյալ, ԽՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության (28 տոկոս), պետության և իրավունքի (22,2 տոկոս) մասին, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի երկերը (21,4 տոկոս), հրատարակություններ քաղաքատնտեսության վերաբերյալ (21 տոկոս)։ Հարցման ենթարկվածների մեկ հինգերորդից էլ պակասն է ակտիվորեն կարդում ռազմական գործի (16,6 տոկոս), աթեիզմի վերաբերյալ (15,8 տոկոս), ՀամԼԿԵՄ-ի և երիտասարդական շարժման մասին (14 տոկոս), փիլիսոփայության վերաբերյալ (13,8 տոկոս), Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի մասին (12,4 տոկոս) գրքեր։ Ընթերցողներն անբավարար ակտիվությամբ են դիմում գիտական կոմունիզմի (9 տոկոս) և բարոյագիտության ((4,2 տոկոս) վերաբերյալ հրատարակություններին։

Գեղագիտությանը նվիրված գրքերի նկատմամբ հետաքրքրության համեմատաբար բարձր տոկոսը սոցիալական տարբեր խմբերում հասկանալի է (մեծամասնություն են կազմում բանվորները, ինժեներատեխնիկական աշխատողները, թատրոնի գործիչները)։ Դա նախ և առաջ բացատրվում է մարդու՝ ամեն տեսակ, այդ թվում և գեղագիտական արժեքներ կերտելու պոտենցիալ կարողությամբ։

Ինչպես վկայում են հասարակական-քաղաքական գրքի ընթերցմանը խանգարող պատճառների մասին եղած տվյալները, հարցման ենթարկվածների մեծ մասը (45,2 տոկոս) մատնանշել է հետաքրքրող թեմատիկայի վերաբերյալ գրքերի սակավությունը գրախանութներում, իսկ մեկ քառորդից ավելին (29,6 տոկոս) պատճառը համարում է ընթերցանության համար պատշաճ պայմանների բացակայությունը։ Հարցման ենթարկվածների 25,2 տոկոսը նշել է հետաքրքրող գրքերի անբավարար քանակը գրադարանում։

Հասարակական-քաղաքական գրքի ընթերցման ինտենսիվության ու ծավալի վրա ազդում է նաև տարիքը։ Ինչպես ցույց են տվել հետազոտությունները, տարիքի հետ անում է հետաքրքրությունը հասարակական-քաղաքական գրքի այնպիսի թեմատիկաների նկատմամբ, ինչպես պատմությունը և պատմական գիտությունները, գիտական կոմունիզմը, պետությունը և իրավունքը, փիլիսոփայությունը,ռազմական գործը և նվազում է հետաքրքրությունը բարոյագիտության, երիտասարդական շարժման, աթեիզմի նկատմամբ։ Տեղի են ունենում նաև տարիքի հետ կապված ընթերցանության վրա առանձին գործոնների ազդեցության մեծացում։

Սոցիոլոգ Ա. Ի. Ռեյտբլատի խոսքերով, տնային գրադարանը, ներկա պայմաններում կոնկրետ փաստեր ու գիտելիքներ հաղորդելուց զատ, հիմքեր է դնում շրջապատող աշխարհի իմաստավորման համար։ Բնակչության որոշակի խմբեր զբաղվում են գրքեր հավաքելով, այսինքն գրքեր են ձեռք բերում կոնկրետ նպատակի՝ ուսման, աշխատանքի, գեղագիտական հաճույքի համար և այլն։ Այս դեպքում գրքեր ունենալը դիտվում է նաև որպես սիմվոլիկ հաղորդակցում մշակույթի արժեքների հետ, իսկ ինքը՝ գիրքը, գնահատվում է ոչ թե որպես հոգևոր բովանդակության կրող, այլ իբրև արժեքավոր իր, նյութական օբյեկտ։ Նշված գործոնները հանգեցրել են վերջին 15—20 տարում տնային գրադարանների քանակի ու ծավալի արագ աճի։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ ամեն տարի անձնական հավաքածուները համալրվում են մոտավորապես հինգ անգամ ավելի շատ գրքերով, քան երկրի բոլոր գրադարանները։ Այնպես որ, մի կողմից, տնային գրադարանների թվի ու ծավալի արագ աճը բարձրացնում է դրանց դերը բնակչությանը գրքով ապահովելու գործում, բայց, մյուս կողմից, հանգեցնում «դեֆիցիտի» առաջացման գրքի շուկայում (Рейтблат А. И. Основные тенденции развития массового чтения в СССР, тенденции развития чтения в социалистических странах. М., 1983, с. 130—131)։

Հետազոտման ընթացքում փորձեցինք ամենից առաջ որոշել գրքերի թիվը Հայաստանի տնային գրադարաններում: Ինչպես պարզվել է, հարցման ենթարկվածների մոտ 50 տոկոսն ունի մինչև 50 անուն, մեկ հինգերորդից ավելին՝ 50—100 և մոտավորապես քսաներորդ մասը (6 տոկոս)՝ 100-ից մինչև 300 անուն հասարակական-քաղաքական գիրք:

Հարց է ծագում. որն է հասարակական-քաղաքական գրքի օպտիմալ քանակը տնային գրադարանում: Ամենահավանական թիվը կլինի հիսունից պակաս հասարակական-քաղաքական գիրք: Ինչպես ցույց են տվել 70-ական թվականներին Լենինի անվան պետական գրադարանի անցկացրած ընդհանուր միութենական հետազոտությունները, անձնական գրադարաններում եղած գրքերի ընդհանուր քանակը բնութագրվում է ցածր ցուցանիշներով: Այսպես, 50—100 գիրք ուներ ամբողջ երկրի գրադարանների 17 տոկոսը (ցուցանիշն ավելի բարձր էր միայն մասնագետների մոտ 25 տոկոս և ծառայողների շրջանում՝ 18 տոկոս): Այն ժամանակ գերակշռում էին 11—30 անուն գիրք ունեցող տնային գրադարանները (22 տոկոս): Տնային մեծ գրադարաններ (500-ից ավելի գիրք) ունեին միայն մասնագետները (6 տոկոս) և կենսաթոշակառուները (2 տոկոս):

Նման հետազոտություններ են արվել նաև մեր հանրապետությունում: Օրինակ, անձնական գրադարանները Հայաստանի գյուղերում (1973—1975 թթ.) բնութագրվում են եղած գրքերի հետևյալ ցուցանիշներով. մինչև 30 գիրք՝ 26 տոկոս, 30—49՝ 12 տոկոս, 50—99՝ 22 տոկոս, 100-ից ավելի՝ 40 տոկոս: Տվյալները ցույց են տալիս, որ 50—100 գրքից բաղկացած անձնական գրադարանները ավելի շատ են տարածված Հայաստանի գյուղական բնակիչների շրջանում:

Հետազոտությունը էական թերություններ երևան հանեց Հրատպետկոմի գրքի առևտրի վարչության, հանրապետության հրատարակչությունների ռեկլամային գործունեության բնագավառում: Հարցման ենթարկվածները նշում էին, որ գրքերի անոտացիաները չեն խթանում գրքի վաճառքը: Դեռևս թույլ է այն ստեղծագործությունների պրոպագանդումը, որոնք առաջին անգամ են հրատարակվում հայերեն: Զարմանալի չէ, որ լույս տեսած գրականության պրոպագանդիստների թվում ընթերցողը չի նշում գրախանութի աշխատողին, որը պետք է լինի գնորդի առաջին խորհրդատուն:

Ընդհանուր միութենական վիճակագրությունը վկայում է, որ գրահրատարակության պլանները տարեցտարի աճում են, իսկ գնորդը, ընդհակառակը, ավելի քիչ է գնում, քանի որ բծախնդիր է դարձել, առաջվա նման ամեն պատահած գիրք չի վերցնում:

Հետազոտության ընթացքում ուսումնասիրվեցին ընթերցանության համար հասարակական-քաղաքական գրքի ձեռքբերման աղբյուրները: Հարցման ենթարկվածների միայն հինգերորդ մասն է (19,8 տոկոս) գիրքը ձեռք բերում գրախանութում: Ամենամեծ տոկոս են կազմում նրանք (47,8), ովքեր հասարակական-քաղաքական գիրքը վերցնում են բարեկամներից ու ծանոթներից: Եվ ամենափոքր մասը (14 տոկոս) օգտվում է հասարակական գրադարանից:

Հատուկ ուշադրություն է նվիրվել հասարակական-քաղաքական գրքի մասին բնակչությանն ինֆորմացիա տվող աղբյուրներին: Դրանց թվում ուշադրություն էր դարձվում այնպիսի աղբյուրների վրա, ինչպես միջանձնային հաղորդակցումը, պարբերական մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն: Հաղորդակցումն ուսումնասիրվում էր գրախանութների վաճառողների, գրքասերների ընկերության ակտիվիստների, գրադարանավարների, դասախոսների ու պրոպագանդիստների, ծանոթների կողմից ընթերցողի իրազեկության վրա ազդեցության բնույթով: Վերը թվարկված աղբյուրներից ամենամեծ նշանակություն ունեն (39,6 տոկոս) բարեկամներն ու ծանոթները, ապա գալիս են հեռուստատեսությունը (37,6 տոկոս) և ռադիոն (32,4 տոկոս): Չորրորդ տեղում են գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանները (18,8 տոկոս): Հարցման ենթարկվածների փոքր տոկոսն է ինֆորմացիայի աղբյուրների թվում նշել գրախանութների վաճառողներին (7), գրադարանավարներին (7,2), ինչպես նաև դասախոսներին ու պրոպագանդիստներին (7,2):

Հարցաթերթիկներում պարբերական մամուլը՝ որպես ինֆորմացիայի աղբյուր, տարբերակված է ընդհանուրի ու մասնագիտականի: Մամուլը ներառում էր կենտրոնական և հանրապետական թերթերը, հանդեսները: Գրքերի մասին նպատակապացորեն տեղեկացնում են այնպիսի պարբերական հրատարակություններ, ինչպես հրատարակչության անոտացված թեմատիկ պլանները, համամիութենական գրապալատի և գիտատեխնիկական ինֆորմացիայի մարմինների հրատարակությունները: Պարզվել է, որ գրքերի մասին տեղեկությունների հաղորդման ամենաբարձր տոկոս ունեն կենտրոնական թերթերը (45,2): Ցուցանիշը զգալիորեն ավելի ցածր է հանրապետական թերթերում (25 տոկոս) և հանրապետական հանդեսներում (19,4 տոկոս), առավել ևս մասնագիտական հանդեսներում և տեղական մամուլում (16,8 ական տոկոս):



Գրքերի մասին ինֆորմացիայի ստացման առավել մասսայական միջոց են գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների հրատարակությունները (18,8 տոկոս), այնուհետև՝ հրատարակչությունների անոտացված թեմատիկ պլանները (16,4 տոկոս), գրքերում զետեղված մատենագիտական ցանկերը (4,6 տոկոս): Գրքերի մասին տեղեկություններ ստանալու համար անբավարար են օգտագործվում համամիութենական գրապալատի հրատարակությունները:

Այսպիսով, ընթերցողների համար ինֆորմացիայի ամենաարդյունավետ աղբյուր են կենտրոնական թերթերը, միջանձնային շփումները և ապա՝ հեռուստատեսությունն ու ռադիոն:

Մեր հետազոտության արդյունքների համադրումը Արևմուտքի երկրների նմանատիպ հետազոտությունների արդյունքների հետ թույլ է տալիս ավելի որոշակի պատկերացնել եղած նմանություններն ու տարբերությունները, ինչպես նաև արժեքավորել հասարակական-քաղաքական գրքի դերը ժամանակակից հասարակության կյանքում և մշակույթի զարգացման գործում:

Կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունը ակնառու կերպով ցույց տվեց, թե ինչ փոփոխություններ են տեղի ունեցել հայ ժողովրդի մշակութային կյանքում խորհրդային իշխանության տարիներին: Զգալիորեն աճել է պոլիգրաֆիական արտադրությունը: Նոր հրատարակչությունների կազմակերպմամբ, ինչպես նաև հենց նրանցում խմբագրությունները բաժանելու միջոցով, հրատարակչական գործը զարգացել է մասնագիտացման ուղիով. այն հաշվով, որ լույս ընծայվի համասեռ թեմատիկայով գրականություն: Բարելավվել է հասարակական-քաղաքական գրականության թեմատիկ պլանավորումը, կատարելագործվել կազմակերպական պրոցեսը հրատարակչություններում, բարձրացել խմբագրման, գեղարվեստական ձևավորման և գրքերի պոլիգրաֆիական կատարման մակարդակը:

Որոշակի քանակական ու որակական աճ է տեղի ունեցել նաև գրքի առևտրի բնագավառում. կիրառվում են բնակչության սպասարկման նոր ձևեր ու մեթոդներ, ավելի մեծ ուշադրություն է նվիրվում գնորդների պահանջարկի ուսումնասիրմանը, հասարակական-քաղաքական գրքի ռեկլամին ու պրոպագանդմանը: Զգալիորեն ավելացել է գրախանութների քանակը, կատարվել է դրանց մասնագիտացում: Մեծապես աճել են եկամուտները գրքի առևտրից:

Հարցման ենթարկվածների 33 տոկոսի կարծիքով, գրքասերների ընկերության ակտիվիստները պետք է ավելի շատ ուշադրություն նվիրեն հասարակական-քաղաքական գրքի և գրքագիտական գիտելիքների պրոպագանդմանը, լավ միջնորդ լինեն հեղինակի ու ընթերցողի, ինչպես նաև գրքի ու ընթերցողի միջև, մշտապես համագործակցեն հրատարակիչների, գրավաճառ ցանցի աշխատողների և գրադարանների հետ:

Ինչպես գտնում է հարցման ենթարկվածների 65 տոկոսը, գրքի տարածումն է՛լ ավելի բարելավելու նպատակով անհրաժեշտ է նախ և առաջ ուժեղացնել հասարակական-քաղաքական հրատարակությունը ռեկլամելու ու պրոպագանդելու աշխատանքը: Այդ կապակցությամբ կարիք է զգացվում ընդարձակել Հայկական ԽՍՀ Հրատպետկոմի օրգան «Գրքերի աշխարհ» ամսաթերթի ծավալը, որը պետք է լրացվի գրքային արտադրանքի ձևավորումը բարելավելու միջոցառումների բաժնով, գնորդներին ուղղված խորհուրդներով: Այնպես որ, ամսաթերթը պետք է նաև դաստիարակի ընթերցողին: Նրա էջերում պետք է նաև ավելի շատ խոսք տալ հենց ընթերցողներին:

Ընթերցողների հետ կապի ընդլայնումը հնարավորություն կտա բարելավել հասարակական-քաղաքական գրքի թեմատիկ պլանավորումը և տպաքանակների սահմանումը: Կարծում եմ, որ հանրապետության գրահրատարակչական ոլորտի աշխատողները պետք է հաճախակի հանդես գան պարբերական մամուլի էջերում, ընթերցողներին ծանոթացնեն այս մարզում իրականացվող միջոցառումներին, հասարակական-քաղաքական գրքի թեմատիկ պլանները կազմելիս գերազանցապես առաջնորդվեն սոցիոլոգիական հետազոտությունների և գնորդների պահանջարկի ուսումնասիրման արդյունքներով:

# ԱԳՐՈԱՐԴԻ ԿԱԴՐԵՐԻՆ՝ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

**Մ. ԲԱԼՈՅԱՆ**

ՔՆՆԱՐԿԵԼՈՎ արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականությունը, ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումը տնտեսական պրոբլեմների լուծման կիզակետում դրեց գյուղում արտադրական հարաբերությունների արմատական վերափոխումը, անցումը տնտեսության վարման ու կառավարման նոր ձևերին ու մեթոդներին: Ծրագրված է ագրարային սեկտորի և ամբողջ էկոնոմիկայի զարգացման հարցերի, հասարակական սեփականության իրացման մեխանիզմի նկատմամբ տնտեսագիտական հայացքների արմատական վերակառուցում: Խոսքը նոր մոտեցումների մասին է, որոնց հիման վրա կլուծվեն էկոնոմիկան զարգացման նոր որակական մակարդակի դուրս բերելու խնդիրները:

Պլենումում իր զեկուցման մեջ Մ. Ս. Գորբաչովը շեշտեց, որ «նոր ագրարային քաղաքականությունը որպես բացառիկորեն հրատապ խնդիր առաջադրում է կադրերի տիրապետումը տնտեսագիտական գիտելիքներին, տնտհաշվարկային ձևերն ու մեթոդներն ակտիվորեն օգտագործելու, ինքնուրույնաբար և նախաձեռնողաբար գործելու հմտությանը»: Ժողովրդական տնտեսության, դրա բոլոր ճյուղերի, ձեռնարկությունների (միավորումների), կառավարչական օղակների կադրերի համընդհանուր տնտեսագիտական ուսուցման հաջողությունը պայմանավորված է անընդհատ միասնական պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցման կարգավորված համակարգի ստեղծումով:

Վերակառուցողական պրոցեսները առաջ են քաշում տաղանդավոր մարդկանց, որոնք ընդունակ են գործը տանել դեմոկրատիայի, հրապարակայնության, բացախոսության, խորհրդային հասարակության կյանքի բոլոր ոլորտների նորացման պայմաններում: Հսկայական բեկում է տեղի ունենում մարդկանց գիտակցության մեջ: Եվ եթե մենք չվերակառուցենք ագրարային սեկտորի բոլոր աշխատողների, մասնագետների, ղեկավարների մտածողությունը, ապա նոր ագրարային քաղաքականության սերմերը արգասավորեն ծիլ չեն տա, դժվար կլինի ակնկալել լավ բերք:

Աշխատանքի վարձատրության նոր պայմաններին անցնելիս հանրապետության ԱԱՀ-ի մի քանի կոլեկտիվներում վեճ էր ծագել: Մարդիկ գլուխ չէին հանում տընտեսավարման նոր սկզբունքներից, կարծում էին, թե ոտնահարվում են իրենց իրավունքները և հրաժարվում էին աշխատանքի դուրս գալ: Այդ տնտեսությունների ղեկավարները, մասնագետները ժամանակին չէին բացահայտել աշխատանքի վարձատրության նոր պայմանների առավելությունները, տնտհաշվարկային հարաբերությունների էությունը: Արդյունքում՝ տուժում էին պետությունը, տնտեսությունը, աշխատավորը: Բախումն արագ հարթվեց, երբ պետագրոարդի աշխատողները, մեկնելով տեղերը, կոնկրետ օրինակներով ցույց տվեցին, որ կոլեկտիվը կշահի նորամուծություններից, եթե, իհարկե, սովորի հմտորեն տնտեսավարել, խնայողաբար օգտագործել նյութական և աշխատանքային ռեսուրսները:

Մեզ բոլորիս համար դա լուրջ դաս եղավ, մեկ անգամ ևս ստիպեց մտածել հանրապետության ԱԱՀ-ի աշխատողների տնտեսագիտական պատրաստվածությունը բարձրացնելու մասին: Հարցը դրվեց կադրերի պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցման հանրապետական խորհրդի քննարկմանը: Պարզվեց, որ ոչ բոլոր ղեկավարները, մասնագետներն են գիտակցել աշխատանքի ոճի և մեթոդների վերակառուցման, աշխատավորական կոլեկտիվների կարծիքին հենվելու անհրաժեշտությունը, որ արտադրատնտեսագիտական ուսուցումը դեռևս թույլ է ազդում ԱԱՀ-ի ճյուղերի աշխատանքի արդյունքների վրա: Այդ առթիվ քննադատական լուրջ խոսքեր հնչեցին մեր հասցեին՝ ՀԿԿ Կենտկոմի 1989 թ. հուլիսյան պլենումում:

Կադրերի անբավարար տնտեսագիտական գրագիտությունը լճացման ժամանակաշրջանի «ժառանգությունն է», երբ պահանջվում էր ոչ թե մտածել տնտեսագիտորեն, այլ լոկ կատարել վերևից տրված ցուցումները, երբ տնտեսագիտական մեխանիզմը չէր գործում՝ դիրքերը զիջելով վարչարարական մեթոդներին: Կադրերի տնտեսագիտական անգրագիտությունը, ակնթարթային շահի հետևից ընկնելը, կուրորեն տեղայնությանը հետամուտ լինելը, գերատեսչական մոտեցումը որոշումներ ընդունելիս բացասաբար են անդրադառնում կառավարման տնտեսագիտական մեթոդների արմատավորման, պայմանագրային պարտավորությունների կատարման, արտադրության տեղաբաշխման, սոցիալական ոլորտի զարգացման վրա:

Հանրապետությունում ծավալված տնտեսագիտական համընդհանուր ուսուցումը դեռևս հարկ եղած ազդեցությունը չի գործում էկոնոմիկայի իրավիճակի վրա, թույլ է ներգործում աշխատավորների մեջ ձևավորելու ժամանակակից տնտեսագիտական մտածողություն, դաստիարակելու տնտեսատիրոջ զգացում:

Ագրոարդյունաբերական համալիրի կառավարման հանրապետական բարձրագույն դպրոցի տնտեսագիտական լաբորատորիայի անցկացրած հարցումը ցույց է տվել, որ յուրաքանչյուր չորս աշխատողից միայն մեկն է տնտհաշվարկի հիմունքներին իրազեկ լինելու համար իրեն պարտական զգում արտադրատնտեսագիտական ուսուցման պարապմունքներին: Ճնշող մեծամասնությունը (82 տոկոսը) համապատասխան ինֆորմացիա ստանում է «արտաքին աղբյուրներից»՝ մամուլի հրապարակումներից, ռադիո-հեռուստատեսային հաղորդումներից: Հասկանալի է, որ դրանք լոկ ամենաընդհանուր տեղեկություններ են՝ առանց տվյալ ձեռնարկության, տեղամասի, արտադրամասի, բրիգադի աշխատանքի պայմաններին կոնկրետ շաղկապելու:

Ղեկավարների միայն երեք տոկոսն է համոզված, որ տնտեսավարման նոր պայմաններին լավատեղյակ են իր գլխավորած ձեռնարկության բոլոր աշխատողները: Ղեկավարների 87 և բանվորների 71 տոկոսի կարծիքով, տնտեսագիտական ուսուցումը լուրջ բարելավման կարիք է զգում: Բանվորների ու կոլտնտեսականների լոկ 16 տոկոսն է նշել ուսուցման գործնական օգուտն իր աշխատանքի համար, այն դեպքում, երբ տնտեսագիտական գիտելիքների նկատմամբ արթնացած ձգտման մասին հայտնել է հարցման ենթարկվածների գրեթե երեք քառորդը: Այս ամենը վկայում է էկոնոմիկայի նկատմամբ աշխատավորների հարանուն հետաքրքրության և արտադրատնտեսագիտական ուսուցման համակարգի միջոցով անհրաժեշտ տընտեսագիտական պատրաստություն ստանալու իրական հնարավորությունների միջև եղած լուրջ խզման մասին:

Աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման համակարգի վերակառուցման նոր խթան հանդիսացավ ԽՄԿԿ Կենտկոմի որոշումը Ուլյանովսկի մարզի կուսակցական մարմինների աշխատանքի մասին, որտեղ վերլուծված է ուսուցման կատարելագործման ընթացքը, բացահայտված են դրա կազմակերպման մեջ առկա թերությունները: Մասնավորապես նշված է, որ դեռևս երկչոտությամբ է լուծվում մասսայական տնտեսագիտական ու պրոֆեսիոնալ ուսուցման միացման խընդիրը, այդ աշխատանքի մեջ ինչպես հարկն է չեն ներգրավվել տնտեսական, խորհրդային ու արհմիութենական մարմինները: Շատ ղեկավարներ չեն գիտակցում կադրերի որակավորման նշանակությունը կառավարման գերազանցապես տնտեսագիտական մեթոդներին անցնելու համար: Տնտեսավարներն ու ճյուղային արհմիությունները հաճախ իրենց դերն այս գործում սահմանափակում են հրամաններ ու որոշումներ արձակելով:

Կադրերի տնտեսագիտական պատրաստության վիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ ուսուցումը կազմակերպելու գործում բացահայտված թերությունները շատ բանով բնորոշ են նաև Հայկական ԽՍՀ ագրոարդյունաբերական համակարգի աշխատավորական կոլեկտիվներին, որոնց գործունեությունը վերջերս խիստ քննադատվեց անցած տարվա արդյունքներն ամփոփող հանրապետական սեմինար-խորհրդակցությունում:

Իհարկե, Հայկական ԽՍՀ պետագրոարդի կադրերի արտադրատնտեսագիտական ուսուցման համակարգում, պարապմունքների կազմակերպման և դրանց բովանդակության խորացման գործում որոշակի տեղաշարժեր կատարվել են, սովորելը հետաքրքիր է դարձել մարդկանց համար: Բրիգադի, ֆերմայի, արտադրամասի,

*ԲԱԼՈՅԱՆ ՄԱՐՏԻՆ ՎԱՐԴԱՆԻ— ՀԽՍՀ պետագրոարդի նախագահի տեղակալ, ԱԱՀ-ի կադրերի պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցման խորհրդի նախագահ։*

տեղամասի ամենօրյա արտադրական պրակտիկայում ծագած տնտեսագիտական պրոբլեմները առավել նպատակահարմար է կոլեկտիվ քննարկել հենց էկոնոմիկային նվիրված պարապմունքներում, բայց, ցավոք, առայժմ դրանք միայն առանձին օրինակներ են: Տեղերից ստացվող ինֆորմացիաներում, հաշվետվություններում ու հաղորդումներում նախկինի պես գերակշռում են քանակական գնահատականները, բերվում են ուսուցման մեջ ներգրավվածների վիթխարի թվեր, թեպետ, գործնականում, որակական տեղաշարժերը, պարապմունքների բովանդակության ու մեթոդիկայի իրական բարելավման օրինակները շատ քիչ են:

Ինչպես ցույց է տալիս վերլուծությունը, Աբովյանի, Արտաշատի, Իջևանի, Մասիսի, Հրազդանի, Սևանի, Ծամշադինի, Էջմիածնի և այլ շրջանների ԱԱՀ-ի բանվորների ու կոլտնտեսականների շուրջ կեսը չի ընդգրկված ուսուցման մեջ: Շատ ձեռնարկություններում ու տնտեսություններում ունկնդիրների թիվը նախորդ տարվա համեմատությամբ մինչև անգամ կրճատվել է: Շատ դպրոցներ առհասարակ չեն գործել: Ի՞նչ խոսք կարող է լինել նման պայմաններում ուսուցման բովանդակության, մասսայականության, տնտեսագիտական գրագիտության, համընդհանուր ուսուցման մասին՝ այդ բառի լիակատար իմաստով, երբ գործի համար պատասխանատու անձինք մեծ մասամբ պարզապես չեն կատարել իրենց ուղղակի պարտականությունները: Եվ դա զարմանալի չէ. չէ որ սոցիալիստական տնտեսավարման դպրոցներում բանվորների ու կոլտնտեսականների հետ պարապմունքները հաճախ վարում են այնպիսի աշխատողներ, որոնք չունեն մասնագիտական տնտեսագիտական կրթություն: Պարապմունքներին ներգրավված է հանրապետության ագրոարդի կառավարման տարբեր օղակների ղեկավարների լոկ 6 տոկոսը:

Անցած ուսումնական տարին հստակորեն ի հայտ բերեց ԽՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի սեպտեմբերի 15-ի հայտնի որոշման կենսագործման հետ կապված դժվարություններն ու թերությունները: Իհարկե, կարելի է վկայակոչել, ինչպես դա երբեմն անում են որոշ տնտեսական ղեկավարներ, օբյեկտիվ պատճառները, մասնավորապես, հանրապետությունում աշխատանքի հայտնի էքստրեմալ պայմանները, ագրոարդյունաբերական համալիրի կառավարման անընդհատ վերակառուցումները և այլն: Այո, դրանք եղել են և կան: Միաժամանակ, ուսուցման կազմակերպման նոր սկզբունքներին ու ձևերին հարկ եղավ անցնել բառացիորեն հապճեպորեն, երբ դեռևս գործում էր ուսուցման հին համակարգը: Չկային ուսման համար երաշխավորված դասընթացների ձեռնարկներ:

Հայկական ԽՍՀ պետագրոարդի համակարգի կադրերի պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցման հանրապետական խորհրդի նիստերում որոշ տնտեսական ղեկավարներ երբեմն բավական անհոգ ու լավատեսորեն զեկուցում են, որ իրենց մոտ ուսուցման համակարգի վերակառուցումն արդեն իրականացված է: Իսկ ի՞նչ է թաքնված այդ խրոխտ բառերի հետևում: Պարզվում է, որ ամբողջ «վերակառուցումը» հաճախ հանգել է ուսուցման ձևերի ու ղեկավար մարմինների վերանվանումների: Դրանցից այն կողմ գործը չի ընթացել:

Կադրերի տնտեսագիտական պատրաստության վերակառուցումն արգելակող լուրջ թերություններ են բացահայտվել նաև Հայկական ԽՍՀ պետագրոարդի կենտրոնական ապարատի ստորաբաժանումների գործունեության մեջ: Անթույլատրելի է, երբ այստեղ, ինչպես և ձեռնարկություններում ու տնտեսություններում չկա կադրերի արտադրատնտեսագիտական ուսուցման նյութատեխնիկական և գիտամեթոդական բազայի զարգացման նպատակային ծրագիր: Անբավարար է հրատարակվում մեթոդական գրականություն, հազար պրոպագանդիստի հաշվով ստացվում է լոկ մեկ ձեռնարկ կամ հանձնարարական: Դրությունը սրվում է նաև նրանով, որ դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը կադրերի որակավորման բարձրացման հանրապետական ճյուղային ուսումնական հաստատությունները:

Տեղերում կատարված ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ուսման նկատմամբ ունկնդիրների անբավարարվածության հիմնական պատճառը պարապմունքների ընդհանուր բնույթն է, դրանց կտրվածությունը օրվա խնդիրներից: Մարդիկ սպասում են իրենց կոնկրետ հարցերի պատասխաններին, սակայն դրանք չեն ստանում, ինչն ուղղակիորեն անդրադառնում է ձեռնարկությունների ու տնտեսությունների արտադրական գործունեության արդյունքների վրա:

Այսպես, օրինակ, խիստ անարդյունավետ է Էջմիածնի շրջանի Այգեկ, Արաքս, Ակնաշեն խորհտնտեսությունների, Մեծամոր, Գեղակերտ, Ապագա կոլտնտեսությունների, Հայկաշենի կաթնարտադրական համալիրի կադրերի պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցման խորհուրդների աշխատանքը: Դրա հետևանքով տնտեսական



ցուցանիշները շարունակում են մնալ ցածր, գյուղատնտեսական մթերքներն արտադրվում են բարձր ինքնարժեքով, թույլ է իրականացվում խնայողության ռեժիմը, դանդաղ է արմատավորվում բրիգադային և վարձակալական կապալը: Այդ և ուրիշ տնտեսություններում չկա ուսուցման ոչ միայն ժամանակակից, այլև տարրական նյութատեխնիկական ու գիտամեթոդական բազա: Իրենց զգալ են տալիս պարապմունքների անցկացման հնացած ոճն ու մեթոդները, չի խթանվում ունկնդիրների ինքնուրույն աշխատանքը:

Քիչ չեն այն կոլեկտիվները, որտեղ միակողմանի են մեկնաբանում տնտեսավարման նոր պայմանները, իրենց տրված իրավունքները: Ուժեղացել են խմբային էգոիզմի դրսևորումները, գների անարդարացի բարձրացման հաշվին տնտեսական խթանման իրենց ֆոնդերը համալրելու ձգտումը: Խախտվում է տնտեսագիտորեն հիմնավորված համաչափակցությունը միջին աշխատավարձի աճի ու աշխատանքի արտադրողականության բարձրացման միջև:

Չի կարելի չասել համընդհանուր ուսուցման մեկ այլ կողմի մասին ևս, որը, մեր կարծիքով, սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն ունի: Մենք շատ ենք խոսում ձեռնարկություններում, տնտեսություններում ունկնդիրների առաջարկությունների վերլուծության և արմատավորման մտածված համակարգ ստեղծելու անհրաժեշտության մասին: Բայց այն կոլեկտիվները, ուր համակարգը իրականում գործում է ու տալիս արդյունք, այնքան էլ շատ չեն: Դա մեծ վնաս է հասցնում դաստիարակչական աշխատանքին, ունկնդիրների մեջ առաջացնում հոռետեսություն, անտարբերություն: Լուրջ կշտամբանքներ պետք է ուղղել տնտեսական ղեկավարներին, որոնք մարդկանց նախաձեռնությունների նկատմամբ ցուցաբերած իրենց անտարբերությամբ խափանում են տնտեսագիտական ուսուցման համակարգի վերակառուցման գործը:

Դեպի նոր մոտեցումներ չի կողմնորոշում և ճյուղային մամուլը: Այն գործնականում մի կողմ է քաշվել արտադրատնտեսագիտական ուսուցման կարիքներից, թեպետ էլ ում, եթե ոչ նրան, հարկ է հոգալ ճյուղի աշխատողներին նոր տնտեսագիտական մեխանիզմի, պարապմունքների կազմակերպման առաջավոր փորձի վերաբերյալ մեթոդական նյութերով ապահովելու մասին: Հայկական ԽՍՀ պետագրոարդի տպագիր օրգաններում՝ «Ագրոարդ. գիտություն և արտադրություն» ամսագրում ու «Ագրոարդյունաբերության աշխատող» թերթում հրապարակված հոդվածների վերլուծությունը ցույց է տալիս, որ ընթերցողին շատ հաճախ հրամցվում են ճյուղային էկոնոմիկայի ընդհանուր պրոբլեմների կամ նեղ մասնագիտական գիտական հարցերի վերաբերյալ նյութեր և այն էլ՝ մեծ ուշացումներով: Դժվար է հասկանալ պետագրոարդի շահագրգռված ստորաբաժանումների և ամենից առաջ նրա տպագիր օրգանների նմանօրինակ դիրքը:

Պետագրոարդի համակարգի կադրերի համընդհանուր տնտեսագիտական ուսուցման գիտամեթոդական ղեկավարությունն իրականացնում է ագրոարդյունաբերական համալիրի կառավարման հանրապետական բարձրագույն դպրոցի տնտեսագիտական կրթության լաբորատորիան (նախկինում՝ Հայկական ԽՍՀ պետագրոարդի համակարգի կադրերի արտադրատնտեսագիտական ուսուցման հանրապետական մեթոդական կաբինետը): Գիտամեթոդական կենտրոնը պարտավորություն ունի կադրերի մասսայական արտադրատնտեսագիտական ուսուցման համակարգի համար հաճախակի ու արագ պատրաստել և տպագրության հանձնել տեսական ու մեթոդական նյութեր՝ ըստ դասընթացների թեմաների: Դրանք պետք է ժամանակին առաքվեն բոլոր ենթակա ձեռնարկություններին (միավորումներին), տնտեսություններին, կազմակերպություններին: Նյութերի պատրաստման գործին ներգրավվում են գյուղատնտեսական բուհերի, որակավորման բարձրացման ուսումնական հաստատությունների, պետագրոարդի համակարգի գիտահետազոտական ինստիտուտների, կենտրոնական ապարատի բարձր որակավորում ունեցող մասնագետները:

Մանրազնին վերլուծելով համակարգի կադրերի տնտեսագիտական ուսուցման վերակառուցման ընթացքը, ձեռնարկություններին, տնտեսություններին ու կազմակերպություններին ուղարկվել են պրոֆեսիոնալ-տնտեսագիտական ուսուցումը կազմակերպելու վերաբերյալ նոր փաստաթղթեր, որոնք կարող են հիմք ծառայել ընթացիկ տարում ուսուցման ներգործունությունը որակապես բարձրացնելու միջոցառումների մշակման համար:

Այդ փուլի գլխավոր խնդիրն այն է, որ, հիմնականում ավարտելով կազմակերպական վերակառուցումը ագրոարդյունաբերական արտադրության ճյուղերում, ձեռնարկություններում ու տնտեսություններում, շեշտը դրվի համընդհանուր ուսուցման

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ՝ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆ

**Ռ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

ԽՄԿԿ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ հիմնադրույթներով, XIX կոնֆերանսի բանաձևով պահանջվում է բոլոր հնարավորությունները օգտագործել կուսակցության մեջ և նրա բոլոր օղակներում դեմոկրատական մթնոլորտ ստեղծելու, սեփական գործունեությունը քննադատաբար վերլուծելու, աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները մշտապես կատարելագործելու համար: Հետապրիլյան և հատկապես կուսկոնֆերանսից հետո ընկած ժամանակաշրջանը այն իրողության հաստատումն է, որ վերակառուցման ամբողջ հաջողությունը պայմանավորված է կուսակցական դեմոկրատիայի հետևողական կիրառմամբ: Մեր՝ Գորիսի շրջանային կուսկազմակերպությունում կուսակցական դեմոկրատիայի սկզբունքների կիրառումն այսօր արդեն խոր արմատներ է գցել, դարձել աշխատանքի կազմակերպման հիմքն ու ելակետը:

Կուսակցական կյանքի հետևողական դեմոկրատացման մասին XIX համամիութենական կուսկոնֆերանսի դրույթների պրակտիկ իրականացման համար կարևոր փուլ էին 1988 թ. հաշվետվություններն ու ընտրությունները սկզբնական կուսկազմակերպություններում, կուսխմբերում: Կազմակերպական առումով դրանց հիմքում ընկած էին ԽՄԿԿ Կենտկոմի՝ 1988 թ. օգոստոսի 12-ից գործողության մեջ դրված «Կուսակցական ղեկավար մարմինների ընտրությունների անցկացման մասին» հրահանգը: Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում արվեցին կուսկազմակերպությունների կենսագործունեությունը դեմոկրատական հիմքերի վրա փոխադրելու, ներմիութենական աշխատանքը նորացնելու, ընտրական պրոցեսը և ընտրովի մարմինների կոլեկտիվ գործունեության պրակտիկան կատարելագործելու, մասսաների հետ տարվող գաղափարաքաղաքական, կազմակերպական աշխատանքներում դեպի նոր ձևեր ու մեթոդներ վերակողմնորոշվելու գործնական քայլեր: Այդ ամենը նպաստեց կուսկազմակերպությունների մարտունակության ուժեղացմանը, նրանց առօրյան քաղաքական բովանդակությամբ հարստացնելուն:

Կոմունիստների մեծ մասի շահագրգիռ, սկզբունքային, պահանջկոտ ելույթներում վերհանվեցին և քննարկվեցին աշխատավորական կոլեկտիվներին, շրջանին, հանրապետությանը, ամբողջությամբ վերցրած երկրին հուզող հարցերը: Բնորոշն այն է, որ բարձրացված հարցերի նկատմամբ, որոնք վերաբերում էին մեծ մասամբ հանրապետությունում ստեղծված լարված իրավիճակին, տնտեսավարման նոր եղանակների ներդրման գործում առաջացած դժվարություններին, սոցիալական բնագավառում կուտակված պրոբլեմներին, կուսկազմակերպությունները, կոմունիստների մեծագույն մասը հանդես բերեցին սկզբունքային դիրքորոշում: Այդ ժողովներում 2.606 կոմունիստներից ելույթ են ունեցել 1796-ը, որը վկայում է նրանց ակտիվության բարձրացման մասին: Կուսակցական, անաչառ խոսակցության արդյունք պետք է համարել այն փաստը, որ երեք կուսխմբի կազմակերպիչների, մեկ արտադրամասային կազմակերպության քարտուղարի, երկու սկզբնական կազմակերպության (խոտի պետական տնտեսություն, հատուկ գիշերօթիկ դպրոց) բյուրոների գործունեությունը կոմունիստները գնահատեցին անբավարար:

Կուսակցության մեջ աճող դեմոկրատիզմն իր ողջ ուժով դրսևորվեց կուսխմբերի կազմակերպիչների, արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների, մյուս ղեկավար մարմինների ընտրությունների ժամանակ: Եթե նախկինում քվեարկության համար թեկնածություններ առաջադրելիս հիմնականում հաշվի էր առնվում քարտուղարի, ձեռնարկության ղեկավարի կամ շրջկոմի ներկայացուցչի կարծիքը, ապա այս անգամ նրանց առաջադրեցին հենց իրենք՝ ժողովականները: Շատ հաճախ առաջարկվում էին մեկից ավելի թեկնածուներ: Այսպես, 59 սկզբնական կուսկազմակերպությունում քարտուղարներ են ընտրվել երկու և ավելի թեկնածուներից: Նման ձևով են ընտրվել նաև արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների 48, կուսխմբերի կազմակերպիչների 50 տոկոսը, կուսբյուրոների անդամների կեսից ավելին: Ամենուրեք ապահովվել են թեկնածուների լայն քննարկման, գաղտնի քվեարկության, մրցողականության անհրաժեշտ պայմաններ: Այդ ամենը հնարավորություն է ընձեռել բյուրոների անդամներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ ընտրել հիմնականում նրանց, ովքեր ունեն կազմակերպչական ունակություններ, աշխատավորների շրջանում վայելում են հեղինակություն, վերակառուցման գաղափարների հաղթանակի համար պայքարում են ոչ թե խոսքով, այլ գործով:

Ամփոփելով հաշվետու-ընտրական կամպանիայի արդյունքները՝ կուսշրջկոմի բյուրոն արձանագրեց, որ հիմնականում կատարվել է այդ մասին XIX համամիութենական կուսկոնֆերանսի առաջադրած պահանջը. «Հարկ է, որ բոլոր մակարդակներով ընտրություններն անցնեն դեմոկրատական մթնոլորտում, որն ապահովում է թեկնածությունների լայն քննարկումը, մրցողականությունը և որպես արդյունք՝ գործին իսկապես նվիրված, տաղանդավոր, արժանավոր մարդկանց ընտրվելը, որոնք անուրանալի հեղինակություն են վայելում և ընդունակ են վարել վերակառուցման քաղաքականությունը»:

Կուսակցական դեմոկրատիայի հետագա խորացման ու կիրառման շրջանակների ընդլայնմանը նպաստեցին ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների նախապատրաստումն ու անցկացումը, քանի որ այն տեղի ունեցավ աշխատավորների աճած քաղաքական ակտիվության պայմաններում: Ընտրություններն ընդհանուր առմամբ լուրջ քննություն էին կուսշրջկոմի, սկզբնական կազմակերպությունների համար այն իմաստով, որ պարզ դարձավ, թե ինչքանով ենք պատրաստ նոր պայմաններում մասնակցելու քաղաքական պայքարին: Շրջանում ընտրելու իրավունք ունեցող 23 հազար 849 քաղաքացիներից ընտրություններին մասնակցեց 20.654-ը կամ 86,6 տոկոսը: Նրանց 98,5 և 96,8 տոկոսը ձայն տվեցին դեպուտատության թեկնածուների օգտին:

Համամիտ չեմ այն կարծիքներին, թե ընտրությունները բնութագրող բարձր տոկոսները համարվում են լճացման տարիներից եկող անտարբերության շարունակությունը: Կարծում եմ, որ այդ մտայնությունը չեն կիսի բոլոր նրանք, ովքեր նախընտրական պայքարի թեժ օրերին եղել են մասսաների մեջ, անմիջականորեն ականատես և մասնակից եղել ընտրողների շահագրգիռ, պահանջկոտ ելույթներին և հարցադրումներին: Այնպես որ, ընտրությունների արդյունքներն ուղիղ համեմատական են կուսկազմակերպությունների ծավալած քաղաքական, կազմակերպական աշխատանքին:

ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ընթացքում կուսկազմակերպությունները մեծ աշխատանք ծավալեցին ոչ միայն ստեղծված պայմաններում ժողովրդական զանգվածներին մոբիլիզացնելու ԽՄԿԿ Կենտկոմի նախընտրական կոչը մասսաներին հասցնելու, այլև ԽՄԿԿ Կենտկոմի այս տարվա հունվարյան պլենումի որոշումները կատարելու համար:

Հրապարակայնության, ընտրողների կարծիքների համադրման պայմաններում ընթացան նաև նախընտրական մյուս միջոցառումները շրջանում: Դեմոկրատական հիմունքներով ամենուրեք կազմակերպվեցին տեղամասային, օկրուգային ընտրական հանձնաժողովները: Ընտրություններին նախապատրաստվելու առաջին իսկ փուլը ցույց տվեց, որ դեմոկրատիզմը միայն խոսքով ոչինչ չի տա, եթե այն չուղեկցվի շրջանում հասունացած սոցիալական հարցերի պրակտիկ լուծմամբ: Այդ էր պատճառը, որ փետրվարի 18-ին տեղի ունեցած կուսակցական-տնտեսական ակտիվի շրջանային ժողովում առաջադրվեց կոնկրետ խնդիր. լուծել քաղաքում ու գյուղերում

---

*ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՌՈԲԵՐՏ ԱՐՄԵՆԱԿԻ— ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար։*

վաղուց հասունացած սոցիալական այնպիսի հարցեր, ինչպիսիք են ջրամատակարարումը, ջերմամատակարարումը, գազիֆիկացումը, բնակավայրերի, փողոցների բարեկարգումը... Հիմա, երբ հետևում են մնացել այդ բուռն օրերը, մենք նորից ու նորից ենք արժեքավորում կուսկազմակերպությունների կատարած աշխատանքը, նաև դասեր քաղում, եզրակացություններ անում, որոնք հաշվի կառնվեն միութենական հանրապետությունների Գերագույն խորհուրդների և տեղական խորհուրդների առաջիկայում կայանալիք ընտրությունների ժամանակ:

Կուսակցական դեմոկրատիան ընդհանուր, վերացական հասկացողություն չէ: Այն կոնկրետ է, առարկայական և պայմանավորված է ամեն մի կոմունիստի ակտիվ դիրքորոշմամբ ու գործունեությամբ: Այն արտահայտվում է առօրեական, հեռանկարային հարցերում ունեցած մոտեցմամբ, դեմոկրատական լծակներն օգտագործելու նրա կարողությամբ: Անցած յոթ-ութ ամսում մեր շրջանի կոմունիստները արել են ավելի քան հինգ հարյուր դիտողություն, առաջարկություն: Դրանք ուղղված են եղել ոչ միայն տեղական, այլև շրջանային և հանրապետական մարմիններին: Շրջկոմի փոստը, կուսկազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում նրա բյուրոյի անդամների, ապարատի պատասխանատու աշխատողների հետ հանդիպումները անդրադառնում են քննադատական դիտողությունների ցանկը, պահանջում նախկինում բարձրացված հարցերի պատասխանները, կատարման արդյունքները:

Քննադատական դիտողությունների և առաջարկությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ անհամեմատ պակասել, հետին պլան են մղվել զուտ տեղական, նեղ, անձնական, փոքր կարևորության հարցերը: Կոմունիստներին ավելի շատ մտահոգում են կուսակցության քաղաքականության իրականացման, վերակառուցման մտաապահովման մասշտաբային խնդիրները: Առավել հրատապ հարցերը դրվում են շրջկոմի, նրա բաժինների, հանձնաժողովների աշխատանքային պլանների հիմքում: Առանձին դեպքերում դրանց մի մասը հրապարակվում է շրջանային թերթում: Այդպես վարվեցինք, օրինակ, հաշվետու-ընտրական ժողովներում արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների հետ: Սկսել ենք հրապարակել նաև շրջկոմում ստացված համանման բովանդակությամբ նամակները:

Դիտողությունների և առաջարկությունների գործում հրապարակայնության ապահովումը ինքնանպատակ չէ: Այն բարձրացնում է մարդկանց և, առաջին հերթին, ղեկավարների պատասխանատվությունը: Միտքս պարզեմ կոնկրետ փաստերով: Մի քանի տարի շարունակ Վաղատուր, Խոզնավար, Խնածախ գյուղերի կուսկազմակերպություններում և կոլեկտիվներում քննադատում էին շրջկոմին, շրջխորհրդին այն բանի համար, որ բնակչությունը զրկված է հանրապետական ու միութենական հեռուստահաղորդումները դիտելու հնարավորությունից: Յուրաքանչյուր անգամ այդ բնակավայրեր այցելելիս առաջին հարցը դա էր լինում: Եվ, ի վերջո, Խնածախ գյուղի մոտ կառուցվում է ընդունող և վերահաղորդող հեռուստատեսային աշտարակ:

Մեկ ուրիշ օրինակ: Վերջին տասնամյակում շրջանում արմատական քայլեր արեցինք ծայրամասային ու փոքրաթիվ մի քանի գյուղերից արտահոսքը դադարեցնելու համար: Հասանք այն բանին, որ արտահոսքը ոչ միայն դադարեց, այլև փոխարինվեց ներհոսքով: Բազմաթիվ ընտանիքներ Միության և հանրապետության տարբեր վայրերից վերադառնում են իրենց ապուպապերի ծննդավայրը: Այդպիսի ներհոսքի արդյունքը եղավ Խնձորեսկի տարածքում նոր գյուղի հիմնադրումը: Բայց ահա այս պրոցեսից ինչ-ինչ պատճառներով դուրս էր մնացել շրջանի հեռավոր և հինավուրց գյուղերից մեկը՝ Մալդաշը: Չէի ասի, որ այդ առթիվ առաջարկություններ քիչ են եղել: Սակայն ոչ մի անգամ այդ հարցը չէր լուծվում: Այսօր, հուրախություն բոլորիս, գործնական քայլեր են արվում գյուղը քայքայումից փրկելու համար: Իսկ դրա կարևոր նախապայմաններից մեկը ճանապարհի կառուցումն է, սոցիալական մյուս հարցերի լուծումը, որոնցով ներկայումս զբաղվում ենք: Միայն գյուղ տանող ճանապարհի վրա երկու տարում կկատարվի մեկ միլիոն 300 հազար ռուբլու շինարարական աշխատանք:

Միաժամանակ, ինչպես նկատեցինք, բոլոր դեպքերում չէ, որ բարձրացված հարցերը, ինչքան էլ դրանք հիմնավոր և հասունացած լինեն, արժանի լուծում են ստանում: Մի դեպքում դա հետևանք է շրջանային կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների առանձին աշխատողների, մի այլ դեպքում՝ հանրապետական համապատասխան գերատեսչությունների անտարբերության և ոչ օպերատիվ գործունեության: Որերորդ անգամ արդեն տարբեր ամբիոններից խոսում ենք քաղաքի և գյուղական բնակավայրերի գազիֆիկացման դանդաղ, ուղղակի անբավարար ընթացքի մասին: Տասը տարում գազիֆիկացվել է քաղաքի բնակֆոնդի ընդամենը մեկ երրորդ մասը, իսկ գյուղերից սկսված է միայն Խնձորեսկի գազիֆիկացումը: «Հայգլխգազ» արտադրամիավորման ղեկավարների նման վերաբերմունքը ոչ մի ընդհանուր բան չունի գյուղի սոցիալական վերափոխման մասին ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան (1989 թ.) պլենումի որոշումների կատարման հետ և բոլորովին էլ չի վկայում աշխատավորների բարձրացրած հարցերը ժամանակին լուծելու մասին:

Կամ, անցյալ տարի առաջին անգամ շրջանի շինկազմակերպությունները չապահովեցին պլանային առաջադրանքների կատարումը: Թերացման մեջ ընդունելով մեր բաժինը՝ անհրաժեշտ է նշել նաև այն փաստը, որ հանրապետական մասշտաբով շատ-շատ հարցեր չլուծվեցին, ընդհակառակը՝ ամսեամիս ավելի վատացավ շինկազմակերպությունների նյութատեխնիկական մատակարարումը: Բավական է ասել, որ միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ագրոարդշինի երեք շինկազմակերպություններ ստացել են տուֆ քարի 64,5 տոկոսը, երկաթբետոնե կառուցվածքների՝ 49,4, ամրանների՝ 70, ցեմենտի՝ 83 տոկոսը: Այս և նման ուրիշ փաստերը վկայում են, որ դեմոկրատիայի, բացախոսության, հրապարակայնության պայմաններում կատարված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները ավելի լուրջ ուշադրության կարիք ունեն կառավարման բոլոր օղակներում: Հակառակ դեպքում դեմոկրատական պրոցեսները սպասված արդյունքները չեն տա:

Կուսակցության, ամբողջ հասարակության վերակառուցման հաջողությունը մեծ չափով պայմանավորված է ԽՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների կոմունիստական համոզվածությամբ, կուսակցության քաղաքականության իրականացման նկատմամբ ունեցած ճիշտ դիրքորոշմամբ, բարոյական վեհ հատկանիշներով, սոցիալիստական ինտերնացիոնալիզմով ու խորհրդային հայրենասիրությամբ: Դա նշանակում է, որ ավելի մեծ կարևորություն է ձեռք բերում ԽՄԿԿ շարքերի համալրումը: Այս հարցը, պետք է ասել, միշտ էլ գտնվել է առաջին պլանում: Բայց միշտ չէ, որ հաջողվել է այդ գործում խուսափել մակերեսային, մեխանիկական մոտեցումից: Վերջին երեք տարում կուսակցական կանոնադրության պահանջները չկատարելու, կոմունիստին անվայել վարքագիծ դրսևորելու համար 11 հոգի հեռացվել են ԽՄԿԿ շարքերից: Ուրեմն կոմունիստների հետ տարվող աշխատանքը և հատկապես ԽՄԿԿ շարքերի համալրման գործը խորապես վերափոխման, դեմոկրատացման կարիք ունեն: Գիտակցելով դրա անհրաժեշտությունը՝ մենք կիսում ենք այս առթիվ կուսակցության XXVII համագումարում արտահայտած մտահոգությունը: «Ամբողջությամբ կուսակցության կազմի ձևավորումը, նրա շարքերի աճը իրականացվում են կանոնադրական նորմերին համապատասխան: Բայց, ինչպես ամեն մի կենդանի գործ, կուսակցության մեջ ընդունելությունը կարիք ունի հետագա կատարելագործման» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 115): ԽՄԿԿ համագումարի առաջադրած դրույթը նոր զարգացում ստացավ Կենտկոմի 1987 թ. «Կուսակցության մեջ ընդունելության և կուսակցության շարքերի ամրապնդման ասպարեզում Տաշքենդի մարզային կուսակցական կազմակերպության աշխատանքի լուրջ թերությունների մասին» որոշման մեջ: Ղեկավարվելով համագումարի պահանջներով, ինչպես նաև Կենտկոմի նշված որոշմամբ՝ անցած երկու տարում կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները կարողացել են որոշակի չափով հրաժարվել տասնամյակներ շարունակ այդ գործում արմատավորված մեխանիկական մոտեցումից և կիրառել հրապարակայնություն ու դեմոկրատական մեթոդները: Նախ հրաժարվել ենք ԽՄԿԿ շարքերի ընդունելության գործում հաստատված «կարգադրագրերից», մի բան, որ տարիներ շարունակ տարածում էր գտել կուսակցության մեջ: Մեծ նշանակություն տալով բանվոր դասակարգի ներկայացուցիչներից կուսակցության շարքերի համալրմանը՝ շրջկոմը, սկզբնական կազմակերպությունները ԽՄԿԿ շարքերն են ներգրավում նաև կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության առաջավոր ներկայացուցիչներին: Այս հարցերում գործնականում բարձրացվում է սկզբնական կուսկազմակերպությունների դերը: Գաղտնիք չէ, որ նախկինում, ընկնելով տոկոսամոլության հետևից, սկզբնական կուսկազմակերպությունները հաճախ չէին կարողանում արտահայտել իրենց դիրքորոշումն այս գործում:

ԽՄԿԿ շարքերն ընդունելու համար ցանկություն հայտնողներից յուրաքանչյուրի նկատմամբ անհատական մոտեցումը դարձել է գործունեության նորմ: Առանձնապես կարևորություն է տրվում նրանց գաղափարաքաղաքական, բարոյական հատկանիշների խոր և բազմակողմանի ուսումնասիրմանը: Հենց այս նպատակով էլ սկզբնական կազմակերպություններում պրակտիկա է դարձել անի լավ, նախապատ-

յաստված բազայի ստեղծումը, ընդունելության մասին դիմումների նախնական քննարկումը կուսխմբերում, արտադրամասային կազմակերպություններում: Ավելին, կուսակցության շարքերը նոր մարդ ընդունելը դադարել է միայն կոմունիստների գործը լինելուց: Այն դարձել է ողջ կոլեկտիվի հոգածության առարկան: Պատահական չէ, որ ԽՄԿԿ շարքերի ընդունելության մասին նախապես տեղյակ է պահվում աշխատավորական կոլեկտիվին: Հարցը քննարկվում է դռնբաց ժողովներում, որտեղ ելույթ են ունենում նաև անկուսակցականներ, կոմունիստների մեծ մասը, փոքրաթիվ կազմակերպություններում՝ բոլորը:

Վերլուծելով ընդունելության հետ առնչվող նոր պրոցեսները՝ կարելի է ասել, որ դեմոկրատիան, տարակարծությունը ամբողջապես արմատավորվել են այդ գործում: Եվ դա ուրախալի է: Չէ՞ որ արդյունքում ստանում ենք առավել արժանի, վերակառուցման գործին առավել նվիրված համալրում: Հիմքեր կան ասելու, որ 1988 թվականին ԽՄԿԿ անդամության թեկնածու ընդունված 88 և ԽՄԿԿ անդամ փոխադրված 95 ընկերները հիմնականում արդարացնում են կուսկազմակերպությունների սպասելիքները:

Կուսակցական դեմոկրատիայի զարգացման առանցքային ուղղություններից մեկը XIX համամիութենական կուսկոնֆերանսը համարեց հարցերի քննարկման և որոշումների ընդունման ժամանակ կոլեգիալության ապահովումը, կոմունիստների կարծիքների համադրումը: Կուսակցության քաղաքականությունը մշակելիս յուրաքանչյուր կոմունիստի դիրքորոշման կարևորությունը ժամանակին շեշտել է Վ. Ի. Լենինը, նշելով, թե չի կարելի մոռանալ, որ կուսակցության ամեն մի անդամ պատասխանատու է կուսակցության համար:

Լենինյան գաղափարը ընկած է նախ և առաջ շրջկոմի բյուրոյի գործունեության
հիմքում: Կանոնավոր են դարձել բյուրոյի հաշվետվությունները ու հաղորդումները
շրջկոմի պլենումներում, սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորա-
կան կոլեկտիվներում: 1987 թ. նոյեմբերի 27-ին շրջկոմի պլենումում լսվել է «Վե-
րակառուցման ղեկավարման ասպարեզում ՀԿԿ Գորիսի շրջկոմի բյուրոյի գործու-
նեության մասին» հարցը: 1988 թ. հուլիսին պատրաստվել և շրջկոմի անդամների
միջոցով կոմունիստներին է ներկայացվել բյուրոյի գործունեության մասին տեղեկան-
քը: Կոմունիստների, բոլոր աշխատավորների հետ հաղորդակցվելը, խորհրդակցելը
անհրաժեշտություն և ներքին պահանջմունք են դարձել առանձնապես շրջանային
կուսկոնֆերանսը և շրջկոմի պլենումները նախապատրաստելիս: Կոնֆերանսի նա-
խօրերին հեռախոսային ուղիղ կապ էր ստեղծվել շրջկոմի, շրջանային թերթի խըմ-
բագրության հետ: Թերթի էջերում բացվել էր «Շրջանային կուսկազմակերպության
կոնֆերանսին ընդառաջ» խորագիրը: Կոմունիստները, անկուսակցականները իրենց
առաջարկությունները, դիտողություններն էին հայտնում, պատասխան պահանջում
բնակչությանը հուզող հարցերի վերաբերյալ: Կոնֆերանսին ներկայացվելիք զեկուց-
ման տեքստը առաջին անգամ հրապարակվեց «Զանգեզուր» թերթում: Փաստորեն
շրջկոմի հաշվետվության քննարկումը սկսվել էր մինչև կոնֆերանսը, որը, բնակա-
նաբար, դրականորեն անդրադարձավ դրա ընդհանուր արդյունքների վրա: Հետա-
գայում հրապարակվեցին նաև շրջկոմի հաշվետվության, ելույթների, ընդունված ո-
րոշման տեքստերը: Հրապարակայնության և դեմոկրատիայի այս ձևերը լայն ընդու-
նելության արժանացան: Այդ է պատճառը, որ վերջերս, երբ շրջկոմի պլենումին նա-
խապատրաստվելիս, որտեղ քննարկվեց «ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1988 թ.)
պլենումի, շրջանային կուսկազմակերպության 36-րդ կոնֆերանսի որոշումների կա-
տարման ընթացքի մասին» հարցը, նախապատվությունը տվեցինք հենց այդ ձևե-
րին: Ի դեպ, նման հարցի քննարկումը պատահական չէինք ընտրել: «Զանգեզուր»
արտադրամիավորման, Խնձորեսկի Վ. Ի. Լենինի անվան պետտնտեսության, № 2
շինվարչության և մի քանի ուրիշ սկզբնական կուսկազմակերպություններում իրենք՝
կոմունիստները, պահանջեցին անդրադառնալ այդ որոշումների կատարման ըն-
թացքին: Պլենումը մեկ անգամ ևս հավաստեց, որ կուսակցական դեմոկրատիան,
հրապարակայնությունը այն հզոր միջոցներն են, որոնք, շրջանային օղակում հաս-
նելով, ինչպես, ցավոք, պատահում էր նախկինում: Փաստորեն այսօր դժվար է են-
թադրել կուսկոնֆերանսի, պլենումի, սկզբնական կազմակերպության ժողովի ար-
դյունավետությունը, եթե այն չի արձագանքում աշխատավոր զանգվածներին հուզող
հարցերին:

Վերջին երեք-չորս տասնամյակում, օրինակ, քայքայվել և վերացման, ոչնչաց-



ման եզրին էին կանգնել շրջանի տնտեսությունների 488 հեկտար այգիներ, դարձել ոչ շահութաբեր: Մինչդեռ մենք, առավել շատ ավագ սերնդի ներկայացուցիչներս, հիշում ենք, թե շրջանի համար ժամանակին ինչպիսի եկամտաբեր ճյուղ է եղել այգեգործությունը: Այգիների հետագա ճակատագրի շուրջ շրջանում աշխույժ խոսակցություն ծավալվեց ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան (1989 թ.) պլենումի նախապատրաստման ընթացքում: Տարբեր կարծիքներ, տեսակետներ եղան: Դրանց հիման վրա որոշվեց ցածրադիր գոտու տնտեսությունների նախկին այգիների մշակությունը վարձակալական եղանակով հանձնել բնակչությանը: Այդ նախաձեռնությունը արժանացավ կուսշրջկոմի բյուրոյի և վերջին պլենումի հավանությանը: Շինուհայրի, Խոտի, Քարահունջի, Հալիձորի և այլ տնտեսություններում արդեն ներդրվել է այդ եղանակը: Ահա ինչ է գրում այդ մասին կուսակցության և աշխատանքի վետերան, Հայրենական մեծ պատերազմի մասնակից Իշխան Մարդյանը ՀԿԿ շրջկոմ ուղարկած նամակում. «Վաթսուն տարի հետո իմ ծննդավայր Շինուհայր գյուղի այգիներում շրջագայելիս տեսա, թե ինչպես են նախկին այգետերերի թոռներն ու ծոռները մշակում իրենց երբեմնի այգիները: Այնտեղ եռուզեռ է, մարդիկ նոր առուներ են բացում, քանդված պատերը նորոգում, ջրերի ակունքները բացում, տնկում նոր ծառեր: Եթե այդպես շարունակվի, ապա շատ շուտով կվերականգնվի մեր այգիների նախկին փառքը և հնարավոր կդառնա պարենային ծրագրի կատարումը»:

Մեկ ուրիշ օրինակ: ԽՄԿԿ XXVII համագումարից հետո շրջանում մշակվել էր բնակարանային պրոբլեմի լուծման ծրագիր: Սակայն անցյալ տարվա իրադարձությունների և մասնավորապես Ադրբեջանից հայ բնակչության ներգաղթի, ինչպես նաև աղետի գոտում անօթևան մնացած մեր հայրենակիցների ներհոսքի պատճառով անհրաժեշտություն առաջացավ վերանայել բնակարանային ծրագիրը: Քաղաքում և գյուղերում բնակարանի համար հերթագրված 1.130 ընտանիքներին ավելացավ ևս 500 անօթևան ընտանիք: Բնակարանային հարցը բուռն քննարկումների տեղիք տվեց աշխատավորական կոլեկտիվներում, կուսկազմակերպություններում, շրջանային թերթի էջերում, տեղական խորհուրդներում: Միայն այդ քննարկումների հիման վրա վերջնականապես ճշտվեցին բնակարանային ծրագրի կատարման ուղիները: Ընթացիկ տարում նախատեսված է բնակշինարարության ծավալը հասցնել 16.200 քմ-ի, որը աննախադեպ բնագիծ է մեր շրջանում այդ բնագավառում: Լայն թափ կառնի նաև անհատական բնակշինարարությունը: Միայն անցած ութ ամսում անհատական բնակշինարարության համար հողակտոր է հատկացվել 164 ընտանիքի: Քաղաքում և գյուղերում առաջիկայում կբաժանվի ևս 115 հողակտոր:

Դեմոկրատական հիմունքներով, հրապարակայնորեն նախապատրաստված և ընդունված որոշումներն իրենց հետ բերում են դրանց կատարման համար կոմունիստների, աշխատավորների, երիտասարդության շահագրգռությունն ու նվիրվածությունը: Դրանք էլ իրենց հերթին դառնում են ընդունած որոշումների կենսագործման հուսալի երաշխիք:

Կուսակցական կյանքի դեմոկրատացման պրոցեսում վճռորոշ տեղ է պատկանում կուսակցության շրջկոմին, սկզբնական կուսկազմակերպություններին: Թե ինչքանով նրանք կկարողանան կատարել այդ առաքելությունը, պայմանավորված է իրենց իսկ կյանքի բազմակողմանի դեմոկրատացումով: Խոսքն առաջին հերթին սկզբնական կուսկազմակերպությունների ինքնուրույնության ընդլայնման մասին է, որն այսօր առանձնահատուկ ուշադրության կարիք ունի: Եթե ոչ հեռու անցյալում շրջկոմը սկզբնական կուսկազմակերպություններին պարտադրում էր տարեկան միջին հաշվով քննարկել 10—13 հարց, ապա այժմ վերջ է տրվել նման պրակտիկային:

Համալիր միջոցառումներ ենք իրականացնում նաև կոմունիստների մի մասի պասիվությունը, անտարբերությունը վերացնելու համար, առանց որի նույնպես հնարավոր չէ կուսակցական կյանքի դեմոկրատացում: Մասնավորապես սովորական է դարձել կանոնադրական, հասարակական պարտականությունների կատարման մասին կոմունիստների հաշվետվությունները լսելու պրակտիկան: Ավելի են ընդլայնվում պրոբլեմների ուսումնասիրմանը, դրանց քննարկմանը կոմունիստների անմիջական մասնակցության շրջանակները:

Արդեն առիթ ունեցանք նշելու, թե ինչպես են ընթացել ընտրական պրոցեսը, ղեկավար մարմինների կազմավորումը ներքին օղակներում: Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստներն առաջարկություններ արեցին շրջկոմի կազմում առա-

ջադրվող թեկնածուների վերաբերյալ. 108 կոմունիստ ստացավ այդպիսի երաշխա-
վորություն: Ծրջանային կուսկազմակերպության 36-րդ կոնֆերանսը ղեկավար մար-
մինների կազմավորման ժամանակ ոչ միայն հաշվի առավ այդ առաջարկություն-
ները, այլև դրանք հիմք ընդունեց ընտրություններն անցկացնելու համար: Առաջա-
դրված թեկնածուների կեսից ավելին փակ (գաղտնի) քվեարկությամբ ընտրվեցին
շրջկոմի անդամներ, անդամության թեկնածուներ, վերստուգիչ հանձնաժողովի կազ-
մում: Նույն ձևով են կազմավորվել շրջկոմի հանձնաժողովները:

Սկզբունքային նոր մոտեցում է ցուցաբերվում շրջկոմի ապարատը կազմավորե-
լիս և համալրելիս: Ապարատում աշխատանքի են ընդունվել մի քանի հրահան-
գիչներ՝ ունենալով կոլեկտիվների, սկզբնական կուսկազմակերպությունների երաշ-
խավորությունը: Այս բոլոր միջոցառումները հիմք են դարձել շրջկոմի գործունեու-
թյան մեջ դեմոկրատական մթնոլորտի ամրապնդման համար, մի հանգամանք, որը
որոշակի չափով օգնում է կոմիտեին՝ կատարելու իր անմիջական քաղաքական,
կազմակերպչական ու դաստիարակչական ֆունկցիաները:

Քանի որ խոսք եղավ կադրերի ընտրության գործում դեմոկրատիզմը խորաց-
նելու մասին, ուստի ավելորդ չէր լինի մեկ անգամ ևս հիշել այդ մասին XIX հա-
մամիութենական կուսկոնֆերանսի դրույթը, թե դեմոկրատացման պայմաններում
հարկ կա լրջորեն նորացնել կուսակցության կադրային քաղաքականությունը և դրա
հետ համեմատել մեր կատարածը: Չէ՞ որ այսօր իրեն սպառում է ձևական անվա-
նացանկային մոտեցումը կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ:
Կադրերի հետ տարվող աշխատանքում հիմնական մեթոդ են դարձել նրանց պատ-
րաստումն ու վերապատրաստումը, դաստիարակումը դեմոկրատական նորմերին
համապատասխան՝ հաշվի առնելով ղեկավար պոստերում մի քանի թեկնածուների
հնարավոր առաջադրումը:

Յուրաքանչյուր տարի շրջկոմի բյուրոն վերանայում է հաստիքների անվանա-
ցանկը, կատարում համապատասխան փոփոխություններ: Եթե 4—5 տարի առաջ
այդ ցանկի մեջ մտնում էր 1056 հաստիք, ապա այժմ այն իջեցվել է 592-ի, ընդ ո-
րում, նրանցից 102-ը սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ են:
Ներկայումս առաջարկություններ են պատրաստվում շրջկոմի բյուրոյի համար՝ այդ
ցանկը ավելի կրճատելու, կադրային հարցերի վերջնական լուծումը ընտրությունների
արդյունքներով որոշելու համար: Երբ 1986 թ. Խոզնավարի կոլտնտեսությունում բրի-
գադավարի ընտրությունը թողնվեց կոլեկտիվի անդամների հայեցողությանը, ապա
այն միանշանակ չընդունվեց, քանի որ հանրապետությունում էլ այդ ժամանակ նման
քիչ օրինակներ ունեինք: Դրանից հետո ղեկավարների ընտրությունները աստիճա-
նաբար մուտք գործեցին բոլոր կոլեկտիվները: Միայն այս տարի ընտրությունների
հիման վրա աշխատանքի են նշանակվել շրջանային կինոցանցի, քաղաքի № 5
միջնակարգ, գիշերօթիկ դպրոցների դիրեկտորները, Քարաշենի կոլտնտեսության
նախագահը, № 919 շինվարչության գլխավոր ինժեները և ուրիշներ: Եվ ընդհանրա-
պես, վերջին տարում չեմ հիշում դեպք, երբ կոլեկտիվն ինքը ընտրած չլինի իր ղե-
կավարին: Ընտրությունների հիման վրա են նշանակվում նաև միջին օղակի ղեկա-
վարները:

Նշեմ դեմոկրատական սկզբունքով ղեկավարի ընտրության մի պերճախոս օրի-
նակ, որի արդյունքը անչափ գոհացուցիչ է: Այսպես, երկու տարի առաջ դեմոկրա-
տիայի սկզբունքով ընտրվեց Կորնիձորի կոլտնտեսության նախագահը: Անկեղծ ա-
սած մենք նախատեսել էինք նախագահի թեկնածու առաջադրել գյուղատնտեսական
բարձրագույն կրթությամբ կադրի: Կոլեկտիվը, սակայն, այլ կարծիքի էր և նախագահ
ընտրեց տնտեսության գլխավոր հաշվապահ Սմբատ Կարապետյանին: Վերջինս ա-
վարտել էր գյուղատնտեսական տեխնիկումի անասնաբուծական բաժինը, բայց հաշ-
վապահություն էր անում: Մենք սպասում էինք փորձությունների, որովհետև վստահ
չէինք, թե նա գործից գլուխ կհանի և լավ արդյունքի կհասնի: Ավելորդ չեմ համա-
րում նշել, որ տնտեսությունը շրջանի առաջավորներից էր, սակայն 1988 թ. գարնա-
նը կանգնեց ծանր կացության առջև. կարկուտը փչացրեց բանջարանոցային կուլ-
տուրաների ողջ 40 հեկտար ցանքերը, հացահատիկի և ցանովի կերաբույսերի կե-
սից ավելին: Սակայն նոր նախագահը իր ընտրողների աջակցության շնորհիվ չհու-
սալքվեց, մոբիլիզացրեց նրանց ուժերը: Հնարավոր եղավ վերականգնել աղետի են-
թարկված ցանքադաշտերի կեսից ավելին: Եվ ի՞նչ. կատարվեց համախառն բերքի



նախատեսված պլանը: Դրան մեծապես նպաստեց նաև մեկ կարևոր հանգամանք:
Նախագահն իր առաջին գործը համարեց ներդնել վարձակալական կապալը և լրիվ
տնտհաշվարկը: Ամեն ինչ հաշվի առնվեց, մտցվեց խնայողության խստագույն ռե-
ժիմ, որն էլ հիանալի արդյունք տվեց: Ահա մի քանի բնութագրական թվեր. ցանքա-
դաշտերի ամեն մի հեկտարից ստացվեց 110 ցենտներ առվույտի չոր խոտ (շրջանի
միջինը 54 ցենտներ էր), 400 ցենտներ սիլոսացու եգիպտացորեն, 728 ցենտներ կե-
րի ճակնդեղ, կուտակվեց 14.800 տոննա չոր և հյութալի կեր: Ծահեցին նաև վարձա-
կալները: Օրինակ, Արամ Կարապետյանի ղեկավարած բանջարաբուծական վար-
ձակալական օղակի աշխատողների միջին տարեկան վաստակը կազմեց 5.500 ռուբ-
լի: Կթվոր-անասնապահներ Ժորա Սահակյանինը՝ 7.536, Փառանձեմ Մանուչարյա-
նինը՝ 4.743 ռուբլի: Տնտեսությունում երկու անգամ կրճատվեց մասնագետների և մի-
ջին օղակի ղեկավարների թիվը, 1988 թ. տնտեսական տարին փակվեց 315 հազար
ռուբլու արտապլանային օգուտով:

Վերակառուցման և նորացման քաղաքականության մեջ նոր փուլ է նշանավո-
րում ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան (1989 թ.) պլենումը: Պլենումում առաջադրված
խնդիրների լուծման գործում անփոխարինելի է կուսակցական կազմակերպություն-
ների դերը: Նոր ագրարային քաղաքականության պայմաններում պետք է բացա-
հայտվի կուսակցական աշխատանքի, շրջանային կոմիտեի, սկզբնական կազմակեր-
պությունների գործունեության ոճի, մեթոդների ժամանակակից բովանդակությունը:
Իսկ դրա համար, ինչպես պլենումում նշեց Մ. Ս. Գորբաչովը, հարկավոր է գործել
լայն դեմոկրատիայի հիման վրա: Առանց այդպիսի աշխատաեղանակի անհնարին
է պատկերացնել ԽՄԿԿ-ի ավանգարդային դերը նորացման քաղաքականության մեջ:
Դրանով է պայմանավորված վերակառուցման անշրջելիությունը, մեր սոցիալիստա-
կան հայրենիքի հետագա զարգացումը:

---

# «ՍԱՌԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ» ՄԱՐՈՒՄԸ

## (ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ)

Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Մեր օրերի միջազգային կյանքն իր բացառիկ խայտաբղետությամբ ու բազմակերպությամբ հիշեցնում է նկարչի հարուստ ներկապնակ: Նրան բնորոշ են տեղի ունեցող իրադարձությունների բարձր ինտենսիվությունը և համընդհանուր բնույթը: Բոլոր հիմքերը կան հաստատելու, որ միջազգային հարաբերությունների պատմության մեջ անցյալում երբեք չեն եղել հանդիպումների, երկկողմ ու բազմակողմ բանակցությունների, պետությունների, կառավարությունների ներկայացուցիչների միջև կոնֆերանսների, այդ թվում բարձր մակարդակի հանդիպումների այսպիսի հագեցվածություն: Նշանակալի է նաև բանակցությունների առարկա հանդիսացող հարցերի խիստ լայն դիապազոնը: Եթե առաջներում դիվանագիտական հանդիպումների օրակարգը սահմանափակվում էր հիմնականում ռազմաքաղաքական բնույթի պրոբլեմներով, ապա ներկայումս ավելի մեծ նշանակություն են ստանում տնտեսական, մշակութային, հումանիտար համագործակցության հարցերը: Միջազգային կոնֆերանսների առաջին պլան են մղվում այնպիսի պրոբլեմներ, որոնք դեռ մի քանի տասնամյակ առաջ գրավում էին լոկ առանձին գիտնականների ու մասնագետների ուշադրությունը: Դրանցից են, օրինակ, էկոլոգիական անվտանգության ապահովումը, տիեզերական տարածության համատեղ յուրացումը, ծովերի ու օվկիանոսների ընդերքի և մի շարք ուրիշ հարստությունների օգտագործումը:

Հատկանշական է ևս մի հանգամանք, թերևս, առավել կարևոր: Անցյալում, այդ թվում և ամենամոտ անցյալում, համաշխարհային քաղաքական բեմահարթակում գործող անձինք պետական գործիչներն էին, դիվանագետները, կառավարությունների պաշտոնական ներկայացուցիչները: Ժողովուրդները, հասարակայնությունը լավագույն դեպքում այդ բեմահարթակում տեղի ունեցող մարտերի սոսկ հանդիսատեսներն էին լինում, իսկ երբեմն էլ կառավարողների միջև կնքված և իրենց կենսական շահերը շոշափող այդ գործարքների մասին իմանում էին միայն շատ տարիներ անց: Պետք է խոստովանել, որ համանման բաներ եղել են նաև խորհրդային արտաքին քաղաքականության պատմության մեջ: Հիշենք թեկուզ 1939 թվականի խորհրդա-գերմանական բանակցությունները:

Մի խոսքով, համաշխարհային քաղաքականությունը գրեթե բացառապես ձևավորվել է պետությունների, կառավարությունների նրանց ներկայացուցիչների փոխներգործության հետևանքով: Վերջին ժամանակներս իրավիճակը սկսել է էապես փոխվել: Այժմ, դիտելով համաշխարհային քաղաքական ասպարեզում տեղի ունեցող իրադարձությունները, լիակատար հիմունքով կարելի է խոսել ժողովուրդների փոխհարաբերությունների, իրոք որ միջազգային հարաբերությունների մասին: Ամենաբազմազան մասնագիտությունների տեր ավելի ու ավելի շատ մարդիկ են ներգրավվում համաշխարհային քաղաքականության մեջ: Հաստատվում և զարգանում են անձնական կապեր, ընդլայնվում են առնչությունները ոչ կառավարական բազմահազար կազմակերպությունների միջև, կարևորվում է արդյունաբերական ձեռնարկությունների, առևտրական կազմակերպությունների, ֆիրմաների, գործարար շրջանների համագործակցությունը: Դժվար է գերագնահատել այդ կապերի ազդեցությունը միջազգային կլիմայի ձևավորման վրա:

---

*ԻՍՐԱՅԵԼՅԱՆ ՎԻԿՏՈՐ ԼԵՎՈՆԻ— ԽՍՀՄ արտակարգ և լիազոր դեսպան, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:*



Ի վերջո, Խորհրդային Միության արտաքին քաղաքական առանձին գործողությունների մշակմանը և իրականացմանը մասնակցում են նշանավոր գիտնականներ, մշակույթի ու արվեստի գործիչներ, հասարակայնության ներկայացուցիչներ: Նրանց մասնակցությունը, ճիշտ է, առայժմ շատ համեստ է, իսկ առանձին դեպքերում սոսկ խորհրդանշական, բայց հասարակայնությանը անցյալում ընտրախավի մենաշնորհ հանդիսացող գործունեության ոլորտի՝ արտաքին քաղաքկանության, դիվանագիտության մեջ ակտիվորեն ընդգրկելու փաստն իսկ ժամանակի տիպական հատկանիշ է:

Մեկ հոդվածի շրջանակներում դժվար է թեկուզ հենց պարզ կերպով թվարկել վերջին ժամանակների միջազգային կյանքի կարևոր իրադարձությունները. բարձր մակարդակի հանդիպումներ, այլ բանակցություններ ու կոնֆերանսներ, դրանցում ձեռք բերված պայմանավորվածություններ ու ստորագրված համաձայնագրեր, հռչակված դեկլարացիաներ և իրականացված միակողմանի կամ կոլեկտիվ գործողություններ: Իսկ եթե փորձենք տալ անցած մի քանի տարում պետությունների ու ժողովուրդների համաշխարհային համակցության ընդհանուր գնահատականը, ապա մեր կարծիքով, նրա գլխավոր արդյունքը հանգում է այն բանին, որ «սառը պատերազմի» երկարատև ժամանակաշրջանը, որով գործնականում բնութագրվում էին միջազգային հարաբերությունները երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց ի վեր, մոտեցել է ավարտին:

Ի տարբերություն իսկական, զենքի գործադրմամբ «տաք» պատերազմի, անհնար է հաստատել «սառը պատերազմի» սկսվելու և ավարտվելու ստույգ տարեթվերը: Դա նույն բանն է, որ, ասենք, փորձել ճիշտ որոշել այս կամ այն ջրավազանի սառցապատվելու պահը կամ նրա վրայից սառցի ծածկը անհայտանալու ժամանակը: Այդ մասին կարելի է խոսել միայն որոշակի ժամանակային սահմաններում: «Սառը պատերազմը» ծագել է հետպատերազմյան առաջին տարիներին, իսկ նրա մարման պրոցեսը սկսվել է ութսունական թվականների կեսերին:

Այդ պրոցեսը դրսևորվում է ամենից առաջ միջուկային պատերազմի ուղղակի սպառնալիքի վերացման մեջ: Միջազգային լարվածության տենդագին կացությունը, որ ցանկացած րոպեի կարող էր անկանխատեսելի հետևանքներ առաջացնել, մեղմացել է: Սպառազինությունների մրցավազքը զսպելու նպատակով կոնկրետ քայլեր են ձեռնարկվել: Սկսվել է միջուկային զինանոցների կրճատումը: Միջին և փոքր հեռահարության հրթիռների վերացման մասին խորհրդա-ամերիկյան պայմանագրի ստորագրելն ու ուժի մեջ մտնելը հանդիսացավ պատմական նշանակության իրադարձություն. միջուկային զենք ունեցող պետություններն առաջին անգամ պայմանավորվեցին այդ երկու զինատեսակները լրիվ ոչնչացնելու մասին:

«Սառը պատերազմի» համար բնորոշ էր ռեգիոնալ կոնֆլիկտների հայտնվելն ու աներնդհատ ծավալվելը: Հողագնդի մեկ այս, մեկ այլ ռեգիոնում առաջանում էին սուր իրավիճակներ. մի դեպքում ներքին ուժերի հակամարտության հետևանքով, մյուսում՝ պետությունների միջև հակասությունների պատճառով: Շատ դեպքերում կոնֆլիկտները վերաճում էին արյունահեղ ռազմական ընդհարումների, իսկ երբեմն էլ երկարատև մեծ չափերի հասնող պատերազմների: Դրանք այս կամ այն չափով շոշափում էին մյուս պետությունների, առաջին հերթին մեծ պետությունների շահերը: Ու թեպետ ռեգիոնալ կոնֆլիկտներից ոչ մեկը չի վերաճել համընդհանուր ռազմական առճակատման՝ համաշխարհային պատերազմի, դրանցից յուրաքանչյուրը ավելի շատ է տագնապահարել միջազգային կյանքը: Մերձավոր արևելք, կորեական պատերազմ, Վիետնամ, Կիպրոս, իրանա-իրաքյան պատերազմ, Աֆղանստան, Կամպուչիա, կարիբյան ճգնաժամ, Նամիբիա— ահա թեժ կետերի ոչ լրիվ թվարկումը, որոնցից յուրաքանչյուրը կարող էր մարդկության պատմության մեջ մտնել որպես հենց նրան ոչնչացնող համընդհանուր աղետի նախերգանք: Վերջին տարիներին այդ կետերից շատերը սկսեցին մարել, մի շարք ռեգիոնալ կոնֆլիկտների լուծման քաղաքական մոտեցումները գտնվեցին, որոնք հիմք հանդիսացան դրանց արդարացի և փոխադարձաբար ընդունելի կարգավորման համար: Կնքվեցին Աֆղանստանի վերաբերյալ Ժնևի համաձայնագրերը, և Խորհրդային Միությունը իր զորքերը դուրս բերեց այդ երկրից, դադարեցին ռազմական գործողությունները Իրանի և Իրաքի միջև, Նամիբիական պրոբլեմի լուծման նպատակով ձեռք բերվեցին կարևոր պայմանավորվածություններ, առաջ է ընթանում Կիպրոսի հարցի, Կամպուչիայում տիրող կացության կարգավորումը, ակտիվացել է միջազգային ամենապայթյունավտանգ և խճճված հանգույցներից մեկի՝ մերձավորարևելյան կոնֆլիկտի վերացման հնարավորությունների որոնումը:

Անշուշտ, աներևակայելի չափազանցում կլիներ պնդել, թե ռեգիոնալ կոնֆ-

լիկտները, այդ թվում և հիշատակվածները, վերջնականապես ու անդառնալիորեն լուծվել են: Դրանցից շատերի կրակը թեպետ մարել է, բայց շարունակում է թույլ այրվել և պահանջվում է, ըստ երևույթին, համաշխարհային ընկերակցության ոչ քիչ ջանքերը, որպեսզի այդ կոնֆլիկտների արյունալի հետքերը պահպանվեն միայն մարդկային թշնամանքի ու եղբայրասպանության տխուր տարեգրության մեջ: Այստեղ կարևոր է կոնֆլիկտների քաղաքական լուծման նկատմամբ բուն միտումը, որը բնութագրական է վերջին տարիների միջազգային քաղաքականությանը:

Արդի միջազգային հարաբերությունների ևս մեկ կարևոր հատկանիշն է պետությունների, ժողովուրդների միջև աճող փոխադարձ վստահությունը, հրապարակայնությունը, բացախոսությունը: «Սառը պատերազմի» տարիներին միջազգային ասպարեզում իշխում էին կասկածամտությունը, գերգաղտնիությունը, լրտեսամոլությունը: Եվ այստեղ պետք է ուղղակիորեն խոստովանել, որ անվստահության մթնոլորտ ստեղծելու պատասխանատվության զգալի բաժինը մերն էր՝ Խորհրդային Միության: Դա ամենից առաջ դրսևորվում էր այն բանում, որ մենք երկար տարիներ գործնականում հրաժարվում էինք հրապարակել մեր պաշտպանական պոտենցիալի, մասնավորապես Խորհրդային Միության սպառազինությունների և զինված ուժերի մասին որևէ տվյալ: Զենքի այս կամ այն տեսակի կրճատման կամ վերացման վերաբերյալ բանակցություններ վարելով՝ մենք երբեմն խուսափում էինք պատասխանել այդ զենքից մեր ունենալու և դրա քանակի մասին հարցին:

Մեր դիրքորոշումը միանգամայն ռեալիստական չէր այս կամ այն միջազգային համաձայնագրի կատարումը վերահսկելու հարցում: Մենք առաջարկում էինք վերահսկման այնպիսի ձևեր, որոնք չէին ապահովում մեր պարտնյորների վստահությունը համաձայնագրերի բոլոր դրույթները մեր կողմից կատարելու հարցում, դե չէին կարող երաշխավորել նաև մեր սեփական վստահությունն այն բանում, որ մեր պարտնյորները լիովին հավատարիմ են դրանց ոգուն և տառին: Վերահսկման հարցերում այսպիսի դիրքորոշումը դարձավ այն բանի պատճառներից մեկը, որ զինաթափման վերաբերյալ շատ բանակցություններ տարիներով, իսկ երբեմն էլ տասնամյակներով տեղում դոփում էին:

Կամ էլ մի ուրիշ՝ վստահության պրոբլեմի հետ կապված հարց. ռազմական ծախսերի չափերը: Կյանքը ցույց է տվել, որ ռազմական բյուջեի բաց լինելը մյուս երկրների բյուջեների հետ այն համադրելու, համեմատելու գլխավոր պայմանն է, հետևաբար և՝ դրանք հաշվեկշռված կրճատելու շուրջ բանակցությունների անհրաժեշտ պայմանը: Խորհրդային Միությունը 70-ական թվականներին և՛ ՄԱԿ-ում, և՛ երկկողմ բանակցություններում բազմիցս առաջարկել է ռազմական ծախսերը կրճատել, բայց խորհրդային ռազմական բյուջեի չափերը համառորեն չի նշել: Միայն վերջերս նշվեց մեր ռազմական բյուջեի գումարը՝ 77,3 միլիարդ ռուբլի, որն ըստ պաշտոնական տվյալների կազմում է խորհրդային ազգային համախառն արտադրանքի 9 տոկոսը: Համեմատության համար նշենք, որ ԱՄՆ-ում ռազմական ծախսերը կազմում են երկրի ազգային համախառն արտադրանքի 6 տոկոսից ոչ ավելի:

Վաղուց վեճ է գնում. ոմանք պնդում են, որ սպառազինությունների մրցավազքը հարուցում է պետությունների միջև գոյություն ունեցող անվստահությունը, փոխադարձ երկյուղը, իսկ ոմանք էլ, ընդհակառակը, անվստահությունը և երկյուղը համարում են սպառազինությունների մրցավազքի արդյունք: Կարծում ենք, որ միջպետական հարաբերությունների ըստ էության բոլոր այդ դրսևորումները փոխադարձաբար կապված են: Միանգամայն ակնհայտ է, որ չարդարացված գաղտնիությունը, համընդհանուր կասկածամտությունը, փոխադարձ վախի ներարկումը «սառը պատերազմին» բնորոշ հատկանիշներ են: Միջազգային հարաբերությունների ոլորտում դրանց պահպանումը արտաքին քաղաքականության իրադրության ոչ մի բարելավում չէր խոստանում:

Համաշխարհային ընկերակցության բոլոր անդամների կողմից այդ անվիճելի ճշմարտության ըմբռնումը հանգեցրել է նկատելի արդյունքների: Մի քանի տարի առաջ Ստոկհոլմում ստորագրվեց կարևոր փաստաթուղթ՝ Եվրոպայում անվտանգության և համագործակցության խորհրդակցության մասնակիցների միջև ռազմական վստահության միջոցառումների մասին, որը հելսինկյան պրոցեսի 35 մասնակիցներից յուրաքանչյուրին հնարավորություն տվեց հավաստի ինֆորմացիա ստանալ իր մնացած պարտնյորների ռազմական գործունեության շատ ոլորտների վերաբերյալ: Ընթացիկ տարվա մարտին Վիեննայում սկսված բանակցությունները սկզբունքորեն նոր փուլ են բաց արել սպառազինությունների կրճատման ջանքերում, որին մասնակցում են Վարշավայի պայմանագրի կազմակերպության անդամ պետությունները և



ՆԱՏՕ-ն: Սրան զուգահեռ համաեվրոպական պրոցեսի բոլոր 35 մասնակիցները շարունակում են ռազմական վստահության միջոցներ մշակել:

Համակողմանի ճանաչում է ստացել միջազգային ստուգումների մեթոդը՝ որպես պայմանագրերի ու համաձայնագրերի կատարմանը վերահսկող կարևորագույն ձև: Այն լրիվ ծավալով արձանագրված է, մասնավորապես, միջին և փոքր հեռահարության հրթիռների վերաբերյալ խորհրդա-ամերիկյան պայմանագրում: Կնքված պայմանագրերին համապատասխան զենքի առանձին տեսակների ֆիզիկական ոչնչացման ընթացքին փոխադարձաբար մասնակցելը, ռազմական օբյեկտներ, զինափորձարաններ, ռազմանավեր ու ինքնաթիռներ այցելելը, ռազմական մինիստրների, գլխավոր շտաբների պետերի այցելությունները, որ տակավին մի քանի տարի առաջ անիմաստ էին, ներկայումս դարձել են միջազգային կյանքի սովորական երևույթ, այն բանի հաստատում, որ «սառը պատերազմն» անցնում է անցյալի գիրկը:

Երկրորդ համաշխարհային պատերազմը անհաշիվ վնաս հասցրեց Խորհրդային Միության, Արևելյան ու Արևմտյան Եվրոպայի և շատ այլ պետությունների էկոնոմիկային: Թվում էր, թե քայքայված էկոնոմիկան արագորեն վերականգնելու շահերից ելնելով տուժած երկրները պետք է միավորեին իրենց ջանքերը, լայնորեն համագործակցեին արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի բնագավառներում, համատեղ ապաքինեին պատերազմի առաջացրած ծանրագույն վերքերը:

Բայց «սառը պատերազմն» ուներ իր տրամաբանությունը: Բաժանվելով երկու հակամարտ խմբավորումների, Արևմուտքն ու Արևելքը սկսեցին զարգանալ մեկուսացված կերպով: ՆԱՏՕ և Վարշավայի պայմանագրի կազմակերպություն ռազմաքաղաքական բլոկների ստեղծմանը հետևեց մեկուսացած տնտեսական ընկերությունների կազմավորումը: Առանձին երկրների, ռեգիոնների միջև հարյուրավոր տարիների ընթացքում ձևավորված բնական առևտրական, տնտեսական կապերը սկսեցին նվազել, իսկ երբեմն էլ պարզապես խզվեցին: Ժողովրդական տնտեսությունը վերականգնել հենվելով գլխավորապես սեփական ուժերի վրա կասկածելի կարգախոսով առաջնորդվելով Խորհրդային Միությունը մերժեց «Մարշալի պլանը»: «Համաշխարհային կոմունիզմին» աջակցելուց երկյուղելով, Արևմուտքը սոցիալիստական երկրներ առաքվող ժամանակակից տեխնոլոգիայի շատ տեսակների առաքումն արգելեց: Թե ինչի հանգեցրեց այդպիսի «տրամաբանությունը», քաջ հայտնի է: Դա հատկապես ծանր անդրադարձավ Խորհրդային Միության վրա, որի էկոնոմիկան խիստ տուժեց նաև կառավարման վարչահրամայական մեթոդներից: Տնտեսական ոչ պակաս հնարավորություններ կորցրեց նաև Արևմուտքը:

Այս ամենը համագործակցության ուղիների անխուսափելի որոնումների հանգեցրեց: Վերջին տարիներին առաջին անգամ կապեր հաստատվեցին Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ՆԱՏՕ-ի, ՏՓԽ-ի և եվրոպական համագործակցության, Արևելքի ու Արևմուտքի ուրիշ քաղաքական, տնտեսական, առևտրական կազմակերպությունների միջև: Վերջերս Եվրոպայի խորհրդի պառլամենտական ասամբլեան որոշում ընդունեց ԽՍՀՄ-ին «հատուկ հրավիրված պետության» ստատուս տալու մասին, Խորհրդային Միության և եվրոպական համագործակցության միջև բանակցություններ են ընթանում առևտրատնտեսական համաձայնագիր կնքելու վերաբերյալ:

Չի կարելի ասել, թե արտասահմանյան երկրների հետ ԽՍՀՄ հաստատած կապերը և արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության մարզերում համագործակցությունը արդեն տալիս են շոշափելի արդյունքներ մեր երկրի տնտեսական վիճակի մեջ: Սակայն դրանց պոտենցիալ հնարավորությունները զգալի են և խելամտորեն օգտագործելու պարագայում կարող են անտարակույս բարերար ազդեցություն գործել ժողովրդական տնտեսության առողջացման վրա:

Աշխարհում նոր իրադրության նշան է և, որը նույնպես վկայում է «սառը պատերազմի» մարման մասին, փոխշահավետ համագործակցությանը խանգարող արհեստական շատ արգելքների վերացումը: Եվ այնուհանդերձ, ինչպես մենք կարծում ենք, Արևելքի ու Արևմուտքի երկրների մարդկանց փոխհարաբերություններում գլխավոր տեղաշարժերը կատարվել են: Հիշենք այն մոտ ժամանակները, երբ օտարերկրացիների հետ ամեն մի առնչություն, հասարակ ծանոթություն խորհրդային քաղաքացուն հանցանք վերագրելու հանգամանք էին համարվում, իսկ արտասահմանում բարեկամներ ունենալը երբեմն անհաղթահարելի արգելքներ էր ստեղծում ծառայության ոլորտում նրա առաջընթացի համար: Օտարամոլության, կոսմոպոլիտիզմի դեմ կամպանիաները, որ ուղեկցվում էին ռեպրեսիաների, ձերբակալությունների ալիքով, մեր հետպատերազմյան պատմության ամենախայտառակ էջերից մեկն է:

Համանման բնույթ է կրել մակարտիզմի կամայականությունը ԱՄՆ-ում հետպատերազմյան առաջին տարիներին: Որքան ամերիկացիներ զրկվեցին աշխատանքից, նետվեցին բանտ, հարկադրված եղան հարազատ երկրից հեռանալ սոսկ այն բանի համար, որ իրենց բարեկամական զգացմունքներն էին արտահայտել Խորհրդային Միության, համակրանքը սոցիալիզմի, կոմունիզմի գաղափարների հանդեպ:

«Սառը պատերազմի» ժամանակաշրջանի պրոպագանդայի հզոր հեղեղն իր գործն արեց. նա արմատախիլ արեց տարբեր երկրների մարդկանց՝ միմյանց ճանաչելու, բարեկամանալու բնական ձգտումը: Ե՛վ մեզ մոտ, և՛ Արևմուտքում ձևավորվեց «թշնամու կերպարի» ստերեոտիպը: Արդեն 40-ական թվականների վերջին, Հելափի հարցման վկայությամբ, ամերիկացիների մեծ մասը Խորհրդային Միության դեմ պատերազմը անխուսափելի էր համարում: Խորհրդային յուրաքանչյուր մարդու մեջ նրանք տեսնում էին մի այնպիսի երկիր ներկայացնող լրտես, որը նրա առաջնորդ Խրուշչովի արտահայտությամբ, ձգտում էր թաղել ԱՄՆ-ում գոյություն ունեցող հասարակարգը:

Մոտավորապես նույնպիսի հույզեր էր առաջացնում խորհրդային մարդու մեջ ցանկացած ամերիկացի: «Ամերիկյան իմպերիալիզմը ժողովուրդների ոխերիմ թշնամին է». այս սահմանումը խորհրդային մարդկանց մեծ մասի համար այն տեսապակին էր, որի միջով նրանք դիտում ու ընկալում էին ամենայն ամերիկյանը: Անգամ դիվանագիտական բանակցությունները, որոնց խնդիրը, ինչպես հայտնի է, պայմանավորվածություններ որոնելն է, վարվում էին, որպես կանոն, բարձր նոտաներով, իսկ Ջ. Ֆ. Դալեսի հակակոմունիստական, հակախորհրդային ճոռոմաբանությունը և Վիշինսկու «դատախազական դիվանագիտությունը» թունավորում էին միջազգային բազում կոնֆերանսների մթնոլորտը: Իմ դիվանագիտական գործունեության զգալի մասն անցել է «սառը պատերազմի» տարիներին: Հիշում եմ, ինչպես խորհրդային դիվանագետներս, ղեկավարվելով հրահանգներով, ամերիկյան մեր գործընկերներին «հակահարված էինք տալիս», «դատապարտում» «նշավակում», իսկ այնուհետև հանույքով զեկույցներ էինք հղում Մոսկվա, թե ինչպես ենք բանակցություններում այդ գործընկերներին «սեպել», «ապտակել», «սպաղել»: Անշուշտ, և՛ ամերիկյան դիվանագետները, և՛ նրանց դաշնակիցները ջանում էին առճակատման մարտերում մեզնից հետ չմնալ:

Փոխադարձ թշնամանքի և երկյուղի բորբոքումն ուղեկցվում էր մարդու իրավունքների կոպիտ խախտումներով: Սահմանափակումներն ու արգելքները, կասկածանքներն ու ստուգումները բացահայտորեն հակասում էին մարդու իրավունքների համընդհանուր դեկլարացիային, միջազգային բազմաթիվ այլ համաձայնագրերի: Կյանքը, սակայն, էլ ավելի ակնհայտ դարձրեց այն պարագան, որ աշխարհը, որտեղ կխախտվեն մարդու իրավունքները, եթե նույնիսկ հաջողվի սահմանափակել սպառազինությունների մրցավազքը, չի կարող լինել կայուն, տևական: Այս եզրակացությանն է հանգել նաև խորհրդային ղեկավարությունը: Շատ արգելքներ են վերացվել խորհրդային մարդկանց և օտարերկրացիների միջև կապերի բնագավառում, պարզեցվել են արտասահման մեկնելու, հայրենիք վերադառնալու արարողությունները, խրախուսվում ու աջակցության են արժանանում գիտական, մարզական, հասարակական կապերը: Ծառայության բերումով ես, 60-ական թվականներից սկսած, կանոնավորապես այցելել եմ Նյու Յորք: Բայց նման ոչ մի բան, ինչ տեսնում ու լսում ենք այսօր Նյու Յորքի Քեննեդի օդանավակայանում՝ խորհրդային ինքնաթիռների վայրէջքի և թռչելու ժամանակ, նախկինում պատկերացնելն անհնար էր: Մարդկանց հսկայական կուտակում, մեկ այստեղ, մեկ այնտեղ լսվում է ռուսերեն, հայերեն, ուկրաիներեն խոսակցություն: Ճանապարհողները և թռչողները պայմանավորվում են նոր հանդիպումների, ուղևորությունների մասին...

Միջազգային հարաբերությունները հումանիզացնելու լայն ճանապարհ բացեց Եվրոպայի անվտանգությանը և համագործակցությանը նվիրված խորհրդակցության մասնակից-պետությունների ներկայացուցիչների ընթացիկ տարվա գարնանը Վիեննայում ավարտված հանդիպումը: Այնտեղ շատ հարցերի վերաբերյալ փոխըմբռնում արձանագրվեց, որոնք «սառը պատերազմի» ամբողջ ընթացքում Արևելքի ու Արևմուտքի փոխհարաբերությունների միջև գայթակղության քար էին: Վիեննայի հանդիպման հետևանքով համաեվրոպական պրոցեսի ներքո իրավական հուսալի հիմք դրվեց:

ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի որոշման մեջ ասված է. «Հենվելով միջազգային նորմաների ու սկզբունքների վրա, այդ թվում մարդու իրավունքների համընդհանուր դեկլարացիայում, Հելսինկիի համաձայնագրե-



րի և Վիեննայի հանդիպման համաձայնությունների բովանդակած դրույթների վրա, ներքին օրենսդրությունը դրանց համապատասխանեցնելով, ԽՍՀՄ-ը կնպաստի իրավական պետությունների միջազգային ընկերակցության ստեղծմանը»:

Անշուշտ, չի կարելի կարծել, թե մարդկանց միջև կապերի զարգացման մեխանիզմը, որոնք կազմում են միջազգային հարաբերությունների կարևորագույն տարրը, արդեն կատարելության է հասել: Երբեմն ծագում են դժվարություններ և դրանք հիմա էլ քիչ չեն, մասնավորապես վալյուտային փոխանակության ոլորտում: Առանձին դեպքերում, ինչպես և նախկինում, արգելքներ է ստեղծում բյուրոկրատական ապարատը: Իսկ լինում է, որ «սառը պատերազմի» ժառանգությունն է իրեն զգալ տալիս: Այսպես, ընթացիկ տարվա մայիսին Նյու Յորք մեկնելիս ես ստիպված էի ստորագրել հայտարարություն այն մասին, որ չեմ դուրս գա քաղաքի 25-մղոնանոց գոտու սահմաններից և չեմ զբաղվի հայտարարության մեջ չգրանցված գործունեությամբ (ես Նյու Յորքում էի գտնվում զինաթափման հարցերին նվիրված հանդիպմանը մասնակցելու համար): Ուզում եմ հուսալ, որ այդ անհեթեթ փոխադարձ սահմանափակումները կվերացվեն:

Միջազգային իրադրության բարենպաստ փոփոխություններն անխզելիորեն կապված են համաշխարհային քաղաքականության նկատմամբ նոր մտածողության, նոր մոտեցումների հետ: Վերջիններս չէին կարողանա հաստատվել, եթե լոկ մեկ պետության կամ էլ պետությունների մի նեղ խումբ վերանայեր իր արտաքին քաղաքական կոնցեպցիաները: Միջազգային կլիմայի բարելավումը, «սառը պատերազմի» մարումը կարող էին իրականանալ միայն այն պատճառով, որ գործնականում ամբողջ մարդկային ընկերակցությունը և առանձնապես առաջատար պետությունները նորովի գնահատեցին միջազգային հարաբերությունների հետագա զարգացման հեռանկարներն ու իրատեսորեն վերլուծեցին մարդկության առջև կանգնած առավել սուր պրոբլեմների լուծման ուղիները: Եվ նոր մտածողության պիոներ հանդես եկող Խորհրդային Միության ավանդն այդ գործում դժվար է գերագնահատել: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում Մ. Ս. Գորբաչովը «ԽՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների մասին» իր զեկուցման մեջ հայտարարեց. «Նոր մտածողության հիմքում ընկած է համամարդկային շահերի ու արժեքների ճանաչումը, բարոյականության համրաճանաչ նորմերի՝ որպես ամեն մի քաղաքականության պարտադիր չափանիշի ճանաչումը. սոցիալ-քաղաքական ընտրության ազատության ճանաչումը, որը բացառում է միջամտությունը ցանկացած պետության գործերին. միջպետական հարաբերությունների ապագաղափարայնացման անհրաժեշտության ճանաչումը»:

Խորհրդային Միության արտաքին քաղաքականության կուրսի արմատական փոփոխումը տեղի է ունեցել և տեղի է ունենում դիվանագիտական աշխատանքի բազմաթիվ դոգմատիկ կանխադրույթներից ու պատկերացումներից, հնացած և անարդյունավետ ձևերից ու մեթոդներից հրաժարվելու պայմաններում: Խորհրդային պետության անցած տասնամյակների արտաքին քաղաքական գործունեության գըլխավոր արատը, իմ կարծիքով, այն էր, որ նա կրում էր խիստ ընտրախավային, աշխատասենյակային բնույթ: Այդ գործունեությունը ձևավորվել է մարդկանց շատ նեղ շրջանակի կողմից, երբեմն էլ պարզապես մեկ մարդու՝ առաջնորդի կողմից, իրականացվել է խիստ գաղտնիության կոշտ շրջանակներում, իշխանության ընտրովի մարմիններում գործնականում չի քննարկվել:

Եթե ինդուստրացման, ագրարային քաղաքականության, տրանսպորտի և ժողովըրդական տնտեսության մյուս ճյուղերի խնդիրների վերաբերյալ ժամանակ առ ժամանակ անցկացվում էին զանազան խորհրդակցություններ, համագումարներ, արտադրության առաջավորների, մասնագետների հավաքներ, ապա Խորհրդային Միության միջազգային դրության հարցերի հազվադեպ քննարկումը, որոնց նկատմամբ խորհրդային հասարակայնության կողմից հսկայական հետաքրքրություն էր ցուցաբերվում, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նստաշրջաններում կամ կուսակցության Կենտկոմի պլենումներում կրում էր խիստ ձևական բնույթ: Բավական է, օրինակ, հիշել հետևյալ տհաճ պատմական փաստը. 1939 թվականի օգոստոսի 23-ին չհարձակվելու մասին խորհրդա-գերմանական դաշնագրի ստորագրումից անմիջապես հետո գումարվեց Գերագույն խորհրդի արտակարգ նստաշրջան, որտեղ այդ հարցի վերաբերյալ զեկուցմամբ հանդես եկավ Մոլոտովը: Չնայած այն իրողությանը, որ հիշատակված դաշնագրի ստորագրումը խորհրդային հասարակայնության համար միանգամայն անսպասելի էր և այդ առնչությամբ նրա մեջ քիչ հարցեր չծագեցին, այդուհանդերձ Մոլոտովի զեկուցումն ավարտվելուն պես կուսակցության Մոսկվայի քաղ-

կոմի առաջին քարտուղար Ճչերբակովի առաջարկությամբ որոշվեց... զեկուցման
շուրջ մտքերի փոխանակություն չանցկացնել: Կամ ուրիշ փաստ: Խորհրդային զոր-
քերը Աֆղանստան մտցնելու մասին կարևորագույն արտաքին քաղաքական որոշումը,
որ մեր երկրին այնքան շատ դժբախտություն ու վիշտ բերեց, ընդհանրապես Գերա-
գույն խորհրդի քննարկման չդրվեց:

Արտաքին քաղաքականության հարցերի վերաբերյալ որոշումների ընդունման
այդպիսի ոչ դեմոկրատական պրակտիկայի ցուցակը կարելի է շարունակել: Իսկ չէ
որ խորհրդային իշխանության առաջին տարիներին խորհուրդների երիտասարդ հան-
րապետության արտաքին քաղաքականության հարցերը քննարկվում էին լայնորեն,
բացեիբաց: Բրեստում, Ճենովայում կայացած բանակցություններին, միջազգային
մյուս կոնֆերանսներին նախորդել էր ստեղծագործական բանավեճ, որի ընթաց-
քում մշակվել էր հիրավի ժողովրդական արտաքին քաղաքականության միասնական
գիծ: Հատկապես ուզում եմ նշել, որ այդ գիծը մշակելիս հաշվի են առնվել նաև
միութենական հանրապետությունների շահերը: Այսպես, Ճենովայի կոնֆերանսի նա-
խօրյակին Մոսկվայում տեղի ունեցավ Հայաստանի, Բելոռուսիայի, Ուկրաինայի,
Վրաստանի, Ադրբեջանի, Բուխարայի, Հեռավորարևելյան հանրապետության, Խո-
րեզմի ներկայացուցիչների խորհրդակցություն, որտեղ քննարկվեցին նրա անցկաց-
ման հետ կապված հարցերը, իսկ բուն կոնֆերանսին մասնակցեցին Ուկրաինայի,
Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի ներկայացուցիչները: Սակայն նման պրակ-
տիկան շուտով լրիվ մոռացության մատնվեց:

Խորհրդային Միությունը բազմազգ պետություն է, և նրա արտաքին քաղաքակա-
նությունը պիտի լինի բազմազգ, այսինքն պիտի արտահայտի տարբեր ազգերի,
միութենական հանրապետությունների առանձնահատուկ շահերը: Օրինակ, ով
կժխտի, որ Հայաստանը, ինչպես և մյուս անդրկովկասյան հանրապետությունները
հատուկ հետաքրքրություն ունեն հարևան պետությունների՝ Թուրքիայի և Իրանի
հետ հարաբերությունները զարգացնելու հարցում, միջինասիական, մերձբալթյան,
մնացած միութենական հանրապետությունները՝ իրենց հարևանների հետ: Իսկ ի-
րականում ի՞նչ է տեղի ունենում: Միութենական հանրապետությունները գործնա-
կանում հեռացված էին արտաքին քաղաքական գործողությունների մշակմանը մաս-
նակցելուց, որոնք երբեմն անմիջական առնչություն ունեին այդ հանրապե-
տությունների ժողովուրդների ճակատագրի հետ: Բանը հաճախ սահմանափակվում
էր նրանով, որ ժամանակ առ ժամանակ հերթականության կարգով, իսկ երբեմն էլ
զուտ սուբյեկտիվ նկատառումներով ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նստաշրջաննե-
րին մասնակցող ԽՍՀՄ պատվիրակության մեջ ընդգրկում էին միութենական հան-
րապետությունների արտաքին գործերի մինիստրներ: Հիշում եմ, օրինակ, Հայաս-
տանի արտաքին գործերի մինիստրներ Բ. Մարտիրոսյանի և Ջ. Կիրակոսյանի մաս-
նակցությունը մի շարք նստաշրջանների աշխատանքին: Սակայն ոչ մեկը, ոչ էլ
մյուսը չէին զբաղվում հանրապետության համար անմիջական հետաքրքրություն
ներկայացնող հարցերով: Իսկ այդպիսի քաղաքական, սոցիալական, տնտեսական
(թեկուզ հենց ցեղասպանության բոլոր դրսևորումների դատապարտումը) հարցեր
ասամբլեայի օրակարգում քիչ չէին: Եվ այդ կարևոր՝ Գլխավոր ասամբլեայի նստա-
շրջանների աշխատանքին միութենական հանրապետությունները ներկայացնելու
գործում խիստ ձևական մոտեցում էր տիրում: Իմ մոտ ընկեր Ջոն Կիրակոսյանը,
որ բացառիկ ակտիվ, նախաձեռնող մարդ էր, երբեմն ձանձրանում էր այդպիսի վի-
ճակից և իր կրակոտ եռանդն ու վիթխարի բազմագիտակությունը ուղղում էր Հա-
յաստանի հետ ԱՄՆ-ի հայ գաղթօջախի համագործակցությունը զարգացնելուն և ամ-
րապնդելուն:

Վերակառուցման տարիներին շատ բան է արվել միջազգային ասպարեզում
Խորհրդային Միության դիրքերի ամրապնդման և կապերի ընդլայնման նպատակով:
Փոխվել են խորհրդային դիվանագիտական ծառայության աշխատանքի և՛ ոճը, և՛
ձևերը: Այդ մասին խոսվեց, մասնավորապես, համամիութենական XIX կուսակցական
կոնֆերանսում, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում: Եվ այդու-
հանդերձ պահանջվում են դեռևս ոչ քիչ ջանքեր, որպեսզի լիովին բացառվեն ար-
տաքին քաղաքականության բնագավառում անցյալում թույլ տրված կամայական
գործողությունների կրկնման հնարավորությունը, նրան տրվի իսկապես դեմոկրա-
տական, ժողովրդական, բազմազգ բնույթ:

Ցավոք սրտի, որոշումներ ընդունելու դեմոկրատական նորմաներին չհամապա-
տասխանող առանձին քայլեր կատարվում են նաև մեր օրերում: Այսպես, խորհր-



դային զինված ուժերի անձնակազմը 500 հազար մարդով կրճատելու որոշումը, որի մասին խորհրդային ժողովուրդն ու ամբողջ աշխարհի հասարակայնությունը իմացան անցյալ տարվա վերջին Նյու Յորքում Մ. Ս. Գորբաչովի ելույթից և ընդունեցին մեծ հավանությամբ, վերստին ընդունվել էր առանց նրա ժողովրդական իշխանության բարձրագույն մարմինների քննարկման ու հաստատման՝ թեպետ խոսքը վերաբերում էր մեր պետության անվտանգության ապահովման հետ կապված բացառիկ կարևոր հարցին: Այդ պատճառով բնականաբար հարցեր ծագեցին. ինչու՞ է կրճատումը կատարվել 500 հազար մարդով, այլ ոչ ավելի մեծ կամ պակաս թվով, մեր միակողմանի կրճատման հետևանքով արդյոք Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի միջև պահպանվու՞մ է ռազմական հավասարությունը, եթե այո, ապա դա չի՞ նշանակում, որ մինչև ոչ հեռավոր անցյալը մենք ռազմական գերազանցություն ունեինք, թեև դա համառորեն հերքում էինք (այդ թվում նաև ես որպես զինաթափման կոնֆերանսում ԽՍՀՄ ներկայացուցիչ) և այլն: Կամ մի ուրիշ, բոլորովին վերջին ժամանակների օրինակ: Այս տարվա հունիսին տեղի ունեցած խորհրդա-իրանական բարձր մակարդակի բանակցությունների հետևանքով ձեռք բերվեց համաձայնագիր, որով նախատեսվում է, մասնավորապես, Խորհրդային Միության կողմից զենքի որոշ տեսակներ մատակարարել Իրանին: Կարծում ենք, որ դեռևս ձևականորեն պատերազմական վիճակում գտնվող հարևան երկրին զենք մատակարարելն իր մեջ քողարկում է ռեգիոնում իրավիճակի բարդացման պոտենցիալ սպառնալիք և կարող է ազդել այդ շրջանի մյուս երկրների հետ մեր հարաբերությունների վրա: Մի խոսքով, նման հարցը ևս պետք է լինի ԽՍՀՄ Գերագույն խորհրդի իրավասության մեջ, և այն լուծելիս պիտի հաշվի առնվի նաև համապատասխան միութենական հանրապետությունների կարծիքը՝ տվյալ դեպքում անդրկովկասյան, մասնավորապես Հայաստանի կարծիքը:

Ուզում ենք հուսալ, որ Գերագույն խորհուրդը, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարը և նրա համապատասխան հանձնաժողովներն ու կոմիտեները, հատկապես նրանք, որոնք կապված են միջազգային քաղաքականության հետ, սիստեմատիկաբար կզբաղվեն կառավարության արտաքին քաղաքական առանձին գործողությունների քննարկումով, կանոնավորապես կլսեն ԽՍՀՄ արտաքին գործերի մինիստրի, նրա տեղակալների, միջազգային կարևորագույն կոնֆերանսներում խորհրդային պատվիրակությունների ղեկավարների հաշվետվությունները, կքննարկեն արտասահմանյան այս կամ այն երկրի հետ ԽՍՀՄ-ի հարաբերությունների վիճակը: Իսկ դաշնակցային հարաբերությունների, կարևորագույն պայմանագրերի կնքման, պարտավորություններ ստանձնելու հետ կապված արտաքին քաղաքական առավել խոշոր պրոբլեմները, որոնք շոշափում են երկրի անվտանգության շահերը, դրվում են ժողովրդական դեպուտատների համագումարի քննարկման:

Եվս մեկ նկատառում: Ժողովրդական դեպուտատների համագումարում քննարկվեցին ու հաստատվեցին Խորհրդային Միության արտաքին քաղաքական կուրսի առաջիկա տարիների սկզբունքները: Շատ կարևոր է, որ այդ սկզբունքները անշեղորեն ու հետևողականորեն կենսագործվեն արտասահմանյան երկրների հետ մեր բազմաձև և լայն հարաբերություններում: Ոչ պակաս կարևոր է նաև այն, որ դրանք հակասության մեջ չլինեն մեր ներքին քաղաքական պրակտիկայի հետ: Մենք հռչակել ենք այնպիսի կարևոր սկզբունքներ, ինչպիսիք են քաղաքական, տնտեսական կամ որևէ այլ նպատակի հասնելու նպատակով ուժ գործադրելու և ուժով սպառնալու անթույլատրելիությունը, բոլոր վիճելի հարցերը քաղաքական միջոցներով և շահերի հավասարության հիման վրա լուծելու անհրաժեշտությունը: Մենք հանդես ենք եկել հանուն միջազգային գործերում հրապարակայնության և բացախոսության հետագա զարգացման, որոնք նպաստում են գիտական գիտելիքների, ճշմարիտ ինֆորմացիայի նորմալ հաղորդմանը բոլոր երկրներ, մարդկային գործունեության տարբեր ոլորտներում փորձի փոխանակմանը: Մենք մեզ հռչակել ենք պետությունների միջև փոխադարձ վստահության հարաբերությունների վճռական կողմնակիցներ և այդ մարզում արդեն քիչ բան չենք արել: Մենք արդի համաշխարհային զարգացման համար առաջ ենք քաշել ընտրության ազատության բացառիկ հրատապ սկզբունքը, այն է՝ յուրաքանչյուր ժողովուրդ կարող է ընտրել սոցիալական կարգ, սեփական հայեցողությամբ որոշել իր զարգացման ճանապարհը: Անդրադառնալով համաեվրոպական տան կառուցման հարցին՝ Մ. Ս. Գորբաչովը այս տարվա հուլիսին Փա-

րիզում կայացած մամուլի ասուլիսում նշեց. «Ընտրության իրավունքը յուրաքանչյուր ժողովրդի իրավունքն է: Դա կենտրոնական նպատակակետն է»:

Ժամանակակից համաշխարհային քաղաքականության այս բոլոր հիմնարար սկզբունքները համակողմանիորեն կիրառվելու մեծ հնարավորություններ ունեն, եթե դրանք բխեն պետությունների ներքին քաղաքական պրակտիկայից: Եթե այս կամ այն կառավարությունը սկսի ուժ գործադրել սեփական ժողովրդի դեմ, չվստահի նրան, չապահովի նրա դեմոկրատական իրավունքները, այդ թվում նաև ընտրության իրավունքը, ապա նա այդ սկզբունքների առաջընթացի, միջազգային ասպարեզում դրանց տարածման հույս չի կարող ունենալ: Այստեղ երկակի հաշվապահություն չի կարող լինել:

Մենք ապրում ենք մի ամբողջական և փոխադարձ կախվածության մեջ գտնվող աշխարհում, որտեղ էապես փոխվել են նրա հակասությունների բնույթը և համամարդկային առաջադիմության բովանդակությունը: Այնպիսի համընդհանուր պրոբլեմները, ինչպիսին են միջուկային պատերազմի սպառնալիքը, էկոլոգիական ճգնաժամը, ժողովրդագրական պայթյունի վտանգը և ուրիշներ,— կանխորոշում են միջազգային հարաբերությունների հետագա ինտեգրացումը: Մարդկությունը մեկ ընտանիք է: Եվ, գուցե, այս անվիճելի ճշմարտության առավել վառ ու հուզիչ հաստատումը եղավ 1988 թվականի վերջին հայ ժողովրդի հետ կատարված ողբերգությունը, որին հոգու ցավով, կարեկցանքով դժբախտության ժամին սատար լինելու պատրաստակամությամբ արձագանքեցին շատ ու շատ երկրների ժողովուրդներ՝ առանց նրանց քաղաքական ու սոցիալական սիստեմների, կրոնների և մշակույթների տարբերության: Նրանց բոլորին մղում է համերաշխության զգացումը: Որքան այն ավելի ուժեղ լինի, որքան յուրաքանչյուր ժողովուրդ, յուրաքանչյուր երկրաբնակ ավելի մեծ պատասխանատվություն ցուցաբերի ողջ մարդկության ճակատագրի համար, այնքան ավելի զորեղ կլինի բարգավաճման, բարեկեցության և խաղաղության հույսը մեր մոլորակի վրա:

---



# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԵՆՔ

## ԶՐՈՒՅՑ ԱՌԱՋԻՆ

Սովորաբար հանգիստ ու անառարկելի տոնով ասում են մեծ ճշմարտությունները, որովհետև ով ճշմարիտ ու արդար է, կարիք չունի նույնիսկ վկայի դիմելու կամ երդում-հավատ անելու: Մեր հարևան ադրբեջանցիներն այս տոնով իրենցն են համարում Արցախ-Ղարաբաղը: Ե՛վ նրանք, որ ներկայանում են իբրև աշխատավոր զանգվածների ներկայացուցիչներ, և՛ նրանք, որ իրենց հանրապետության լրատվության մարմիններն են ներկայացնում, և՛ նույնիսկ նրանք, որոնց ձեռքերով է հունցվել-թխվել-ասպարեզ հանվել այժմ հանրապետության ամբողջ բնակչությանը սնող այս թունավոր հացը: Տեսե՛ք, օրինակ, «Մի խումբ կիրովաբադցիներ» անդեմ ու անորոշ ստորագրությամբ նամակ հրապարակողները որքա՜ն որոշակի գիտեն ու համոզված են, որ «Ստեփանակերտցիները նստել են ադրբեջանական հողի վրա», ուզում են այդ «հողի մի անբաժանելի մասը պոկել մայր Ադրբեջանից» և միացնել ինչ-որ Հայաստանի:

Իսկ Ազերինֆորմը, այսինքն՝ այն հաստատությունը, որ հանրապետության լրատվական գործն է գլխավորում, հանգիստ ու վստահ, ի լուր աշխարհի հայտարարում է. «Ադրբեջանական ժողովուրդն իր ամբողջ պատմության ընթացքում հյուրընկալություն է ցույց տվել փորձանքում հայտնվածներին: Շուրջ երկու հարյուր տարի առաջ նա Ղարաբաղում ընդունել է հարազատ վայրերից վտարված առաջին հայ փախստականներին»:

Ուրեմն, այսպես է եղել. Արցախ-Ղարաբաղում հնուց անտի ադրբեջանցիներ էին բնակվում: Նրանք էին այս երկրի տերը: Սրանից շուրջ երկու հարյուր տարի առաջ իրենց բնօրրաններից փախստական հայեր եկան, և խղճահարության փորձանքում հայտնվածներին հյուրընկալություն ու բարեգործություն ցույց տալու իրենց ավանդական սովորությամբ ադրբեջանցիները փախստականներին տեղ տվին իրենց սեփական հողի վրա:

Պատմությանը շատից-քչից տեղյակ մարդուն, ժողովուրդների անցուդարձերին տեղյակ մեկին այս ամենը պիտի թվա առնվազն խաբեություն: Եթե, իհարկե, մի կողմ թողնենք Միության օրենսդիր մարմինների այն վճիռը, որով խստիվ դատապարտվում են հասարակությանը զանգվածաբար մոլորեցնելու գործողությունների հեղինակները:

Մինչդեռ հարևան հանրապետությունում այս աններեթեթ սուտը ծաղկում է պաշտոնական թերթերում ու հանդեսներում, գիտական կոչված հրատարակչություններում, հեռուստատեսության ու ռադիոյի հաղորդումներում:

Եվ արդյունքը՝ ժողովուրդը ոտքի է կանգնել, պիտի հողմացրիվ անի իր հայրենիքի «համով պատառը» պոկելու փորձ անողներին. հա՜յ-հու՜յ, ինչ-որ օտար տեղերից փախած-եկածները խլու՜մ են մեր պապենական հողը...

Իսկ «մտավորականություն» կոչված ռազմատենչ զանգվածը համազգային տագնապ է հայտարարել ղարաբաղցիների ու նրանց պայքարը հովանավորող նախնական հայության դեմ, «սրբազան պահանուր հայության դեմ», «սրբազան պատերազմի» է հանում ցեղակիցներին՝ գտնելով, որ «Ստեղծված արտակարգ իրադրության մեջ ադրբեջանական ժողովրդի համար միակ ճանապարհն է՝ մոբիլիզացնել իր բոլոր բարոյական, քաղաքական ու ֆիզիկական ուժերը...»:

Հայերը որոշել են Ադրբեջանական հանրապետության ամբողջությու՜նը խախտել, որովհետև նրանից պոկում են անցյալ հա-

զարամյակներում միշտ իրեն պատկանած Լեռնային Ղարաբաղը...

Եվ հակապատմական ու հակագիտական, պարզապես կեղծիքին հավատացողներ էլ են հայտնվում: Հավատում են կամ, թերևս, ձևացնում են, թե հավատում են: Հեռու-մոտիկ ժողովուրդների բազմապիսի զանգվածներ իրենց զայրույթն են արտահայտում վերակառուցումը տարածքային վերաձևումների տեղ ընդունողների դեմ... Եվ բարձր ամբիոններից հնչում է այն համոզումը, որ եթե հայերն իրենց համարում են Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի տերը, ապա հակառակ կողմի պատմաբաններն էլ նույն հաջողությամբ կարող են ապացուցել իրենց պատմական իրավունքն այդ նույն մարզի վրա:

Հին, ոչ «բարի» ժամանակներում Ռուսաստանի արքունիքում, նրա շահերը ներկայացնող գործակալություններում անխախտ սովորություն է եղել՝ որևէ երկիր մտնելուց առաջ պիտի բազմակողմանիորեն ուսումնասիրեին այն, իմանային ո՛վ է տերը, ինչացու՛, ինչի՛ ընդունակ, մանավանդ՝ երկիրն ի՛նչ է ներկայացնում իրենից: Երբ Եկատերինա Բ-ի զորքերը պիտի մտնեին Անդրկովկաս, նրա գործակալներն արդեն ուսումնասիրել էին, գիտեին, որ «Ղարաբաղի մարզը կազմված է հայ ժողովրդից», որին գլխավորում են հայ մելիքները, չնայած սրանց գլուխ էլ կանգնած է Պարսից շահի դրածո մահմեդական խանը: Երբ Անդրկովկասը միացվեց Ռուսաստանին, արքունիքը նշանավոր պատմաբանների ու երկրաբանների, տնտեսագետների ու աշխարհագետների, ռազմական ու այլազան մասնագետների պատկառելի խմբեր ուղարկեց նվաճված մարզերը, որպեսզի հանգամանալից ուսումնասիրություններով պարզեն սրանց պատմական, աշխարհագրական, ազգագրական, վիճակագրական անցյալ ու ներկա պատկերները, գծեն հեռանկարները: Այսպես են ստեղծվել տասնյակ ու տասնյակ այն վավերագրական ժողովածուները, որոնք նվիրված են Անդրկովկասին, նրա մարզերին ու շրջաններին և լիքն են գիտական ամենատարբեր ու ճշգրիտ տեղեկություններով և լավագույն ուղեցույցներ էին հանդիսանում ոչ միայն արքունիքի ներկայացուցիչների, այլև տեղացիների համար, նրանց օգնում էին ճանաչելու երկիրը, նրա բնակիչներին, հասկանալու և ծրագրելու կատարելիք ամեն մի քայլ...

Ես ինչ-որ տեղ կարդացել եմ ու հիշում եմ. XIX դարի կեսերին Արարատյան դաշտում տեխնիկական բույսեր տարածելու մարմաջ ունեցող մասնագետները ռուս ցարին են ներկայացրել մի ծրագիր, որի էական մասն է կազմել Սևանի ջրերը բաց թողնելու եղանակով ոռոգման հզոր ցանցի ստեղծումը: Ցարը խոհեմաբար մերժել է այդ ծրագիրը՝ ասելով. «Տեխնիկական բույսեր ուրիշ տեղերում էլ կարող եք աճեցնել, իսկ Սևանի նման լիճն ուրիշ տեղ չեք ստեղծի»:

Ցարը հասկանում էր, որ յուրաքանչյուր երկիր ունի իր անկրկնելի հմայքը և այն պիտի պահպանել պետական հսկողության տակ: Իսկ մեր սոցիալիստական հասարակարգում չհասկացանք այդ սովորական բանը և հիմա ոտ ու ձեռ ենք ընկել կորցրածը հետ բերելու համար:

Սա, իհարկե, ի միջի այլոց:

Հիմա դառնանք պատմությանը և նրա շուրջ հյուսվող սարդոստայններին:

Խորհրդային անցյալ տասնամյակների գործն ու փորձը մղում են տխուր խորհրդածությունների: Փորձենք հիշել, թե երկրի ղեկավարներին, նույնիսկ ականավոր մտավորականներին որքան էին հետաքրքրում այս կամ այն ազգի պատմությունն ու ճակատագիրը (չհաշված բացառիկ դեպքերը): Կար ինտերնացիոնալ վիթխարի մի ընտանիք, որի կտուրի տակ բոլոր ազգերը հավասարիրավ էին, իսկ ավելի ճիշտ՝ ա՛ն-իրավ, որովհետև ազգային ցավի ու հոգսի մասին խոսելը նշանակում էր ոտնձգություն ինտերնացիոնալ տան ամբողջության ու աներերության դեմ:

Անեկդո՞տ է, թե՞ ճշմարտություն. ասում են՝ Նիկոլայ Պոդգոռնին, մեր Մատենադարանում քրիստոնեական-աստվածաբանական հնամենի ձեռագիր մատյանները, մանրանկարչական ու այլազան գոհարները հիացմունքով դիտելուց հետո մի այսպիսի հարց է ունեցել և տվել է մատենադարանականներին. «Այնուամենայնիվ դուք՝ հայերդ, ի՞նչ հավատ ունեք, իսլա՞մ, թե՞ քրիստոնեություն»:

Վերջին մեկուկես—երկու տարվա դեպքերը համառորեն ցույց են տալիս, որ այս մակարդակից շատ էլ առաջ չենք անցել: Միութենական լրատվական մարմինները ներկայացրել են հարյուրավոր մարդկանց՝ գիտնականի ու բանվորի, բարձրաստիճան զինվորականի ու գյուղատնտեսության առաջավորի ելույթները Լեռնային Ղարաբաղի հիմնահարցի առթիվ: Դարձյալ չհաշված չնչին բացառությունները, որ ստեղծել են գործին մոտիկից ու բանիմացությամբ ծանոթ առանձին անհատներ, մնացած բոլոր դեպքերում գլուխ է բարձրացրել,— դրությունն այսպես համարենք,— անտեղյակությունը: Ո՞նց թե մի փոքր մարզ վեր կենա, իր նեղ ազգային



ցավը հաղորդի այս ահռելի սոցիալիստական համակեցությանը: Եվ առհասարակ ի՞նչ ազգային ցավ կարող է լինել, երբ իմ կոլեկտիվում 15 ազգերի ներկայացուցիչներն են աշխատում, նրանցից ոչ ոք ոչ ոքի երեսով չի տալիս ազգությունը,և իսկի ոչ ոք չի էլ հիշում, թե ինքն ի՞նչ ազգի է պատկանում...

Ահա, այսպե՛ս. 15 ազգերի ներկայացուցիչներից ոչ ոք չի հիշում, թե ինքն ի՞նչ ազգության է պատկանում, և սա համարվում է օրինակելի ու պարտադիր վարք այն հասարակության համար, որ կառուցել էինք 70 տարվա աղմուկ-աղաղակով, անընդհատ գոտի սեղմելով և տասնյակ միլիոնավոր զոհեր տալով:

Հիշում եմ «Комсомольская правда» թերթի Կիրգիզական ԽՍՀ թղթակցի հրապարակած մի հոդվածը, որով դատապարտում էր Չինգիզ Այթմատովին: Իր ազգի ապագայով մտահոգված գրողը բողոքել էր, որ Կիրգիզիայի մայրաքաղաքում մայրենի լեզվով դպրոցներ, մանկապարտեզներ ու մանկամսուրներ չկան: «Դիտավորյալ» մի մանկապարտեզ բացեցին, և սրա դռներն էլ փակ մնացին, որովհետև մայրաքաղաքի բնակիչները չցանկացան իրենց երեխաներին տալ կիրգիզերեն մանկապարտեզ: Եվ, ահա՛, թղթակիցն այս օրինակն էր Այթմատովի երեսով տալիս՝ ա՞յդ էիր պահանջում. կիրգիզական մանկապարտեզ են բացել քո մայրաքաղաքում, և ոչ մի կիրգիզ իր երեխային չի ուզում տալ այդ մանկապարտեզը:

Տեսնո՞ւմ եք աներեսությունն ուր է հասել. կիրգիզին խորթացրել են իր լեզվից, իր ազգային ակունքներից և դեռ համարձակվում են հպարտանալ այդ խայտառակությամբ, կշտամբում են դրա դեմ իր ցավն ու զայրույթը մռնչացող գրողին:

Չգիտության, չկամության ու թմբիրի այս մթնոլորտում էր, որ վերստին բարձրացավ Լեռնային Ղարաբաղի հայության հիմնահարցը:

Այն հանկարծակիի պիտի բերեր շատ-շատերին, բայց ո՛չ ադրբեջանական կողմին: Չնայած հայտնվեցին երեսպաշտներ, մանավանդ հանրապետության նախկին ղեկավարներից, որոնք շտապեցին ամբողջ երկրով մեկ տարփողել, թե դա նախկինում չեղած-չտեսնված մի բան է, միայն այժմ հրահրված, ասպարեզ քաշված, այն էլ դրսից՝ Հայաստանի հանրապետության ղեկավարների և մանավանդ արտասահմանյան դաշնակցական կենտրոնների նախաձեռնությամբ:

Այսօրինակ հայտարարություններից հատկապես երկուսը շատ են հատկանշական: Այդ պատճառով էլ հարկ եմ համարում կանգ առնել դրանց վրա:

Ղարաբաղյան շարժման հենց առաջին օրերին էր, ասպարեզ նետվեց Ադրբեջանի կուսակցության Կենտկոմի նախկին առաջին քարտուղար Իմամ Մուստաֆաևը և հայտարարեց, թե ինքը որ սեփական աչքերով էլ տեսնի, դարձյալ չի հավատա: Ո՞նց թե ղարաբաղցի հայը վեր է կացել, իր դժգոհությունն է արտահայտում ադրբեջանական ղեկավարության դեմ, երբ հանրապետության մեջ ամենաբարեկեցիկ կյանքը Ղարաբաղում է՝ նյութական-սոցիալական, մշակութային և ուրիշ ամեն տեսակետից: Հետևապես,— պնդում էր Մուստաֆաևը,— ղարաբաղցին երբեք հանրապետության ղեկավարությունից դժգոհ լինելու ոչ մի պատճառ չի ունեցել:

Ուրեմն, որ սեփական աչքով էլ տեսնի, դարձյալ չի հավատա, թե ղարաբաղցի հայը դժգոհ է իր վիճակից և մանավանդ՝ ցանկանում է մարզը միացնել Հայաստանին:

Իսկ ես շատ լավ հիշում եմ ոչ հեռու 1957 թ. աշնանը հենց այս աներևակայելի-անհավատալի երևույթից գլուխը կորցրած Մուստաֆաևին:

Ադրբեջանի ԿԿ Կենտկոմի բյուրոն ԼՂ մարզկոմի բյուրոյի հաշվետվությունը պիտի լսեր ու քններ և հրավիրել էր բյուրոյի անդամներին: Մարզկոմի առաջին քարտուղար Եղիշե Գրիգորյանը զեկուցում էր տնտեսության և «մշակութային առաջընթացի» քայլերի մասին, երբ Մուստաֆաևը հարձակվեց նրա վրա.

— Այդ թվերի ու փաստերի տեղը մենք էլ գիտենք: Դու ա՛յն ասա, թե ինչպե՞ս է, որ Ղարաբաղի մարզն առանձնացրել եք հանրապետությունից և ուզում եք միացնել Հայաստանին:

Ըստ երևույթին նախապես պայմանավորվել էին, թե ինչի՛ց են սկսելու և ինչպե՛ս են վարելու հետագա ընթացքը: Առաջինի այս քար գցելը նշան էր, որպեսզի տարբեր կողմերից վրա տան... Երբ արդեն կարծում էին՝ քարկոծված Գրիգորյանին մնացել է մեղայական խոսք ասել ու հպատակության երդում տալ, սա կանգնեց շիտակ և խրոխտորեն ասաց.

— Այստեղ չէ, որ պիտի լուծվի մեր մարզն Ադրբեջանից բաժանելու և Հայաստանին միացնելու հարցը: Այնտեղ, ուր նման հարցեր կարող են լուծվել, իմ կարծիքը կհարցնեն, ես էլ կասեմ և չեմ ամաչի իմ ազգի առաջ: Հասկացա՞ք, ընկեր Մուստաֆաև:

Ասաց ու նստեց: Դրանից հետո մեռելատան էր նման այն սենյակը, ուր բյուրոյի նիստն էր գնում: Վերջում ոչինչ չա-

առղ մի որոշում կարդացին, մեզ ճանապարհ դրին:

Վերադարձին Գրիգորյանը, մարզկոմի երկրորդ քարտուղար Սարգիս Աբրահամյանն ու ես մի մեքենայում էինք: Ամբողջ ճանապարհին փորձում էինք հասկանալ, թե ինչի՛ց էին հերսոտված Կենտկոմի բյուրոյի անդամները: Եվ մեզ համար պարզեցինք, որ պատճառը վերջին երկու տարում երկու անգամ պատվիրակությամբ Երևանում մեր երևալն է եղել. 1956-ի վերջին մասնակցել էինք Դ. Դեմիրճյանի, 57-ի հոկտեմբերին էլ, հենց մի ամիս առաջ, Ավ. Իսահակյանի թաղմանը...

Գրիգորյանը, որ բարեկիրթ մարդ է, իմ ջահել ու անփորձ ականջների համար անսովոր, պարարտ ու բազմահարկ մի հայհոյանքով պատվեց Կենտկոմի բյուրոյի անդամներին:

— ... Ուրեմն, մեր սիրելի գրողների թաղմանը մասնակցելու իրավունքն էլ չենք ունեցել, հա՞, մեր այս ինքնավար մարզում[1]:

Քիչ ժամանակ անց ԽՍՀՄ Գերագույն խորհրդի դեպուտատների թեկնածություններ պիտի առաջադրեին և Ե. Գրիգորյանին շրջանցեցին[1]: Մի երկու ամիս անց էլ եկան, կուսակցական մարզկոմի պլենում արին և, Գրիգորյանի փոխարեն, մարզկոմի առաջին քարտուղար նշանակեցին ոմն Նիկոլայ Շահնազարովի, որը եղել էր Նախիջևանի Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալը և իր կյանքի մի ամբողջ տասնամյակը նշանավորել էր հայկական այդ մարզը հայաթափ անելուն մատուցած մեծ վաստակով:

Այս Շահնազարովն իր տերերին այնպես բացահայտ ու բթամտորեն էր ծառայում, որ երբ մարզի մտավորականությունը ոտքի ելավ նրա դեմ, նրան Ղարաբաղ բերած հովանավորներն անգամ չհամարձակվեցին պաշտպանել և հանեցին, տարան Բաքու:

Եվ այսպես. Իմամ Մուստաֆաևն ուզում է մարդկանց հավատացնել, թե Ղարաբաղի հայ բնակչությունը ոչ մի ժամանակ Ադրբեջանի ղեկավարությունից դժգոհ լինելու պատճառ չի ունեցել:

Նույն անամոթ սուտը, այս անգամ արդեն կուսակցության 1989 թ. ապրիլյան պլենումի ամբիոնից, արտասանեց տխրահռչակ Հեյդար Ալիևը: Նա էլ ուզում էր հավատացնել, որ իր տիրապետության տասնհինգ տարիները երանության, եղբայրական հոգատարության ժամանակ են եղել մարզի համար («սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակով Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի ցուցանիշները գերազանցում են Ադրբեջանի ու Հայաստանի միջին-հանրապետական ցուցանիշները». «Պրավդա», 1989, ապրիլի 27):

Եվ այն պլենումի դահլիճում չգտնվեց մեկը, որ վեր կենար, հակառակն ասեր ու հաստատեր, որ Ղարաբաղում ինչ-որ արվել է, եղել է հանրապետության ղեկավարության անհռելի արգելափակոցների հաղթահարումով:

Բայց մի՞թե այդ բռնակալն ու նրա նմանները այնպես էլ չպիտի հասկանան, որ արցախահայության շարժումը հացի կռիվ չէ, այլ պայքար ոտնահարված ազգային արժանապատվության, ազատության և, վերջապես, ազգային միասնության համար:

Ալիևը Ադրբեջանի կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար էր դարձել արցախահայության 1962—63 թթ. ընդվզումները և 1965—67 թթ. համառ պայքարը հանրապետության Անվտանգության կոմիտեի օղակներով «մարսած» լինելուց հետո: Նա գիտեր 1966 թ. մարզից հիսուն հազար ստորագրություններով երկրի գերագույն ղեկավարությանը հասած դիմումների մասին և այնքան հիմար չէր, որ մտածեր, թե դրանք ոչինչ չարժեն: Ուստի մարզի ղեկավար դարձրեց Բորիս Կևորկովին՝ հանձնարարելով ամենակարճ ժամանակամիջոցում Ղարաբաղը դարձնել Նախիջևան:

Երևի Կևորկովն էլ մտածում էր, թե իր գործունեության եզրափակիչ մասը պիտի կազմի մարզի հայ տղամարդկանց, նույնիսկ Սերգեյ Բաղդասարյանի քանդակած պլևոր ղարաբաղցու թլպատումը: Դրա համար էլ մի այնպիսի եռանդով ու ջանադրությամբ գործի անցավ, որ ընդամենը մեկ ամսում, 1975 թ. մարտին, մարզի կուսակցական, խորհրդային, հասարակական բոլոր բարձր ու ցածր կազմակերպությունների ժողովներում ընդունել տվեց մի այսպիսի որոշում. Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը պատմության ամբողջ ընթացքում ո՛չ եղել է Հայաստանի կազմում, ո՛չ կա, ո՛չ էլ ուզում է լինել:

Եվ խեղկատակ Կևորկովն ու նրան բեմահարթակ նետած Հեյդար Ալիևը հույս ունեին այդ որոշումների տրցակն իբրև ամենակտրուկ հաղթաթուղթ օգտագործել, հենց որ հայ «էքստրեմիստները» իրենց արտասահմանյան սադրիչների հրահրումով մեկ անգամ էլ բարձրացնելու լինեն Ղարաբաղի հարցը:

[1] Ականջը կանչի՜ շատ հարգելի Եղիշե Պետրոսի Գրիգորյանի: Ասում են՝ Մարտակերտի շրջանի իր հայրենի գյուղում է անցկացնում ազնվորեն վաստակած իր ծերությունը:



Երկու տարի հետո Կևորկովն ստիպված պիտի լիներ հնդիկ ու իրաքցի կոմունիստ գործիչների հետ ունեցած պաշտոնական զրույցի ժամանակ խոստովանել, որ 1920-ական թվականների սկզբին Ղարաբաղն Ադրբեջանի կազմի մեջ է մտցվել բնիկ հայության կամքին հակառակ: «Եղել են մարդիկ,— բացատրել է մարզի տնօրինությունն ստանձնած խրտվիլակը,— որ ասել են՝ թող մենք վատ ապրենք, բայց կապված լինենք Հայաստանի հետ... Դա միայն արտահայտություն էր հետամնացության և անհասկացողության» («Проблемы мира и социализма», 1977, № 6, էջ 12):

Ազգային ու մարդկային ամենասովորական զգացումներից պարպված արարածները երբեք էլ չեն հասկանում, թե այն ինչպե՜ս է լինում, որ մարդ սեփական ազգի հետ ու նրա համար պատրաստ է լինում կրելու ամեն մի զրկանք, ենթարկվելու ամեն մի փորձանքի: Կևորկովը 13 տարի Ղարաբաղում ծառայեց ալիևներին՝ առանց գոնե փորձելու հասկանալ բաղձանքներն այն ժողովրդի, որի վրա գլխավոր էին կարգել իրեն... Մինչև որ 1988-ի արցախյան շարժման առաջին իսկ ալիքը մարզից դուրս շպրտեց նրան, ինչպես որ գարնանային սելավն է քշում իր ճանապարհը փակող ամեն մի աղտեղություն:

Ուրիշ որևէ պարագայում ես թերևս չհիշեի այսպիսի մանր ու ճղճիմ բաները: Բայց հիմա Ադրբեջանում նախկին ու ներկա ղեկավարները, մանավանդ պատմաբանի քղամիդ հագած համբակները մեր հիմնահարցը քաշում, մտցնում են իրական կյանքի հետնախորշերը, փորձում են այն ներկայացնել գորշ ու գեշ կերպարանքով, և հարկ է լինում, որ մենք՛ հարցն արևերես հանելու և իր պարզ երեսով ցույց տալու համար հետնախորշեր էլ մտնենք:

Օրինակ, իմ ի՞նչ գործն է, թե իրեն գիտնական համարող, նույնիսկ գիտական ամենաբարձր կոչումներով ու աստիճաններով զարդարված մեկն ինչպես է պատկերացնում իր ադրբեջանական ազգի ծագումնաբանությունը: Ժամանակ է եղել, իրենց ազգի ակունք են համարել Մարաստանը. իբր իրենք մարերի ժառանգներն են: Մտածում էին, որ այդպիսով դյուրանում է միջնադարյան մշակութային ու գրական հուշարձաններ ձեռք բերել, նվաճել մի Նիզամի Գյանջևի: Հոգ չէր, որ Նիզամին գրել է պարսկերեն, իսկ իրենց լեզուն ծնված օրից մինչև այսօր թուրքական է, այսինքն՝ պատկանում է լեզվական մի ընտանիքի, որը հեռավոր կերպով իսկ առնչություն չի ունեցել և չունի հնդեվրոպական պարսկերենի հետ:

Ըստ երևույթին Նիզամին քիչ էր ժամանակի մշակութային մթնոլորտ ու միջավայր պատկերացնելու համար: Պետք էին նոր անուններ: Եվ առանց որոնելու այդ անուններն էլ գտան՝ Մովսես Կաղանկատվացի, Մխիթար Գոշ, նույնիսկ Կիրակոս Գանձակեցի[1]... Ի՞նչ փույթ, որ սրանց գործերը մեզ հայերեն են հասել: Կարելի է ենթադրել, ապա անմիջապես էլ պնդել, որ մարդիկ նախապես գրել են աղվաներեն, հայերը հայերենի վերածելով՝ աղվաներեն բնագրերը ոչնչացրել են:

Բայց ենթադրենք, թե այդպիսի հրեշավոր բաներ էլ հնարավոր համարեցինք, աղվաներենի կամ աղվանների հե՞տ ինչ գործ ունեն այսօրվա ադրբեջանցիները:

Ունե՞ն, ունե՞ն: Ինչպե՞ս կարող են չունենալ, երբ Ստալինից ու Բաղիրովից կարգադրություն է եղել, որ ադրբեջանական ժողովրդի համար տեղական արմատներ հայթայթվեն:

Բայց հայ հեղինակներին աղվանականացնելու, ապա և ադրբեջանականացնելու համար անհրաժեշտ պիտի լիներ նախապես վերացնել նրանց հայկականությունը հաստատող նշանները: Եվ այս ուղղությամբ էլ գործի անցան: Ադրբեջանի ակադեմիայում գործի դրին մի պնակալեզ ռուսահայի (Տիգրան Տեր-Գրիգորյան), որը ռուսերենի թարգմանեց Կիրակոս Գանձակեցու «Հայոց պատմությունը»՝ նրանից կտրելով-դեն շպրտելով վերնագրի «հայոց» և ներսի բոլոր այն արտահայտությունները, որոնք առնչություն ունեն դրա հետ: Օրինակ, Կիրակոս պատմիչը, Խաչենի տեր Հասան-Ջալալի հայրենաշեն

[1] Այս հեղինակների «աղվանացման» զավեշտական պնդումներին մասնակից են եղել նաև հայ հեղինակներ, մինչև իսկ Հովսեփ Օրբելին: Մեծ գիտնականին կանչել են բարձր պաշտոնյաները, ասել են՝ ադրբեջանական ժողովրդին պիտի կտրենք թուրքական միջավայրից, անհրաժեշտ է ստեղծել տեղական կապեր, բնաշխարհիկ արմատներ: Եվ Օրբելին լծվել է գիտության, պատմության, առհասարակ մարդկային սովորական տրամաբանության հետ անհամերաշխ այս գործին: Մի՛ փորձեք ծանոթանալ նրա այն հիմնազուրկ պնդումներին, որոնց էությունն է ցույց տալ, որ աղվան է Մխիթար Գոշը և աղվանական՝ նրա հայաշունչ ժառանգությունը:

յին գիտության կողմից, կաչում են առաջինին՝ միաժամանակ սկյութների հանրահայտ բնակավայրը (հյուսիսային Մերձսևծովյան շրջանները) փոխադրում Ադրբեջան, որպեսզի իրենց իրավունք վերապահեն պնդելու հետևյալ զառանցանքը. «...Скифы — это древние тюркские племена, которые испокон веков жили на территории Азербайджана и сыграли решающую роль в формировании азербайджанского народа, его языка и истории»[1].

Բայց որովհետև սույն գիտնական այրերին իր հետևից տանում է գերխնդիրը՝ Արցախ-Ղարաբաղը հին ադրբեջանական բնօրրան շինելը, ապա չեն ուշանում այս և կապել սկյութական-սակական սայլին. ուրեմն, քանի «ապացուցեցին», որ սակերն են եղել Ադրբեջանի առաջին բնակիչներն ու ադրբեջանցիների նախնիները, ապա աներկբայելի է նաև, որ Արցախի հին բնակչությունը ևս թուրքական-սակական է եղել, դրա համար էլ «այժմյան Ղարաբաղի հինավուրց անունը՝ «Արսակ» [նշանակում է]սակերի երկիր»[2]:

Ասել են՝ Արցախն ադրբեջանցիների երկիր է, ոչ ոք չի հավատացել:

Ասել են՝ Արցախն աղվանների, այսինքն՝ ադրբեջանցիների այսպես կոչված նախնիների հայրենիքն է եղել, դա ևս լուրջ բանի տեղ դնող չկա:

Գիշեր-ցերեկ տնքացել-ճռռացել, գյուտ են արել. «Արցախը» պիտի ուղղել, դարձնել «Արսակ»: Իսկ սա էլ նշանակում է «սակերի երկիր»:

Քաղաքակիրթ աշխարհում պատմաբանին ընդունում են որպես իմաստուն կարգավորիչի, որն անցյալի քաոսի մեջ մտնելով՝ ամեն ինչ կարգ ու կանոնի տակ է դնում, վերականգնում իրականության տրամաբանական ընթացքը: Ադրբեջանում պատմաբան կոչվածները խնդիր ունեն հակառակն անելու: Նրանց գրչի տակ տրամաբանական պատմությունը վեր է ածվում մի քաոսի, որից իրենք էլ բան չեն հասկանում, ա՛յն բանը, որ կանխապես իրենք էին ծրագրել:

Անցյալ տարի Զիա Բունիաթովը հրապարակել էր անսովոր մի հոդված, որի մեջ ջախջախիչ հարվածներ էր հասցնում շումերներին ու սակերին, մարերին ու կասպերին, այս շարքում Նոյ նահապետին ու նրա ժառանգներին թուրքալեզու ադրբեջանցիներ (կամ ադրբեջանալեզու թուրքեր) հայտարարողներին: Ընթերցողը պիտի զարմանար, թե ի՞նչ է պատահել. չէ՞ որ թուրքացնելու-ադրբեջանականացնելու այս շարժումն ինքն է սկզբնավորել ու գլխավորել, ինքն է հովանավորել իր ղեկավարած գիտական հանդեսում ու Արևելագիտության ինստիտուտում: Չէ՞ որ ինքն էր, որ 60-ական թվականներից ի վեր հայ գործիչներին աղվաններ-ադրբեջանցիներ էր «դարձնում», Արևելահայաստանի ամբողջ բնակչությունը՝ նախկին աղվաններ, այսինքն՝ արմատում թուրքերի ցեղակիցներ: Այդ ո՞նց է, որ ապրող ու իրենց ազգային ինքնությունը պաշտպանող հայերին կարելի է «թուրքացնել», իսկ պատմության թատերաբեմը դարեր ու հազարամյակներ առաջ թողած, անպաշտպան շումերներին, սակերին, նույնիսկ այդ առասպելական Նոյին չի կարելի...

Բացատրությունը մեկն է, բայց երևի ավելորդ. Բունիաթովն այնուայնայնիվ այնքան բան հասկացավ, որ իր աշակերտներն ու հետևորդները համը հանում են ու պարզապես դարձել են ծիծաղելի: Դրանից ելք որոնելով՝ կեղծարարության մտավ նոր ասպարեզ՝ նոր ու նորագույն պատմությունը: Եվ այստեղ էլ իր առաջին քայլերը նշանավորեց այնպիսի ավերածություններով (հայերն Անդրկովկասի բնիկներ երբե՛ք էլ չեն եղել, նրա՞նք են օսմանյան թուրքերին կոտորել և ոչ թե հակառակը, Սումգայիթում է՜լ նրանք են իրար կոտորել, և բոլոր նրանք, ովքեր հայերի մասին դրական խոսք են ասում կամ գրում, չարագործներ են ու հացկատակներ)...

Պատմությունը մեծ խորհուրդ ունի. այն պիտի սովորել և ուղենիշ դարձնել ներկան ու վաղը ճշմարիտ ապրելու համար:

Պատմությունը, որքան էլ անդարձ անցյալ և մեռյալ երևույթների շարան է, գիտե դաժանորեն պատժել իր հետ վտանգավոր խաղի մեջ մտնողներին:

ԲԱԳՐԱՏ ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր,
ՀԽՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի
առաջատար գիտաշխատող

[1] Անդ, էջ 46:
[2] Անդ, էջ 61:



# ԱՆՀԱՏԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ԵՎ ԴՐԱ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԶԵԿՈՒՅՈՒՄԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

**1956 թվականի փետրվարի 25**

Ընկերնե՛ր: XX համագումարին Կենտրոնական կոմիտեի ներկայացրած հաշվե-
տու զեկուցման մեջ, համագումարի պատգամավորների մի շարք ելույթներում, ինչ-
պես նաև նախկինում ԽՄԿԿ Կենտկոմի պլենումներում քիչ չի խոսվել անհատի
պաշտամունքի և դրա վնասակար հետևանքների մասին:

Ստալինի մահից հետո կուսակցության Կենտրոնական կոմիտեն սկսեց խստիվ
և հետևողականորեն վարել մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ մեկ անհատի մեծար-
ման, նրան աստծո նման գերբնական հատկանիշներ ունեցող ինչ-որ գերմարդու
վերածելու անթույլատրելիությունը բացատրելու կուրս: Այդ մարդը կարծես թե ա-
մեն ինչ գիտե, ամեն բան տեսնում է, բոլորի փոխարեն մտածում է, ամեն ինչ կա-
րող է անել. նա անսխալական է իր արարքներում:

Նման ըմբռնում մարդու մասին և, խոսելով կոնկրետ, Ստալինի մասին, արմա-
տավորվում էր մեզանում շատ տարիներ:

Տվյալ զեկուցման մեջ խնդիր չի դրվում տալ Ստալինի կյանքի ու գործունեու-
թյան համակողմանի գնահատականը: Ստալինի ծառայությունների մասին դեռևս
նրա կենդանության օրոք գրված են միանգամայն բավարար քանակությամբ գրքեր,
բրոշյուրներ, ուսումնասիրություններ: Հանրահայտ է Ստալինի դերը սոցիալիստա-
կան հեղափոխության նախապատրաստման և իրականացման գործում, քաղաքա-
ցիական պատերազմում, մեր երկրում սոցիալիզմի կառուցման համար մղված պայ-
քարում: Դա բոլորին քաջ հայտնի է: Այժմ խոսքը կուսակցության և՛ ներկայի, և՛
ապագայի համար հսկայական նշանակություն ունեցող հարցի մասին է՝ խոսքն այն
մասին է, թե ինչպես է աստիճանաբար գոյացել Ստալինի անձի պաշտամունքը, որը
որոշակի փուլում վերածվեց կուսակցական սկզբունքների, կուսակցական դեմոկրա-
տիայի, հեղափոխական օրինականության մի շարք խոշորագույն և միանգամայն
ծանր աղավաղումների աղբյուրի:

Այն կապակցությամբ, որ ոչ բոլորն են դեռևս պատկերացնում, թե գործնակա-
նում ինչի է հանգեցրել անհատի պաշտամունքը, ինչպիսի հսկայական վնաս է
հասցրել կուսակցությունում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի խախտումով և
մեկ անձի ձեռքում անընդգրկելի, անսահմանափակ իշխանության կենտրոնացու-
մով, կուսակցության Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում զեկուցել
Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XX համագումարին այդ
հարցի վերաբերյալ նյութերը:

***

Թույլ տվեք, ամենից առաջ, ձեզ հիշեցնել, թե ինչպիսի խստությամբ էին դա-
տապարտում մարքսիզմ-լենինիզմի դասականները անհատի պաշտամունքի ամեն մի
դրսևորում: Գերմանական քաղաքական գործիչ Վիլհելմ Բլոսին[2] հասցեագրված նա-
մակում Մարքսը հայտարարել է. «... Նողկանք տածելով դեպի անհատի ամեն մի
պաշտամունք, ես Ինտերնացիոնալի գոյության ժամանակ երբեք թույլ չէի տալիս
հրապարակել այն բազմաթիվ դիմումները, որոնց մեջ ճանաչվում էին իմ ծառայու-

թյունները և որոնցով ինձ ձանձրացնում էին զանազան երկրներից,— դրանց ևս երբեք չէի էլ պատասխանում, եթե չասեմ, որ երբեմն կշտամբում էի դրանց համար։ Էնգելսը և ես առաջին անգամ կոմունիստների գաղտնի ընկերության մեջ մտանք այն անխախտ պայմանով, որ կանոնադրությունից դուրս կշպրտվի այն ամենը, ինչ նպաստում է հեղինակությունների առջև սնահավատորեն խոնարհվելուն (Լասալը[3] հետագայում հիշտ հակառակ ձևով էր վարվում)...» (Соч. К. Маркса и Ф. Энгельса, т. XXVI. изд. 1-е, стр. 487—488)։

Քիչ ավելի ուշ Էնգելսը գրել է.

Ե՛վ Մարքսը, և՛ ես, մենք միշտ դեմ ենք եղել առանձին անձանց նկատմամբ ամեն տեսակ հրապարակային ցուցադրությունների, բացառությամբ միայն այն դեպքերի, երբ դա ուներ որևէ նշանակալից նպատակ. իսկ ամենից շատ մենք դեմ ենք եղել այնպիսի ցուցադրությունների, որոնք մեր կենդանության օրոք վերաբերվելիս լինեին անձամբ մեզ» (Соч. К. Маркса и Ф. Энгельса. т. XXVIII, стр. 385)։

Հայտնի է հեղափոխության հանճար Վլադիմիր Իլյիչ Լենինի մեծագույն համեստությունը։ Լենինը միշտ շեշտում էր ժողովրդի՝ որպես պատմության ստեղծողի, դերը, կուսակցության՝ որպես կենդանի, ինքնագործ օրգանիզմի, ղեկավար և կազմակերպիչ դերը, Կենտրոնական կոմիտեի դերը։

Մարքսիզմը չի ժխտում բանվոր դասակարգի պարագլուխների դերը հեղափոխական-ազատագրական շարժումը ղեկավարելու գործում։

Մեծ նշանակություն տալով մասսաների առաջնորդների և կազմակերպիչների դերին՝ Լենինը, դրա հետ մեկտեղ, անողոք խարազանում էր անհատի պաշտամունքի ամեն մի դրսևորում, անհաշտ պայքար մղում «հերոսի» և «ամբոխի» վերաբերյալ մարքսիզմի ոգուն խորթ էսէռական հայացքների դեմ, «հերոսին» մասսաներին, ժողովրդին հակադրելու փորձերի դեմ։

Լենինն ուսուցանում էր, որ կուսակցության ուժը մասսաների հետ անխզելի կապի մեջ է, այն բանի մեջ, որ կուսակցության հետևից է գնում ժողովուրդը՝ բանվորները, գյուղացիները, մտավորականությունը։ «Միայն նա կհաղթի և իշխանությունն իր ձեռքում կպահի,— ասում է Լենինը,— ով հավատում է ժողովրդին, ով սուզվում է կենդանի ժողովրդական ստեղծագործության աղբյուրի մեջ» (Վ. Ի. Լենին, Երկ., հ. 26, էջ 351*)։

Լենինը հպարտությամբ էր խոսում բոլշևիկյան կուսակցության՝ որպես ժողովրդի առաջնորդի և ուսուցչի մասին, նա կոչ էր անում ներկայացնել գիտակից բանվորների դատին, իր կուսակցության դատին բոլոր կարևորագույն հարցերը։ Նա հայտարարում էր. «Մենք հավատում ենք մեր կուսակցությանը, մենք նրա մեջ ենք տեսնում մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը» (Երկ., հ. 25, էջ 327)։

Լենինը վճռականորեն հանդես էր գալիս խորհրդային պետության համակարգում կուսակցության ղեկավար դերն անտեսելու կամ թուլացնելու ամեն կարգի փորձերի դեմ։ Նա մշակեց կուսակցական ղեկավարման և կուսակցական կյանքի նորմերը, շեշտելով, որ կուսակցության ղեկավարման բարձրագույն սկզբունքը նրա կոլեկտիվ լինելն է։ Դեռևս նախահեղափոխական տարիներին Լենինը կուսակցության Կենտրոնական կոմիտեն անվանում էր ղեկավարների կոլեկտիվ, կուսակցության սկզբունքների պահապան ու մեկնաբան։ «Կուսակցության սկզբունքները,— նշում էր Լենինը,— համագումարից մինչ համագումար պահպանում և դրանք մեկնաբանում է Կենտրոնական կոմիտեն» (Երկ. հ. 13, էջ 160)։

Շեշտելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի դերը, նրա հեղինակությունը, Վլադիմիր Իլյիչը նշում էր. «Մեր Կենտկոմը կազմավորվել է որպես խիստ կենտրոնացված և բարձր հեղինակություն ունեցող խումբ...» (Երկ., հ. 33, էջ 577)։

Լենինի կենդանության օրոք կուսակցության Կենտրոնական կոմիտեն կուսակցության և երկրի հիրավի կոլեկտիվ ղեկավարման արտահայտությունն էր։ Լինելով մարտնչող մարքսիստ-հեղափոխական, միշտ անզիջում սկզբունքային հարցերում, Լենինն իր հայացքները երբեք ուժով չէր պարտադրում աշխատանքային ընկերներին։ Նա համոզում էր, համբերատարորեն բացատրում իր կարծիքը ուրիշներին։ Լենինը մշտապես խստորեն հետևում էր այն բանին, որպեսզի իրականացվեին կուսակցական կյանքի նորմերը, պաշտպանվեր կուսակցության կանոնադրությունը, ժամանակին հրավիրվեին կուսակցության համագումարները, Կենտրոնական կոմիտեի պլենումները։

Բացի այն բոլոր մեծագործություններից, որ Վ. Ի. Լենինը կատարել է բանվոր

---

** Չակերտների մեջ հղումները կատարված են Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակությունից (խմբ.)։*



դասակարգի և աշխատավոր գյուղացիության հաղթանակի համար, մեր կուսակցության հաղթանակի և գիտական կոմունիզմի գաղափարների կենսագործման համար, նրա խորաթափանցությունն արտահայտվեց նաև այն բանում, որ նա Ստալինի մեջ ժամանակին նկատեց հենց այն բացասական հատկանիշները, որոնք ավելի ուշ հանգեցրին ծանր հետևանքների։ Մտահոգված կուսակցության ու խորհրդային պետության հետագա բախտով, Վ. Ի. Լենինը Ստալինին տվեց միանգամայն ճիշտ բնութագիր, ընդ որում մատնանշելով, որ պետք է քննարկել գլխավոր քարտուղարի պաշտոնից Ստալինին տեղափոխելու հարցն այն կապակցությամբ, որ Ստալինը չափազանց կոպիտ է, բավարար չափով ուշադիր չէ ընկերների նկատմամբ, քմահաճ է և չարաշահում է իշխանությունը։

1922 թվականի դեկտեմբերին կուսակցության հերթական համագումարին հղած իր նամակում Վլադիմիր Իլյիչը գրում էր. «Ընկ. Ստալինը, դառնալով գլխավոր քարտուղար, իր ձեռքում կենտրոնացրել է անսահման իշխանություն, և ես վստահ չեմ, թե արդյոք նա միշտ կկարողանա՞ բավականաչափ զգուշորեն օգտվել այդ իշխանությունից»։

Այդ նամակը՝ կարևորագույն քաղաքական մի փաստաթուղթ, որը կուսակցության պատմության մեջ հայտնի է որպես Լենինի «կտակ»[4],— բաժանված է կուսակցության XX համագումարի պատգամավորներին։ Դուք այն կարդացել եք և կկարդաք, հավանաբար, ևս շատ անգամ։ Խորամուխ եղեք լենինյան պարզ խոսքերի իմաստի մեջ, որոնցում արտահայտված է Վլադիմիր Իլյիչի հոգատարությունը կուսակցության, ժողովրդի, պետության, կուսակցության քաղաքականության հետագա ուղղության նկատմամբ։

Վլադիմիր Իլյիչն ասում էր.

«Ստալինը չափից դուրս կոպիտ է, և այդ թերությունը, որը լիովին հանդուրժելի է մեր՝ կոմունիստներիս շրջանում և հարաբերություններում, անհանդուրժելի է դառնում գլխավոր քարտուղարի պաշտոնում։ Ուստի ես ընկերներին առաջարկում եմ մտածել Ստալինին այդ պաշտոնից տեղափոխելու եղանակի մասին և այդ պաշտոնում նշանակել մի այլ մարդու, որը մյուս բոլոր տեսակետներից ընկ. Ստալինից տարբերվում է միայն մեկ առավելությամբ, այն է՝ ավելի համբերատար է, ավելի լոյալ, ավելի քաղաքավարի ու ավելի ուշադիր դեպի ընկերները, ավելի քիչ քմահաճ է և այլն»։

Լենինյան այդ փաստաթուղթը հրապարակվեց կուսակցության XIII համագումարի պատվիրակություններին առանձին-առանձին, որոնք քննարկում էին Ստալինի գլխավոր քարտուղարի պոստից տեղափոխելու հարցը։ Պատվիրակություններն արտահայտվեցին հօգուտ այդ պաշտոնում Ստալինին թողնելու, նկատի ունենալով, որ նա հաշվի կառնի Վլադիմիր Իլյիչի քննադատական դիտողությունները և կկարողանա շտկել իր թերությունները, որոնք լուրջ երկյուղ էին պատճառում Լենինին։

Ընկերնե՛ր։ Անհրաժեշտ է կուսակցության համագումարին զեկուցել երկու նոր փաստաթղթերի մասին, որոնք լրացնում են Վլադիմիր Իլյիչի կողմից իր «կտակում» Ստալինին տված լենինյան բնութագիրը։

Այդ փաստաթղթերն են՝ Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայայի նամակը քաղբյուրոյում այն ժամանակ նախագահող Կամենևին և Վլադիմիր Իլյիչ Լենինի անձնական նամակը Ստալինին։

Կարդում եմ այդ փաստաթղթերը.

**1. Ն. Կ. Կրուպսկայայի նամակը.**

«Լև Բորիսիչ,

Մի հակիրճ նամակի առիթով, որ ես գրել եմ Վլադ. Իլյիչի թելադրությամբ, համաձայն բժիշկների թույլտվության, Ստալինը երեկ իմ նկատմամբ թույլ տվեց մի չափազանց կոպիտ արարք։ Ես մեկ օր չէ, որ կուսակցության մեջ եմ։ Բոլոր 30 տարիների ընթացքում ես ոչ մի ընկերոջից չեմ լսել ոչ մի կոպիտ խոսք, կուսակցության և Իլյիչի շահերն ինձ համար պակաս թանկ չեն, քան Ստալինի համար։ Այժմ ինձ հարկավոր է առավելագույն ինքնատիրապետում։ Ինչի մասին կարելի է և ինչի մասին չի կարելի խոսել Իլյիչի հետ, ես գիտեմ ամեն մի բժշկից ավելի լավ, քանի որ գիտեմ, թե ինչն է նրան հուզում, ինչը՝ ոչ, և համենայն դեպս Ստալինից ավելի լավ գիտեմ։ Ես դիմում եմ Ձեզ և Գրիգորիին[5], որպես Վ. Ի.-ի առավել մերձավոր ընկերներին, և խնդրում եմ ինձ պաշտպանել անձնական կյանքում կոպիտ միջամտությունից, անարժան լուտանքից և սպառնալիքներից։ Ես չեմ կասկածում, որ վերստուգիչ հանձնաժողովը (որով իրեն թույլ է տալիս սպառնալ Ստալինը) միա-

ձայն որոշում կկայացնի, բայց ես ոչ ուժ ունեմ, ոչ ժամանակ, որոնք ես կարողանայի վատնել այդ հիմար թայֆամոլության վրա: Ես ևս կենդանի մարդ եմ և իմ նյարդերը ծայրահեղորեն լարված են:

Ն. Կրուպսկայա»:

Այս նամակը Նադեժդա Կոնստանտինովնան գրել է 1922 թվականի դեկտեմբերի 23-ին: Երկու և կես ամիս հետո, 1923 թվականի մարտին, Վլադիմիր Իլյիչ Լենինը Ստալինին ուղարկեց հետևյալ նամակը.

**2. Վ. Ի. Լենինի նամակը.**

«Ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ:

Պատճենը. **Կամենևին և Զինովևին:**

Հարգելի ընկ. Ստալին,

Դուք կոպտություն եք ունեցել կանչելու իմ կնոջը հեռախոսի մոտ և հայհոյելու նրան: Թեպետև նա Ձեզ համաձայնություն է հայտնել մոռանալ ասվածը, բայց, այդուհանդերձ, այդ փաստը հայտնի է դարձել նրա միջոցով իսկ Զինովևին և Կամենևին: Ես մտադիր չեմ մոռանալ այնքան հեշտությամբ այն, ինչ իմ դեմ կատարվել է, թեև ասելն իսկ ավելորդ է, որ կնոջս դեմ արվածը ես համարում եմ արված նաև իմ դեմ: Այդ իսկ պատճառով խնդրում եմ Ձեզ կշռադատել, համաձայն եք արդյոք Դուք ասվածը հետ վերցնել և ներողություն խնդրել, թե գերադասում եք խզել մեր միջև հարաբերությունները: (Ծարժում դահլիճում):

Հարգանքով. **ԼԵՆԻՆ:**

5-ը մարտի 1923 թվական»:

Ընկերնե՛ր: Ես չեմ մեկնաբանի այս փաստաթղթերը: Նրանք պերճախոս կերպով իրենք են վկայում իրենց մասին: Եթե Ստալինը կարող էր այդպես իրեն պահել Լենինի կենդանության օրոք, կարող էր այդպես վերաբերվել Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայային, որին կուսակցությունը լավ է ճանաչում և բարձր է գնահատում որպես Լենինի հավատարիմ բարեկամի և եռանդուն մարտիկի հանուն կուսակցության գործի՝ նրա առաջացման պահից ի վեր, ապա կարելի է պատկերացնել, թե ինչպես է վարվել Ստալինը մյուս աշխատակիցների հետ: Նրա այդ բացասական հատկանիշներն ավելի ու ավելի ծավալվեցին և վերջին տարիներին միանգամայն անհանդուրժելի բնույթ ձեռք բերեցին:

Ինչպես ցույց տվեցին հետագա դեպքերը, Լենինի տագնապն իզուր չէր. Ստալինը Լենինի մահվանից հետո առաջին շրջանում դեռևս հաշվի էր նստում նրա ցուցումների հետ, իսկ հետագայում սկսեց արհամարհել Վլադիմիր Իլյիչի լուրջ նախազգուշացումները:

Եթե վերլուծելու լինենք Ստալինի կողմից կուսակցությունն ու երկիրը ղեկավարելու պրակտիկան, լրջորեն խորհենք այն ամենի մասին, ինչ թույլ է տվել Ստալինը, ապա համոզվում ենք Լենինի տագնապների իրավացիության մեջ: Ստալինի այն բացասական գծերը, որոնք Լենինի օրոք նշմարվում էին միայն սաղմնային տեսքով, վերջին տարիներին ծավալվեցին որպես Ստալինի կողմից իշխանության ծանր չարաշահումներ, որոնք անհամար վնասներ պատճառեցին մեր կուսակցությանը:

Մենք պետք է լրջորեն պարզաբանենք և ճիշտ վերլուծենք այս հարցն այն բանի համար, որպեսզի բացառենք նույնիսկ այն բանի մոտավոր նմանության հնարավոր կրկնությունը, ինչ տեղի է ունեցել Ստալինի կենդանության օրոք, որը ցուցաբերում էր լիակատար անհանդուրժողականություն ղեկավարությունում և աշխատանքում կոլեկտիվության նկատմամբ, թույլ էր տալիս կոպիտ բռնություն այն ամենի հանդեպ, ինչը ոչ միայն հակառակ էր նրան, այլ որը, նրա կամակորության ու բռնակալության պայմաններում, նրան թվում էր իր դրույթներին հակասող: Նա գործում էր ոչ թե համոզելու, բացատրելու, մարդկանց հետ տքնաջան աշխատանք տանելու եղանակով, այլ իր դրույթները պարտադրելու միջոցով, իր կարծիքին անվերապահորեն ենթարկվելու պահանջի եղանակով: Նա, ով դիմադրում էր դրան կամ ձըգտում էր ապացուցել իր տեսակետը, իր իրավացիությունը, նա դատապարտված էր վտարման ղեկավար կոլեկտիվից՝ հետագա բարոյական և ֆիզիկական ոչնչացումով: Դա հատկապես դրսևորվեց կուսակցության XVII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում, երբ Ստալինի բռնակալության զոհերը դարձան բազմաթիվ ազնիվ, կոմունիզմի գործին նվիրված, կուսակցության ականավոր գործիչներ և կուսակցության շարքային աշխատողներ:

Պետք է ասել, որ կուսակցությունը մեծ պայքար է ծավալել ընդդեմ տրոցկիստների, աջերի, բուրժուական նացիոնալիստների, գաղափարապես ջախջախել է լենինիզմի բոլոր թշնամիներին: Այդ գաղափարական պայքարն իրականացվեց հաջողությամբ, դրա ընթացքում կուսակցությունն առավել ամրապնդվեց և կոփվեց: Եվ այստեղ Ստալինը դրական դեր խաղաց:

Կուսակցությունը գաղափարական քաղաքական լայն պայքար ծավալեց իր շարքերում գտնվող այն մարդկանց դեմ, որոնք հանդես էին գալիս հակալենինյան դրույթներով, կուսակցության և սոցիալիզմի գործի համար թշնամական քաղաքական գծով: Դա մի համառ, ծանր, բայց անհրաժեշտ պայքար էր, որովհետև թե՛ տրոցկիստական-զինովևյան բլոկի, թե՛ բուխարինականների քաղաքական գիծն ըստ էության տանում էր դեպի կապիտալիզմի վերականգնում, դեպի կապիտուլյացիա համաշխարհային բուրժուազիայի առաջ: Մի րոպե պատկերացնենք, թե ինչ կըստացվեր, եթե մեր կուսակցությունում 1928—1929 թվականներին հաղթեր աջ թեքման քաղաքական գիծը, կողմնորոշումը դեպի «չթի ինդուստրացում», կողմնորոշումը դեպի կուլակը և նման բաներ: Այդ դեպքում մենք չէինք ունենա հզոր ծանր արդյունաբերություն, չէին լինի կոլտնտեսությունները, մենք կլինեինք անզեն ու թույլ՝ կապիտալիստական շրջապատման դիմաց:

Ահա թե ինչու կուսակցությունն անհաշտ պայքար էր մղում գաղափարական դիրքերից, կուսակցության բոլոր անդամներին և անկուսակցական մասսաներին բացատրում էր, թե ինչումն էր տրոցկիստական օպոզիցիայի և աջ օպորտունիստների հակալենինյան ելույթների վնասն ու վտանգավորությունը: Եվ կուսակցության գիծը պարզաբանելուն նվիրված հսկայական աշխատանքն իր պտուղները տվեց, և՛ տրոցկիստները, և՛ աջ օպորտունիստները քաղաքականապես մեկուսացվեցին, կուսակցության ճնշող մեծամասնությունը պաշտպանեց լենինյան գիծը, և կուսակցությունը կարողացավ ոգեշնչել ու կազմակերպել աշխատավորներին՝ կենսագործելու կուսակցության լենինյան գիծը, կառուցելու սոցիալիզմ:

Իր վրա ուշադրություն է հրավիրում այն հանգամանքը, որ նույնիսկ տրոցկիստների, զինովևականների, բուխարինականների և մյուսների դեմ մղվող կատաղի գաղափարական պայքարի թեժ պահին նրանց նկատմամբ չէին կիրառվում ծայրահեղ պատժիչ միջոցներ: Բայց մի քանի տարի անց, երբ սոցիալիզմն արդեն հիմնականում կառուցված էր մեր երկրում, երբ հիմնականում վերացվել էին շահագործողական դասակարգերը, երբ արմատապես փոխվել էր խորհրդային հասարակության կառուցվածքը, թշնամական կուսակցությունների, քաղաքական հոսանքների և խըմբերի համար շեշտակիորեն կրճատվել էր սոցիալական բազան, երբ կուսակցության գաղափարական հակառակորդները քաղաքականապես վաղուց արդեն ջախջախված էին, նրանց դեմ սկսվեցին ճնշամիջոցներ:

Եվ հենց այդ շրջանում (1935—1937—1938 թթ.) ձևավորվեց պետական գծով հակառազանգվածային ճնշամիջոցների պրակտիկան սկզբում ընդդեմ լենինիզմի կորդների՝ տրոցկիստների, զինովևականների, բուխարինականների, վաղուց ի վեր քաղաքականապես ջախջախված կուսակցությունների, իսկ այնուհետև էլ ընդդեմ բազմաթիվ ազնիվ կոմունիստների, ընդդեմ կուսակցության այն կադրերի, որոնք իրենց ուսերի վրա կրել էին քաղաքացիական պատերազմը, կոլեկտիվացման և ինդուստրացման առաջին, ամենածանր տարիները, կադրեր, որոնք եռանդուն պայքարել են ընդդեմ տրոցկիստների և աջերի, հանուն կուսակցության լենինյան գծի:

Ստալինը մտցրեց «ժողովրդի թշնամի» հասկացությունը: Այդ տերմինը միանգամից ազատում էր մարդուն կամ մարդկանց՝ ում հետ բանավեճ ես մղում, գաղափարական անիրավացիության ամեն կարգի ապացույցների անհրաժեշտությունից. այն հնարավորություն էր տալիս յուրաքանչյուրին, ով ինչ-որ բանում համաձայն չէր Ստալինի հետ, որին միայն կասկածում էին թշնամական մտադրությունների մեջ, յուրաքանչյուրին, որն ուղղակի զրպարտված էր, ենթարկել ամենադաժան ճընշամիջոցների՝ խախտելով հեղափոխական օրինականության ամեն մի նորմ: Այդ «ժողովրդի թշնամի» հասկացությունն ըստ էության արդեն վերացնում, բացառում էր որևէ գաղափարական պայքարի կամ այս կամ այն նույնիսկ գործնական նշանակություն ունեցող հարցերի վերաբերյալ սեփական կարծիք արտահայտելու հնարավորությունը: Մեղավորության հիմնական և, ըստ էության, միակ ապացույցն էր դատանում, հակառակ ժամանակակից իրավագիտության բոլոր նորմերի, իր՝ մեղադըրվողի «խոստովանությունը», ընդ որում այդ «խոստովանությունը», ինչպես հետագայում պարզեց ստուգումը, ստացվում էր մեղադրվողի նկատմամբ ներազդման ֆիզիկական միջոցներ գործադրելու միջոցով:

Դա հանգեցրեց հեղափոխական օրինականության աղաղակող խախտումների,

այն բանին, որ տուժեցին միանգամայն ոչ մի բանում մեղք չունեցող մարդիկ, որոնք անցյալում հանդես են եկել հօգուտ կուսակցության գծի:

Պետք է ասել, որ նաև այն մարդկանց նկատմամբ, ովքեր ժամանակին հանդես են եկել կուսակցության գծի դեմ, հաճախ բավականին լուրջ հիմքեր չկային, որպեսզի նրանց ֆիզիկապես ոչնչացնեին: Նման մարդկանց ֆիզիկապես ոչնչացնելու համար էլ մտցվեց «ժողովրդի թշնամի» բանաձևը:

Չէ՞ որ բազմաթիվ անձինք, որոնց հետագայում ոչնչացրին, նրանց հայտարարելով կուսակցության ու ժողովրդի թշնամիներ, Վ. Ի. Լենինի կենդանության օրոք աշխատել են Լենինի հետ միասին: Նրանցից ոմանք նաև Լենինի օրոք են սխալներ կատարել, բայց, չնայած դրան, Լենինը նրանց օգտագործում էր աշխատանքում, ուղղում, ձգտում այն բանին, որպեսզի նրանք մնան կուսակցականության շրջանակներում, նրանց տանում էր իր հետևից:

Այս կապակցությամբ անհրաժեշտ է կուսակցության համագումարի պատգամավորներին ծանոթացնել Վ. Ի. Լենինի չհրապարակված երկտողին՝ հասցեագրված Կենտկոմի քաղբյուրոյին 1920 թ. հոկտեմբերին[6]: Սահմանելով վերստուգիչ հանձնաժողովի խնդիրները, Լենինը գրում էր, որ այդ հանձնաժողովը հարկավոր է դարձնել իսկական «կուսակցական և պրոլետարական խղճի մարմին»:

«Որ[պե]ս հատուկ հանձնարարություն վեր[ստուգիչ] հ[անձնաժողովին] հանձնարարել ուշադիր-անհատականացված վերաբերմունք, հաճախ նույնիսկ ուղղակի յուրատեսակ բուժում ա[յսպես] կ[ոչված] օպոզիցիայի ներկայացուցիչների նկատմամբ, որոնք ենթարկվել են հոգե[բանական] ճգնաժամի իրենց խորհրդային կամ կուսակցական կարիերայի անհաջողությունների կապակցությամբ: Պետք է ջանալ հանգստացնել նրանց, բանը նրանց բացատրել ընկերավարի, գտնել նրանց համար (առանց հրամայելու եղանակի) իրենց հոգեբանա[կան] առանձնահատկություններին հարմար աշխատանք, այս կետում Կենտկոմի Կազմբյուրոյին տալ խորհուրդներ ու ցուցումներ և այլն»:

Բոլորին քաջ հայտնի է, թե որքան անզիջում էր Լենինը մարքսիզմի գաղափարական հակառակորդների նկատմամբ, նրանց նկատմամբ, ովքեր խոտորվում էին կուսակցական ճիշտ գծից: Միևնույն ժամանակ Լենինը, ինչպես դա երևում է ընթերցված փաստաթղթից, կուսակցության նրա ղեկավարման ամբողջ պրակտիկայից, պահանջում էր ամենաուշադիր կուսակցական մոտեցում այն մարդկանց նկատմամբ, որոնք դրսևորել են տատանումներ, շեղումներ են ունեցել կուսակցական գծից, բայց որոնց կարելի էր վերադարձնել կուսակցականության ուղու վրա: Լենինը խորհուրդ էր տալիս համբերատար կերպով դաստիարակել նման մարդկանց՝ առանց դիմելու ծայրահեղ միջոցների:

Դրանում էր արտահայտվում Լենինի իմաստնությունը մարդկանց նկատմամբ մոտեցում ցուցաբերելու, կադրերի հետ աշխատելու գործում:

Բոլորովին այլ մոտեցում էր բնորոշ Ստալինի համար: Ստալինին միանգամայն խորթ էին լենինյան հատկանիշները՝ մարդկանց հետ համբերատար աշխատանք տանելը, համառորեն և տքնաջանորեն նրանց դաստիարակելը, մարդկանց իր հետևից տանել կարողանալը ոչ թե բռնություն գործադրելու միջոցով, այլ նրանց վրա ներազդելով ողջ կոլեկտիվով՝ գաղափարական դիրքերից: Նա դեն շպրտեց համոզման և դաստիարակման լենինյան մեթոդը, գաղափարական պայքարի դիրքերից անցավ վարչական ճնշման ուղուն, զանգվածային ճնշամիջոցների ուղուն, տեռորի ուղուն: Նա հետզհետե ավելի լայնորեն ու համառորեն էր գործում պատժիչ մարմինների միջոցով, ընդսմին հաճախակի խախտելով բարոյականության բոլոր գոյություն ունեցող նորմերն ու խորհրդային օրենքները:

Մեկ անձի կամայականությունը քաջալերում էր և թույլ տալիս այլ անձանց կամայականությունը: Զանգվածային ձերբակալություններն ու հազար-հազարավոր մարդկանց աքսորը, առանց դատի և նորմալ հետաքննության մահապատիժները ծնում էին անվստահություն մարդկանց մեջ, առաջացնում վախ և նույնիսկ զայրույթ:

Դա, իհարկե, չէր նպաստում կուսակցության շարքերը, աշխատավոր ժողովրդի բոլոր խավերին համախմբելուն, այլ, ընդհակառակը, հանգեցնում էր ազնիվ, բայց Ստալինի համար անցանկալի աշխատողներին ոչնչացնելուն, կուսակցությունից նրանց կտրել-անջատելուն:

Մեր կուսակցությունը պայքար էր մղում հանուն սոցիալիզմի կառուցման լենինյան պլանների կենսագործման: Դա գաղափարական պայքար էր: Եթե այդ պայքարում ցուցաբերվեր լենինյան մոտեցում, կուսակցական սկզբունքայնության և մարդկանց նկատմամբ հոգատար վերաբերմունքի հմուտ զուգակցում, ցանկություն՝



չվանել, չկորցնել մարդկանց, այլ նրանց գրավել մեր կողմը, ապա մենք, հավանաբար, չէինք ունենա հեղափոխական օրինականության նման կոպիտ խախտում, բազում հազարավոր մարդկանց նկատմամբ տեռորի մեթոդների կիրառում: Ծայրահեղ միջոցներ կկիրառվեին միայն այն անձանց նկատմամբ, ովքեր իրոք հանցագործություններ էին կատարել խորհրդային կարգի դեմ:

Դիմենք պատմության որոշ փաստերի:

Հոկտեմբերյան հեղափոխությանը նախորդած օրերին բոլշևիկների կուսակցության Կենտկոմի երկու անդամներ՝ Կամենևը և Զինովևը, դեմ դուրս եկան զինված ապստամբության լենինյան պլանին: Ավելին, հոկտեմբերի 18-ին մենշևիկյան «Новая жизнь» թերթում նրանք հրապարակեցին իրենց հայտարարությունը բոլշևիկների կողմից ապստամբության նախապատրաստման և այն մասին, որ նրանք ապստամբությունը համարում են արկածախնդրություն: Կամենևը և Զինովևը թշնամիների առջև դրանով իսկ բաց արեցին Կենտկոմի որոշումը ապստամբության մասին, մոտակա ժամանակում այդ ապստամբությունը կազմակերպելու մասին:

Դա դավաճանություն էր կուսակցության գործին, հեղափոխության գործին: Վ. Ի. Լենինն այդ կապակցությամբ գրել է. «Կամենևը և Զինովևը մատնել են Ռոձյանկոյին ու Կերենսկուն իրենց կուսակցության Կենտկոմի որոշումը զինված ապստամբության մասին...» (Երկ., հ. 26, էջ 267): Նա Կենտկոմի առջև հարց դրեց կուսակցությունից Զինովևին ու Կամենևին հեռացնելու մասին:

Բայց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության իրականացումից հետո, ինչպես հայտնի է, Զինովևը և Կամենևն առաջ քաշվեցին ղեկավար պաշտոնների: Լենինը ներգրավեց նրանց կուսակցության ամենակարևոր հանձնարարությունների կատարմանը, ղեկավար կուսակցական և խորհրդային մարմիններում եռանդուն աշխատանքի: Հայտնի է, որ Զինովևը և Կամենևը Վ. Ի. Լենինի կենդանության օրոք կատարել են ոչ քիչ թվով այլ խոշոր սխալներ: Իր «կտակում» Լենինն զգուշացնում էր, որ «Զինովևի և Կամենևի հոկտեմբերյան դիպվածը, իհարկե, պատահականություն չէր»: Բայց Լենինը հարց չէր դնում նրանց ձերբակալման և, առավել ևս, նրանց գնդակահարման վերաբերյալ:

Կամ էլ վերցնենք, օրինակի համար, տրոցկիստներին: Այժմ, երբ բավականին պատմական ժամանակ է անցել, մենք կարող ենք խոսել տրոցկիստների դեմ մղված պայքարի մասին և միանգամայն հանգիստ ու բավականին օբյեկտիվ կերպով պատկերացում կազմել այդ գործի մասին: Չէ՞ որ Տրոցկու շուրջը կային մարդիկ, որոնք ամենևին էլ բուրժուական միջավայրի ծնունդ չէին: Նրանց մի մասը կուսակցական մտավորականությունն էր, իսկ որոշ մասը՝ բանվորական միջավայրից էին: Կարելի է տալ մի ամբողջ շարք մարդկանց անուններ, որոնք ժամանակին հարել են տրոցկիստներին, բայց նրանք իսկ և՛ եռանդուն կերպով մասնակցել են բանվորական հեշարժմանը, մինչև հեղափոխությունն ու բուն Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության ընթացքում, և՛ այդ մեծագույն հեղափոխության նվաճումների ամրապնդման գործին: Նրանցից շատերը խզեցին իրենց կապերը տրոցկիզմի հետ և անցան լենինյան դիրքերը: Մի՞թե անհրաժեշտ էր նման մարդկանց ֆիզիկական ոչնչացումը: Մենք խորապես համոզված ենք, որ եթե Լենինն ապրելիս լիներ, ապա նրանցից շատերի նկատմամբ նման ծայրահեղ միջոց չէր կիրառվի:

Այդպիսիք են պատմության սոսկ մի քանի փաստերը: Իսկ մի՞թե կարելի է ասել, թե Լենինը չէր համարձակվում ամենադաժան միջոցները կիրառել հեղափոխության թշնամիների նկատմամբ, երբ դա իրոք պահանջվում էր: Ո՛չ, դա ոչ ոք ասել չի կարող: Վլադիմիր Իլյիչը պահանջում էր դաժան դատաստան տեսնել հեղափոխության և բանվոր դասակարգի թշնամիների նկատմամբ և, երբ անհրաժեշտություն էր առաջանում, օգտվում էր այդ միջոցներից ամենայն անողոքությամբ: Հիշենք թեկուզ Վ. Ի. Լենինի պայքարը հակախորհրդային ապստամբությունների էսէռական կազմակերպիչների դեմ, ընդդեմ հակահեղափոխական կուլակության 1918 թվականին և մյուսների, երբ Լենինը, առանց տատանման, ընդունում էր ամենավճռական միջոցները թշնամիների նկատմամբ: Բայց Լենինն օգտվում էր նման միջոցներից ընդդեմ իրոք դասակարգային թշնամիների, այլ ոչ թե ընդդեմ նրանց, ովքեր սխալվում են, ովքեր մոլորվում են, որոնց կարելի է գաղափարական ներազդման միջոցով տանել իր հետևից և նույնիսկ պահպանել ղեկավարությունում:

Լենինը խիստ միջոցներ էր կիրառում ամենաանհրաժեշտ դեպքերում, երբ առկա էին հեղափոխությանը կատաղիորեն դիմադրող շահագործողական դասակարգերը, երբ «ով՝ ում» սկզբունքով մղվող պայքարն անխուսափելիորեն ընդունում էր ամենասուր ձևերը՝ ընդհուպ մինչև քաղաքացիական պատերազմը: Իսկ Ստալինը

կիրառում էր ամենածայրահեղ միջոցները, զանգվածային ճնշամիջոցներն արդեն այն ժամանակ, երբ հեղափոխությունը հաղթանակել էր, երբ ամրապնդվել էր խորհրդային պետությունը, երբ շահագործողական դասակարգերն արդեն վերացել և սոցիալիստական հարաբերությունները հաստատվել էին ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում, երբ մեր կուսակցությունը քաղաքականապես ամրապնդվել և կոփվել էր ինչպես քանակապես, այնպես էլ գաղափարապես: Պարզ բան է, որ այստեղ Ստալինի կողմից մի ամբողջ շարք դեպքերում դրսևորվեցին անհանդուրժողականություն, կոպտություն, իշխանության չարաշահում: Իր քաղաքական արդարացիության ապացուցման և մասսաներին մոբիլիզացնելու փոխարեն, նա հաճախ ընթանում էր ճնշամիջոցների և ֆիզիկական բնաջնջման ուղիով ոչ միայն իսկական թշնամիների, այլև այն մարդկանց նկատմամբ, որոնք հանցանքներ չէին գործել կուսակցության և խորհրդային իշխանության դեմ: Դրանում ոչ մի իմաստնություն չկա, բացի բռնի ուժի դրսևորումից, որն այնքան անհանգստացնում էր Վ. Ի. Լենինին:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն վերջին ժամանակներս, հատկապես Բերիայի[7] հրոսակախմբի մերկացումից հետո, քննության է ենթարկել այդ հրոսակախմբի թխած մի շարք գործերը: Ընդ որում բացահայտվեց Ստալինի ոչ ճիշտ գործողությունների հետ կապված կոպիտ կամայականության մի տհաճ պատկեր: Ինչպես ցույց են տալիս փաստերը, Ստալինը, օգտվելով անսահմանափակ իշխանությունից, թույլ է տվել ոչ քիչ թվով չարաշահումներ, գործելով Կենտկոմի անունից, չհարցնելով Կենտկոմի անդամների և նույնիսկ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների կարծիքը, հաճախ նրանց չտեղեկացնելով շատ կարևոր կուսակցական և պետական հարցերի վերաբերյալ Ստալինի կողմից միանձնյա ընդունված որոշումների մասին:

***

Քննարկելով անհատի պաշտամունքի վերաբերյալ հարցը, մեզ անհրաժեշտ է ամենից առաջ պարզաբանել, թե այն ինչ վնաս է հասցրել մեր կուսակցության շահերին:

Վլադիմիր Իլյիչ Լենինը միշտ շեշտել է կուսակցության դերն ու նշանակությունը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության կառավարման գործում, դրանում տեսնելով մեր երկրում սոցիալիզմի հաջող կառուցման գլխավոր պայմանը: Մատնանշելով բոլշևիկյան կուսակցության՝ որպես խորհրդային պետության կառավարող կուսակցության, հսկայական պատասխանատվությունը, Լենինը կոչ էր անում խստագույնս պահպանել կուսակցական կյանքի բոլոր նորմերը, իրականացնել կուսակցությունը և երկիրը ղեկավարելու կոլեկտիվության սկզբունքները:

Ղեկավարման կոլեկտիվությունը բխում է մեր կուսակցության բուն էությունից, որը կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով: «Այդ նշանակում է,— ասում էր Լենինը,— որ կուսակցության բոլոր գործերը վարում են, ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, կուսակցության բոլոր անդամները, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության. ընդ որում կուսակցության բոլոր պաշտոնատար անձինք, բոլոր ղեկավար կոլեգիաները, բոլոր հիմնարկությունները ընտրովի են, հաշվետու, փոփոխելի» (Երկ., հ. 11, էջ 546):

Հայտնի է, որ Լենինն ինքն էր այդ սկզբունքները խստորեն պահպանելու օրինակ ցույց տալիս: Չկար մի այնպիսի կարևոր հարց, որի վերաբերյալ Լենինը միանձնյա որոշում կայացներ՝ չխորհրդակցելով և չստանալով Կենտկոմի կամ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների մեծամասնության հավանությունը:

Մեր կուսակցության և երկրի համար ամենածանր ժամանակաշրջաններում Լենինն անհրաժեշտ էր համարում կանոնավորապես անցկացնել կուսակցության համագումարները, կոնֆերանսները, նրա Կենտրոնական կոմիտեի պլենումները, որոնցում քննարկվում էին բոլոր կարևորագույն հարցերը և ընդունվում ղեկավարների կոլեկտիվի կողմից համակողմանիորեն մշակված որոշումներ:

Հիշենք, օրինակ, 1918 թվականը, երբ երկրի վրա կախվեց իմպերիալիստական ինտերվենտների ներխուժման վտանգը: Այդ պայմաններում հրավիրվեց կուսակցության VII համագումարը՝ կենսականորեն անհրաժեշտ և անհետաձգելի խնդրի՝ հաշտության վերաբերյալ հարցի քննարկման համար: 1919 թվականին, քաղաքացիական պատերազմի թեժ պահին, հրավիրվում է կուսակցության VIII համագումարը, որտեղ ընդունվեց կուսակցության նոր ծրագիրը, լուծվեցին այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք էին գյուղացիության հիմնական զանգվածների նկատմամբ վերաբերմունքի հարցը, կարմիր բանակի շինարարության, խորհուրդների աշխատանքում կուսակցության ղեկավար դերի, կուսակցության սոցիալական կազմի բարելավման մասին և այլ հարցեր: 1920 թվականին հրավիրվում է կուսակցության IX համագումարը, որը սահմանեց կուսակցության և երկրի խնդիրները տնտեսական շինարարության մարզում: 1921 թվականին կուսակցության X համագումարում ընդունվեցին Լենինի մշակած տնտեսական նոր քաղաքականությունը և «Կուսակցության միասնության մասին» պատմական որոշումը:

Լենինի կենդանության օրոք կուսակցության համագումարներն անցկացվում էին կանոնավորապես, կուսակցության և երկրի զարգացման յուրաքանչյուր շեշտակի շրջադարձ կատարելիս Լենինն ամենից առաջ անհրաժեշտ էր համարում կուսակցության կողմից ներքին և արտաքին քաղաքականության, կուսակցական և պետական շինարարության արմատական հարցերի լայն քննարկումը:

Միանգամայն բնութագրական է, որ իր վերջին հոդվածները, նամակներն ու գրառումները Լենինը հասցեագրում էր հենց կուսակցական համագումարին՝ որպես կուսակցության բարձրագույն օրգանի: Համագումարից համագումար կուսակցության Կենտրոնական կոմիտեն հանդես էր գալիս որպես ղեկավարների բարձր հեղինակավոր մի կոլեկտիվ, որը խստիվ պահպանում էր կուսակցության սկզբունքները և կենսագործում նրա քաղաքականությունը:

Այդպես էր Լենինի կենդանության օրոք:

Պահպանվու՞մ էին, արդյոք, մեր կուսակցության համար սրբազան լենինյան սկզբունքները Վլադիմիր Իլյիչի վախճանվելուց հետո:

Եթե Լենինի մահվանից հետո առաջին տարիներին կուսակցության համագումարներն ու Կենտկոմի պլենումներն անցկացվում էին առավել կամ նվազ կանոնավորությամբ, ապա ավելի ուշ, երբ Ստալինն սկսեց հետզհետե ավելի չարաշահել իշխանությունը, այդ սկզբունքներն սկսեցին կոպիտ կերպով խախտվել: Հատկապես դա արտահայտվեց նրա կյանքի վերջին մեկուկես տասնամյակի ընթացքում: Մի՞թե կարելի է նորմալ համարել այն փաստը, որ կուսակցության XVIII և XIX համագումարների միջև անցել է տասներեք տարուց ավելի, որոնց ընթացքում մեր կուսակցությունն ու երկիրն ապրեցին այնքան իրադարձություններ: Այդ իրադարձությունները հրամայաբար պահանջում էին կուսակցության կողմից որոշումների ընդունում երկրի պաշտպանության հարցերի վերաբերյալ Հայրենական պատերազմի պայմաններում և խաղաղ շինարարության վերաբերյալ՝ հետպատերազմյան տարիներին: Նույնիսկ պատերազմի վերջանալուց հետո համագումար չի հավաքվել յոթ տարուց ավելի:

Գրեթե չէին հրավիրվում Կենտրոնական կոմիտեի պլենումները: Բավական է ասել, որ Հայրենական մեծ պատերազմի բոլոր տարիների ընթացքում փաստորեն Կենտկոմի ոչ մի պլենում չի անցկացվել: Ճիշտ է, փորձ արվեց հրավիրել Կենտկոմի պլենում 1941 թվականի հոկտեմբերին[8], երբ ամբողջ երկրից Մոսկվա հատուկ կանչվեցին Կենտկոմի անդամները: Երկու օր նրանք սպասեցին պլենումի բացմանը, բայց այդպես էլ այն տեղի չունեցավ: Ստալինը նույնիսկ չցանկացավ հանդիպել և մազրուցել Կենտրոնական կոմիտեի անդամների հետ: Այդ փաստը խոսում է այն մասին, թե Ստալինը որքան էր բարոյալքված պատերազմի առաջին ամիսներին և որքան մեծամտորեն և արհամարհանքով էր վերաբերվում նա Կենտկոմի անդամներին:

Այդ գործելակերպում արտահայտվում էր Ստալինի կողմից կուսակցական կյանքի նորմերի անտեսումը, նրա կողմից կուսակցական ղեկավարման կոլեկտիվության լենինյան սկզբունքի ոտնահարումը:

Ստալինի կամայականությունը կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի նկատմամբ հատկապես դրսևորվեց կուսակցության՝ 1934 թվականին կայացած XVII համագումարից հետո:

Կենտրոնական կոմիտեն, ձեռքի տակ ունենալով բազմաթիվ փաստեր, որոնք վկայում են կուսակցական կադրերի նկատմամբ կոպիտ կամայականության մասին, առանձնացրեց Կենտկոմի նախագահության հանձնաժողով[9], որին հանձնարարեց մանրազնին կերպով պարզաբանել այն հարցը, թե ինչպես հնարավոր դարձան զանգվածային ճնշամիջոցները ՀամԿ(բ)Կ XVII համագումարի կողմից ընտրված կուսակցության Կենտրոնական կոմիտեի անդամների և անդամության թեկնածուների կազմի մեծամասնության դեմ:

Հանձնաժողովը ծանոթացավ ՆԳԺԿ-ի արխիվներում գտնվող մեծ թվով նյութերի հետ, այլ փաստաթղթերի հետ և բացահայտեց կոմունիստների դեմ կեղծված դատական գործերի, ստահոդ մեղադրանքների, սոցիալիստական օրինականության

սակցության XVII համագումարում ընտրված Կենտրոնական կոմիտեի անդամների դեմ մի շարք կեղծված «գործերի» մասին:

Զազրելի պրովոկացիայի, չարանենգ կեղծարարության և հեղափոխական օրինականության հանցավոր խախտումների օրինակ է Կենտկոմի քաղբյուրոյի անդամության նախկին թեկնածու, կուսակցության և խորհրդային պետության ականավոր գործիչներից մեկի՝ 1905 թվականից կուսակցության անդամ ընկ. Էյխեի գործը: (Շարժում դահլիճում):

Ընկ. Էյխեն ձերբակալվել է 1938 թվականի ապրիլի 29-ին՝ համաձայն զրպարտչական նյութերի, առանց ԽՍՀՄ դատախազի սանկցիայի, որն ստացվել է ձերբակալումից միայն 15 ամիս հետո:

Էյխեի գործով քննությունը վարվել է խորհրդային օրինականության ամենակոպիտ խախտման, կամայականության և կեղծարարության իրադրությունում:

Էյխեին տանջանքների ենթարկելով ստիպել են ստորագրել քննիչների կողմից նախապես կազմված հարցաքննությունների արձանագրություններ, որոնցում մեղադրանքներ էին բարդվում հենց իրեն և մի շարք աչքի ընկնող կուսակցական ու խորհրդային աշխատողների վրա:

1939 թվականի հոկտեմբերի 1-ին Էյխեն Ստալինի անունով դիմում գրեց, որում վճռականորեն ժխտում էր իր մեղավորությունը և խնդրում հետաքննել իր գործը: Դիմումում նա գրում էր.

«Չկա ավելի դառը տանջանք, քան նստել բանտում այն հասարակարգի օրոք, որի համար միշտ պայքարել եմ»:

Պահպանվել է Էյխեի երկրորդ դիմումը՝ ուղարկված Ստալինին 1939 թվականի հոկտեմբերի 27-ին, որում նա համոզիչ կերպով, հենվելով փաստերի վրա, հերքում է իրեն ներկայացված զրպարտչական մեղադրանքները, ցույց տալիս, որ այդ պրովոկացիոն մեղադրանքները, մի կողմից, իսկական տրոցկիստների գործն են, որոնց ձերբակալման սանկցիան նա, որպես կուսակցության Արևմտա-Սիբիրյան երկրկոմի առաջին քարտուղար, տվել է և որոնք խոսքերը մեկ են արել իրենից վրեժ լուծելու, իսկ, մյուս կողմից, արդյունք են քննիչների կողմից ստեղծված մտացածին նյութերի կեղտոտ կեղծարարության:

Էյխեն գրել է իր դիմումում.

«Ս. թ. հոկտեմբերի 25-ին ինձ հայտնեցին իմ գործով հետաքննության ավարտման մասին և հնարավորություն տվեցին ծանոթանալու քննչական նյութին: Եթե ես մեղավոր լինեի ինձ ներկայացված մեղադրանքներից թեկուզ մեկի հարյուրերորդական մասի չափով, ապա ես չէի համարձակվի Ձեզ դիմել այս մահառաջի դիմումով, բայց ես չեմ կատարել ինձ մեղսագրվող հանցանքներից ոչ մեկը և երբեք հոգուս վրա ստորության ստվեր անգամ չի եղել: Ես կյանքում երբեք Ձեզ կես բառ իսկ սուտ չեմ ասել և այժմ երկու ոտքով գտնվելով գերեզմանում, ես Ձեզ նույնպես չեմ ստում: Իմ ամբողջ գործը պրովոկացիայի, զրպարտության և հեղափոխական օրինականության հիմքերի խախտման տիպար է...

... Իմ քննչական գործում առկա ինձ մերկացնող ցուցմունքները ոչ միայն անհեթեթ են, այլև մի շարք պարագաներում պարունակում են զրպարտություն ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և Ժողկոմխորհի հասցեին, քանի որ ոչ իմ նախաձեռնությամբ և առանց իմ մասնակցության ընդունված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և Ժողկոմխորհի որոշումները պատկերվում են որպես հակահեղափոխական կազմակերպության վնասարարական ակտեր, որոնք անց են կացվել իմ առաջարկով...

Այժմ ես անցնում եմ կյանքիս ամենախայտառակ էջին և իմ իրոք ծանր մեղքին կուսակցության առաջ և Ձեր առաջ: Դա հակահեղափոխական գործունեության մեջ իմ խոստովանությունների մասին է... Բանը եղել է այսպես. չդիմանալով խոշտանգումներին, որ իմ նկատմամբ կիրառել են Ուշակովը և Նիկոլաևը[21], հատկապես առաջինը, որը ճարպկորեն օգտվեց այն բանից, որ իմ ողերը կոտրվելուց հետո դեռևս վատ էին կպել ու ինձ պատճառում էր անտանելի ցավ, ստիպում էին, որ զրպարտեմ ինքս ինձ և այլ մարդկանց:

Իմ ցուցմունքներից շատերը հուշել կամ թելադրել է Ուշակովը և մյուսները ես հիշողությամբ արտագրել եմ ՆԳԺԿ-ի նյութերը Արևմտյան Սիբիրի վերաբերյալ, ինձ վերագրելով ՆԳԺԿ-ի նյութերում բերված այդ փաստերը: Եթե Ուշակովի ստեղծած և իմ ստորագրած առասպելում ինչ-որ բան չէր կպչում, ապա ինձ ստիպում էին ստորագրել այլ տարբերակ: Այդպես եղավ Ռուխիմովիչի[22] դեպքում, որին սկզբում գրանցեցին պահեստի կենտրոնում, իսկ հետո, նույնիսկ ինձ ոչինչ չասելով, ջնջեցին, այդպես եղավ նաև իբր թե Բուխարինի կողմից 1935 թվականին



ստեղծված պահեստի կենտրոնի նախագահի դեպքում: Սկզբում ես մտցրեցի ինձ, բայց հետո ինձ առաջարկեցին մտցնել Մեժլաուկին[23], և շատ այլ պարագաներ...

... Ես Ձեզ խնդրում եմ, և աղաչում հանձնարարել լրացուցիչ քննել իմ գործը, և դա ոչ հանուն այն բանի, որ ինձ խնայեն, այլ հանուն այն բանի, որպեսզի մերկացվի նողկալի պրովոկացիան, որը, ինչպես օձ, խճճել է շատ մարդկանց, մասնավորապես նաև իմ փոքրոգության և հանցագործ զրպարտության պատճառով: Ձեզ և կուսակցությանը ես երբեք չեմ դավաճանել: Ես գիտեմ, որ կործանվում եմ կուսակցության և ժողովրդի թշնամիների նողկալի, ստոր աշխատանքի պատճառով, թշնամիներ, որոնք պրովոկացիա սարքեցին իմ դեմ» (Էյխեի գործը, հ. 1, ծրար):

Թվում է, թե նման կարևոր դիմումը պետք է անպայման քննարկվեր Կենտկոմում: Բայց այդ տեղի չի ունեցել, դիմումն ուղարկվել է Բերիային և դաժան հաշվեհարդարը քաղբյուրոյի անդամության զրպարտված թեկնածու ընկ. Էյխեի նկատմամբ շարունակվել է:

1940 թվականի փետրվարի 2-ին Էյխեն դատի տրվեց: Դատարանում Էյխեն իրեն մեղավոր չճանաչեց և հայտարարեց հետևյալը.

«Բոլոր իբր թե իմ ցուցմունքներում իմ կողմից ասված ոչ մի տառ չկա, բացառությամբ արձանագրությունների տակի ստորագրությունների, որոնք դրված են ստիպողաբար: Ցուցմունքները տրված են քննիչի ճնշման ներքո, որն իմ ձերբակալման ամենասկզբից սկսել է ինձ ծեծել: Դրանից հետո ես սկսեցի գրել ամեն մի հիմարություն... Ինձ համար գլխավորը ասելն է դատարանին, կուսակցությանը և Ստալինին, այն մասին, որ ես անմեղ եմ: Երբեք դավադրության մասնակից չեմ եղել: Ես կմեռնեմ նույնպես հավատով կուսակցության քաղաքականության ճշմարտության մեջ, ինչպես հավատացել եմ դրան իմ ամբողջ աշխատանքի ընթացքում»: (Էյխեի գործը, հատոր 1):

Փետրվարի 4-ին Էյխեն գնդակահարվեց: (Զայրույթի աղմուկ դահլիճում): Ներկայումս անառարկելիորեն պարզված է, որ Էյխեի գործը կեղծված է, և նա հետմահու արդարացված է:

Լիովին հրաժարվեց դատարանում իր ստիպողական ցուցմունքներից քաղբյուրոյի անդամության թեկնածու ընկ. Ռուձուտակը[24], կուսակցության անդամ 1905 թվականից, որը 10 տարի անցկացրել էր ցարական տաժանավայրում: Գերագույն դատարանի զինվորական կոլեգիայի դատական նիստի արձանագրությունում գրանցված է Ռուձուտակի հետևյալ հայտարարությունը.

«... Նրա միակ խնդրանքն է դատարանին՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմին տեղեկացնել այն մասին, որ ՆԳԺԿ-ի մարմիններում կա դեռևս արմատախիլ չարված թարախապալար, որն արհեստականորեն գործեր է ստեղծում, պարտադրելով ոչ մի բանում մեղք չունեցող մարդկանց իրենց մեղավոր ճանաչել: Որ մեղադրանքի հանգամանքների ստուգումը բացակայում է և ոչ մի հնարավորություն չի տրվում ապացուցելու սեփական անմեղսակցությունն այն հանցագործություններին, որոնք ներկայացված են տարբեր անձանց այս կամ այն ցուցմունքներում: Հետաքննության մեթոդներն այնպիսին են, որ ստիպում են հորինել և զրպարտել միանգամայն անմեղ մարդկանց, էլ չասած քննության ենթակայի մասին: Խնդրում է դատարանին իրեն հնարավորություն տալ այդ ամենը գրելու Համ(բ)Կ Կենտկոմի համար: Հավաստիացնում է դատարանին, որ անձամբ ինքը երբեք ոչ մի վատ բան չի մտածել մեր կուսակցության քաղաքականության դեմ, որովհետև նա միշտ լիովին բաժանել է կուսակցության այն քաղաքականությունը, որ վարվել է տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր մարզերում»:

Ռուձուտակի այս հայտարարությունը թողնվել է առանց ուշադրության, թեև Ռուձուտակը, ինչպես հայտնի է, իր ժամանակին եղել է Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահը, որն ըստ Լենինի մտածածի ստեղծվել է հանուն կուսակցության միասնության պայքարելու համար: Իսկ այդ բարձրհեղինակավոր կուսակցական մարմնի նախագահը դարձավ կոպիտ կամայականության զոհը. նրան նույնիսկ չկանչեցին Կենտկոմի քաղբյուրո, Ստալինը չցանկացավ նրա հետ խոսել: Նա դատապարտվեց 20 րոպեի ընթացքում և գնդակահարվեց: (Զայրույթի աղմուկ դահլիճում):

Մանրակրկիտ ստուգումով, որն անցկացվել է 1955 թվականին, պարզվել է, որ Ռուձուտակի մեղադրական գործը կեղծված էր, և նա դատապարտվել է զրպարտչական նյութերի հիման վրա: Ռուձուտակը հետմահու արդարացված է:

Թե ինչպես արհեստականորեն՝ պրովոկացիոն եղանակներով, ՆԳԺԿ-ի նախկին աշխատակիցների կողմից ստեղծվում էին զանազան «հակախորհրդային կենտ-

րոններ» և «բլոկներ», երևում է ընկ. Ռոզենբլյումի ցուցմունքներից, կուսակցության անդամ 1906 թվականից, ձերբակալման ենթարկված ՆԳԺԿ-ի Լենինգրադի վարչության կողմից 1937 թվականին:

1955 թվականին Կոմարովի[25] գործի ստուգման ժամանակ Ռոզենբլյումը հաղորդեց հետևյալ փաստը. երբ նա՝ Ռոզենբլյումը, ձերբակալվեց 1937 թվականին, ապա ենթարկվեց դաժան խոշտանգումների, որի ընթացքում նրանից կորզում էին սուտ ցուցմունքներ ինչպես հենց իր դեմ, այնպես էլ ուրիշ անձանց դեմ: Այնուհետև նրան բերում են Զակովսկու [26] աշխատասենյակը, որն առաջարկեց նրան ազատել այն պայմանով, եթե նա դատարանում կեղծ ցուցմունքներ տա ՆԳԺԿ-ի կողմից 1937 թվականին թխված «Լենինգրադյան վնասարարական, լրտեսական, դիվերսիոն, տեռորիստական կենտրոնի գործով: (Ծարժում դահլիճում): Անասելի լպիրշությամբ էր բացահայտում Զակովսկին շինծու «հակախորհրդային դավադրությունների» արհեստական ստեղծման ստոր «մեխանիկան»:

«Համոզկերության համար,— հայտարարեց Ռոզենբլյումը,— Զակովսկին իմ առաջ լայնորեն բացահայտեց այդ կենտրոնի և նրա ճյուղավորումների ենթադրվող սխեմաների մի քանի տարբերակներ...

Ծանոթացնելով ինձ այդ սխեմաներին, Զակովսկին ասաց, որ ՆԳԺԿ-ն պատրաստում է գործ այդ կենտրոնի վերաբերյալ, ընդ որում դատավարությունը բաց է լինելու:

Դատի կտրվի կենտրոնի ղեկավարությունը, 4—5 մարդ, Չուդովը[27], Ուգարովը[28], Սմորոդինը[29], Պոզեռնը[30], Ծապոշնիկովան[31] (սա Չուդովի կինն է) ու մյուսները և յուրաքանչյուր մասնաճյուղից 2—3-ական մարդ...

... Լենինգրադյան կենտրոնի վերաբերյալ գործը պետք է կազմակերպել հիմնավորապես: Իսկ այստեղ վճռական նշանակություն ունեն վկաները: Այստեղ ոչ պակաս կարևոր դեր է խաղում նաև վկայի հասարակական դիրքը (նախկինում, իհարկե) և կուսակցական ստաժը:

Անձամբ քեզ համար,— ասում էր Զակովսկին,— հարկ չի լինի ոչինչ հորինել: ՆԳԺԿ-ն կկազմի քեզ համար պատրաստի կոնսպեկտ յուրաքանչյուր մասնաճյուղի համար առանձին, քո գործն է այն սովորել, լավ մտապահել բոլոր հարցերն ու պատասխանները, որ կարող են տալ դատարանում: Այդ գործը կպատրաստվի 4—5 ամիս, գուցեև կես տարի: Այդ ամբողջ ժամանակ կպատրաստվես, որպեսզի անհարմար կացության մեջ չդնես հետաքննությանն ու քեզ: Դատավարության ընթացքից ու ելքից կախված կլինի քո հետագա ճակատագիրը: Եթե վախենաս և սկսես կեղծ տոնով երգել՝ մեղադրիր ինքդ քեզ (մեղքը քոնն է): Կդիմանաս՝ կպահպանես կաղամբագլուխդ, կկերակրենք և կհագցնենք մինչև մահ պետության հաշվին» (Կոմարովի գործի ստուգման նյութը, գ. թ. 60—69):

Ահա թե ինչպիսի ստոր գործեր էին կատարվում այն ժամանակ: (Ծարժում դահլիճում):

Ծատ ավելի լայնորեն քննչական գործերի կեղծումը կիրառվում էր մարզերում: ՆԳԺԿ-ի Սվերդլովսկի մարզի վարչությունը «բացահայտել» էր այսպես կոչված «Ուրալի ապստամբական շտաբը՝ աջերի, տրոցկիստների, էսէռների, եկեղեցականների բլոկի մարմինը», որն իբր ղեկավարում էր Սվերդլովսկի մարզկոմի քարտուղար և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ Կաբակովը[32], կուսակցության անդամ 1914 թվականից: Այն ժամանակվա քննչական գործերի նյութերից ելնելով ստացվում է, որ գրեթե բոլոր երկրամասերում, մարզերում և հանրապետություններում գոյություն են ունեցել իբր լայնորեն ճյուղավորված «աջ-տրոցկիստական լրտեսական-տեռորիստական, դիվերսիոն-վնասարարական կազմակերպություններ ու կենտրոններ» և, որպես կանոն, այդ «կազմակերպությունները» ու «կենտրոնները» չգիտես ինչու ղեկավարում էին մարզկոմների, երկրկոմների կամ ազգային կոմկուսների կենտկոմների քարտուղարները: (Ծարժում դահլիճում):

Նման «գործերի» հրեշավոր կեղծման հետևանքով, այն բանի հետևանքով, որ հավատում էին զանազան զրպարտչական «ցուցմունքներին» ու սեփական անձը և ուրիշներին ստիպողաբար զրպարտելուն, ոչնչացան բազում հազարավոր ազնիվ, ոչ մի մեղք չունեցող կոմունիստներ: Նույն կերպ էլ «գործեր» էին մոգոնվում ականավոր կուսակցական և պետական գործիչների՝ Կոսիորի[33], Չուբարի[34], Պոստիշևի, Կոսարևի[35] և մյուսների վրա:

Այն տարիներին չհիմնավորված ճնշամիջոցները անցկացվում էին զանգվածային չափերով, որի հետևանքով կուսակցությունը կադրերի մեծ կորուստներ կրեց:

Ստեղծվել էր մի արատավոր պրակտիկա, երբ ՆԳԺԿ-ում կազմվում էին ցուցակներ այն անձանց, որոնց գործերը ենթակա էին զինվորական կոլեգիայի վարույթին և նախապես որոշվում էր նրանց պատժաչափը: Այդ ցուցակները Եժովը ուղարկում էր անձամբ Ստալինին՝ նախատեսված պատժաչափերի սանկցիան ստանալու համար: 1937—1938 թվականներին Ստալինին էր ուղարկվել բազում հազարավոր կուսակցական, խորհրդային, կոմերիտական, զինվորական և տնտեսական աշխատողների 383 նման ցուցակ և ստացվել նրա սանկցիան:

Այդ գործերի զգալի մասն այժմ վերանայվում է և դրանց մեծ քանակությունը կարճվում է որպես անհիմն և կեղծված: Բավական է ասել, որ 1954 թվականից մինչև այժմ գերագույն դատարանի զինվորական կոլեգիան արդեն ռեաբիլիտացրել է 7679 մարդու, ընդ որում նրանցից շատերը ռեաբիլիտացվել են հետմահու:

Կուսակցական, խորհրդային, տնտեսական, զինվորական աշխատողների զանգվածային ձերբակալությունները հսկայական վնաս հասցրին մեր երկրին, սոցիալիստական շինարարության գործին:

Զանգվածային ճնշամիջոցները բացասաբար անդրադարձան կուսակցության բարոյաքաղաքական վիճակի վրա: Ծնեցին անվստահություն, նպաստեցին հիվանդագին կասկածամտության տարածմանը, կոմունիստների շրջանում սերմանեցին փոխադարձ անվստահություն: Ակտիվացան ամեն կարգի զրպարտիչներն ու կարիերիստները:

Կուսակցական կազմակերպություններում որոշ առողջացում մտցրեցին Համ(բ)Կ Կենտկոմի 1938 թվականի հունվարյան պլենումի որոշումները[36]: Բայց լայն ճնշամիջոցները շարունակվեցին նաև 1938 թվականին:

Եվ միայն այն պատճառով, որ մեր կուսակցությունն օժտված է բարոյաքաղաքական մեծ ուժով, նա կարողացավ հաղթահարել 1937—1938 թվականների ծանր իրադարձությունները, դիմանալ այդ իրադարձություններին, աճեցնել նոր կադրեր: Բայց անկասկած է, որ դեպի սոցիալիզմ մեր առաջընթացը և երկրի պաշտպանության նախապատրաստումն ավելի հաջողությամբ կիրականացվեր, եթե չլինեին կադրերի այն հսկայական կորուստները, որ մենք ունեցանք 1937—1938 թվականների զանգվածային, անհիմն և անարդարացի ճնշամիջոցների ժամանակ:

Մենք մեղադրում ենք Եժովին 1937 թվականի խեղաթյուրումների համար և ճիշտ ենք մեղադրում: Բայց պետք է պատասխանել այսպիսի հարցերի. մի՞թե կարող էր Եժովն ինքը, առանց Ստալինի գիտության ձերբակալել, օրինակ, Կոսիորին: Այդ հարցի վերաբերյալ եղե՞լ է արդյոք մտքերի փոխանակություն կամ քաղբյուրոյի որոշում: Ո՛չ, չի եղել, ինչպես նաև դա չի եղել մյուս նման գործերի վերաբերյալ: Մի՞թե Եժովը կարող էր լուծել այդպիսի կարևոր հարցեր, ինչպիսին կուսակցության ականավոր գործիչների ճակատագրի հարցն է: Ո՛չ, միամտություն կլիներ դա միայն Եժովի ձեռքի գործը համարելը: Պարզ է, որ այդպիսի գործերը վճռում էր Ստալինը, առանց նրա ցուցումների, առանց նրա սանկցիայի Եժովը ոչինչ չէր կարող անել:

Մենք հիմա պարզաբանեցինք և ռեաբիլիտացիայի ենթարկեցինք Կոսիորին, Ռուձուտակին, Պոստիշևին, Կոսարևին և մյուսներին: Իսկ ինչի հիման վրա էին նրանք ձերբակալվել և դատապարտվել: Նյութերի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրա համար որևէ հիմքեր չեն եղել: Ձերբակալում էին նրանց, ինչպես և շատ ուրիշներին, առանց դատախազի սանկցիաների: Ասենք, այն պայմաններում ոչ մի սանկցիա էլ չէր պահանջվում. էլ ինչ սանկցիա էր պետք, երբ ամեն ինչ թույլ էր տալիս Ստալինը: Նա էր գլխավոր դատախազն այդ հարցերում: Ստալինը ոչ միայն թույլտվություն էր տալիս, այլ նաև ցուցումներ ձերբակալման վերաբերյալ սեփական նախաձեռնությամբ: Այս մասին հարկավոր է ասել, որպեսզի համագումարի պատգամավորների համար լիակատար պարզություն լինի, որպեսզի դուք կարողանաք ճիշտ գնահատական տալ և համապատասխան հետևություններ անել:

Փաստերը ցույց են տալիս, որ շատ չարաշահումներ կատարվել են Ստալինի ցուցումով, առանց հաշվի առնելու կուսակցական և խորհրդային օրինականության որևէ նորմ: Ստալինը շատ կասկածամիտ մարդ էր, հիվանդագին աստիճանի, որում մենք համոզվեցինք, աշխատելով նրա հետ միասին: Նա կարող էր նայել մարդուն և ասել. «Ինչ-որ ձեր աչքերն այսօր դեսուդեն են փախչում», կամ. «Ինչու՞ եք դուք այսօր հաճախ ձեր դեմքը շուռ տալիս, ուղիղ չեք նայում աչքերիս»: Հիվանդագին կասկածամտությունը նրան հասցրին համատարած անվստահության, այդ թվում նաև կուսակցության ականավոր գործիչների նկատմամբ, որոնց նա ճանաչում էր շատ տարիներ: Ամենուրեք և ամեն տեղ տեսնում էր «թշնամիների», «երկերեսանիների», «լրտեսների»:

Ունենալով անսահմանափակ իշխանություն, նա թույլ էր տալիս դաժան կամա-

յականություն, ճնշում էր մարդուն բարոյապես և ֆիզիկապես: Ստեղծվել էր այնպիսի իրավիճակ, որի պայմաններում մարդ չէր կարող իր կամքը դրսևորել:

Երբ Ստալինն ասում էր, թե այնինչին պետք է ձերբակալել, ապա պետք էր համատ ընծայել, որ նա «ժողովրդի թշնամի» է: Իսկ Բերիայի ավազակախումբը, որ տեր ու տնօրեն էր պետանվտանգության մարմիններում, կաշվից դուրս էր գալիս, որպեսզի ապացուցեր ձերբակալված անձանց մեղավորությունը, իրենց թխած նյութերի ճշմարտությունը: Իսկ ինչպիսի՞ ապացույցներ էին գործի դրվում: Ձերբակալվածների խոստովանությունները: Եվ քննիչները ձեռք էին բերում այդ «խոստովանությունները»: Բայց ինչպե՞ս կարելի է մարդուց ստանալ խոստովանություններ հանցանքների վերաբերյալ, որոնք նա երբեք չի կատարել: Միայն մեկ եղանակով՝ գործադրելով ներազդման ֆիզիկական մեթոդներ, խոշտանգումների, գիտակցությունից զրկելու, բանականությունից զրկելու, մարդկային արժանապատվությունից զրկելու միջոցով: Այդպես էին ձեռք բերվում կարծեցյալ «խոստովանությունները»:

Երբ զանգվածային ճնշամիջոցների ալիքը 1939 թվականին սկսեց թուլանալ, երբ տեղական կուսակցական կազմակերպությունների ղեկավարները սկսեցին մեղադրել ՆԳԺԿ-ի աշխատողներին ձերբակալվածների նկատմամբ ֆիզիկական ներազդման միջոցներ գործադրելու մեջ, Ստալինը 1939 թվականի հունվարի 10-ին ծածկագիր հեռագիր հղեց մարզկոմների, երկրկոմների, ազգային կոմկուսների կենտկոմների քարտուղարներին, ՆԳԺԿ-ի վարչությունների պետերին: Այդ հեռագրում ասված էր.

«ՀամԿ(բ)Կ Կենտկոմը պարզաբանում է, որ ֆիզիկական ներազդման գործադրումը ՆԳԺԿ-ի պրակտիկայում թույլ է տրվել 1937 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի թույլտվությամբ... Հայտնի է, որ բոլոր բուրժուական հետախուզությունները ֆիզիկական ներազդում են գործադրում սոցիալիստական պրոլետարիատի ներկայացուցիչների նկատմամբ և ընդ որում գործադրում են ամենաայլանդակ ձևերով: Հարց է ծագում, թե ինչու սոցիալիստական հետախուզությունը պետք է ավելի մարդասեր գտնվի բուրժուազիայի երդվյալ գործակալների, բանվոր դասակարգի և կոլտնտեսականների ոխերիմ թշնամիների նկատմամբ: ՀամԿ(բ)Կ Կենտկոմը գտնում է, որ ֆիզիկական ներազդման մեթոդը պետք է կիրառվի նաև առաջիկայում, որպես բացառություն, ժողովրդի բացահայտ և զինաթափ չեղող թշնամիների նկատմամբ՝ որպես միանգամայն ճիշտ և նպատակահարմար մեթոդ»:

Այդպիսով, սոցիալիստական օրինականության ամենակոպիտ խախտումները, տանջանքները ու խոշտանգումները, որոնք, ինչպես ցույց տրվեց վերը, հանգեցնում էին անմեղ մարդկանց զրպարտելուն և ինքնազրպարտելուն, թույլատրվեցին Ստալինի կողմից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անունից:

Վերջերս, ընդամենը ներկա համագումարից մի քանի օր առաջ, մենք Կենտկոմի նախագահության նիստին հրավիրեցինք և հարցաքննեցինք քննիչ Ռոդոսին[37], որը ժամանակին վարել է Կոսիորի, Չուբարի և Կոսարևի հետաքննությունը ու հարցաքննել նրանց: Դա բոլորովին անպետք մի մարդ է՝ հավի մտահորիզոնով, բարոյական առումով ուղղակի վիժվածք: Եվ ահա նման մարդը որոշում էր կուսակցության հայտնի գործիչների բախտը, որոշում էր նաև քաղաքականությունն այդ հարցում, որովհետև ապացուցելով նրանց «հանցագործությունը», նա դրանով իսկ նյութ էր տալիս քաղաքական խոշոր հետևությունների համար:

Հարց է ծագում. մի՞թե նման մարդը կարող էր ինքը, իր խելքով քննությունն այնպես տանել, որպեսզի ապացուցեր մեղավորությունն այնպիսի մարդկանց, ինչպիսիք էին Կոսիորը և մյուսները: Ո՛չ, նա չէր կարող շատ բան անել առանց համապատասխան ցուցումների: Կենտկոմի նախագահության նիստում նա մեզ այսպես հայտարարեց. «Ինձ ասացին, որ Կոսիորն ու Չուբարը ժողովրդի թշնամիներ են, այդ պատճառով էլ ես, որպես քննիչ, պետք է նրանցից դուրս քաշեի խոստովանություն, որ նրանք թշնամիներ են»: (Ձայրույթի աղմուկ դահլիճում):

Դրան նա կարող էր հասնել միայն երկարատև խոշտանգումների միջոցով, որը և նա անում էր, ստանալով մանրամասն հրահանգավորում Բերիայից: Պետք է ասել, որ Կենտկոմի նախագահության նիստում Ռոդոսը լկտիաբար հայտարարեց. «Ես կարծում էի, որ կատարում եմ կուսակցության հանձնարարությունը»: Ահա այդպես էր կատարվում գործնականում Ստալինի ցուցումը կալանավորների նկատմամբ ֆիզիկական ներազդման մեթոդներ կիրառելու վերաբերյալ:

Այս և բազմաթիվ նման փաստեր վկայում են այն մասին, որ հարցերի ճիշտ կուսակցական լուծման բոլոր նորմերը վերացված էին, ամեն ինչ ենթարկված էր մեկ անձի կամայականությանը:



ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1 ԽՄԿԿ XX համագումարը տեղի ունեցավ 1956 թ. փետրվարի 14—25-ը: Նրա աշխա-*
*տանքներն ընթանում էին Մոսկվայում, Կրեմլի մեծ պալատում: ԽՄԿԿ Կենտկոմի առաջին քար-*
*տուղար Ն. Ս. Խրուշչովի «Անհատի պաշտամունքի և նրա հետևանքների մասին» զեկուցումը*
*պատգամավորները լսեցին 1956 թ. փետրվարի 25-ի առավոտյան գանփակ նիստում:*
*Համագումարի գանփակ նիստ անցկացնելու և նրանում «Անհատի պաշտամունքի և նրա*
*հետևանքների մասին» զեկուցմամբ Ն. Ս. Խրուշչովի ելույթի վերաբերյալ առաջարկը կատար-*
*վել էր ԽՄԿԿ Կենտկոմի նախագահության կողմից 1956 թ. փետրվարի 13-ին: Նույն օրն էլ*
*տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտկոմի պլենում, որն ընդունեց այդ առաջարկը:*
*Համագումարի փակ նիստի ընթացքը չէր սղագրվում: Զեկուցումն ավարտվելուց հետո*
*որոշվեց նրա վերաբերյալ մտքերի փոխանակություն չսկսել: Ն. Ա. Բուլգանինի առաջարկով,*
*որ նախագահում էր այդ նիստում, համագումարը միաձայն ընդունեց «Անհատի պաշտամունքի*
*և նրա հետևանքների մասին» որոշումը, որը հրապարակվեց մամուլում, ինչպես նաև որոշում՝*
*կուսակցական կազմակերպություններին զեկուցման տեքստն ուղարկելու՝ առանց այն բաց*
*մամուլում տպագրելու վերաբերյալ:*
*1956 թ. մարտի 1-ին զեկուցման տեքստը, որ նախատեսված էր կուսակցական կազմա-*
*կերպություններին ուղարկելու համար, Ն. Ս. Խրուշչովի երկտողի հետ միասին ուղարկվեց ԽՄԿԿ*
*Կենտկոմի նախագահության անդամներին ու անդամության թեկնածուներին, քարտուղարներին:*
*Այդ տեքստում կատարվել էր ոչ մեծ ոճական և խմբագրական ուղղում. տրված էին հղում-*
*ներ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի երկերին և այլ քաղվածաբար բերվող աղբյուրնե-*
*րին, ճշգրտված էին առանձին փաստաթղթերի ընդունման թվականները, մտցված զեկուցողի*
*շեղումները նախապես պատրաստված տեքստից, նշված պատվիրակների ռեակցիան զեկուցման*
*այս կամ այն դրույթների նկատմամբ:*
*1956 թ. մարտի 5-ին ԽՄԿԿ Կենտկոմի նախագահությունն ընդունեց «ԽՄԿԿ XX համա-*
*գումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովի «Անհատի պաշտամունքի և նրա հետևանքների մասին» զե-*
*կուցմանը ծանոթացնելու վերաբերյալ» որոշումը: Նրանում նշված էր. «1. Առաջարկել մարզ-*
*կոմներին, երկրկոմներին և միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին*
*ծանոթացնել բոլոր կոմունիստներին ու կոմերիտականներին, ինչպես նաև բանվորների, ծա-*
*ռայողների ու կոլտնտեսականների անկուսակցական ակտիվին ԽՄԿԿ XX համագումարում ընկ.*
*Ն. Ս. Խրուշչովի «Անհատի պաշտամունքի և նրա հետևանքների մասին» զեկուցմանը. 2. Ընկ.*
*Խրուշչովի զեկուցումը կուսակցական կազմակերպություններին ուղարկել «ոչ մամուլի հա-*
*մար» մակագրությամբ, բրոշյուրի վրայից հանելով «խիստ գաղտնի» մակագրությունը: Այս*
*որոշման համաձայն զեկուցումն ընթերցվում էր բոլոր կուսակցական և կոմերիտական ժողով-*
*ներում: Այդ տեքստն էլ հրապարակվում է ամսագրի սույն համարում:*
*Խրուշչով Ն. Ս. (1894—1971), կուսակցության անդամ 1918 թ., քաղաքացիական պատե-*
*րազմի մասնակից, սկսած 1920 թ. գտնվել է կուսակցական և տնտեսական աշխատանքում:*
*1935—1938 թթ. ՀամԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի և Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար,*
*1938—1939 թթ. Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի առաջին քարտուղար, միաժամանակ 1944—*
*1947 թթ. Ուկրաինայի Ժողկոմխորհի (Մինիստրների խորհրդի) նախագահ: Հայրենական մեծ*
*պատերազմի տարիներին մի շարք ռազմաճակատների ռազմական խորհուրդների անդամ:*
*1949—1953 թթ. կուսակցության Կենտկոմի քարտուղար, Մոսկվայի կոմիտեի առաջին քար-*
*տուղար: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ 1934 թվականից: Կենտկոմի քաղբյուրոյի (Նախագա-*
*հության) թեկնածու 1938 թվականից, իսկ 1939—1964 թթ. անդամ: 1953—1964 թթ. ԽՄԿԿ*
*Կենտկոմի առաջին քարտուղար, միաժամանակ 1958—1964 թթ. ԽՍՀՄ Մինիստրների խոր-*
*հրդի նախագահ: 1964 թ. թոշակառու:*
*Բուլգանին Ն. Ա. (1895—1975), կուսակցության անդամ 1917 թ., Խորհրդային Միության*
*մարշալ (1947—1958 թթ.), 1958 թվականից գեներալ-գնդապետ: Սկսած 1922 թ. գտնվել է*
*տնտեսական աշխատանքում, 1931—1937 թթ. Մոսխորհրդի նախագահ: 1937 թվականից ԽՍՀՄ*
*ժողկոմխորհի նախագահի տեղակալ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին մի շարք*
*ռազմաճակատների զինվորական խորհուրդների անդամ: 1944 թվականից պաշտպանության պե-*
*տական կոմիտեի անդամ և ԽՍՀՄ պաշտպանության ժողկոմի տեղակալ: 1947 թվականից ԽՍՀՄ*
*Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ և միաժամանակ 1947—1949 թթ. ԽՍՀՄ զինված*
*ուժերի մինիստր: 1953—1955 թթ. ԽՍՀՄ պաշտպանության մինիստր: 1955—1958 թթ. ԽՍՀՄ*
*Մինիստրների խորհրդի նախագահ: ԽՄԿԿ Կենտկոմի անդամ 1934—1961 թթ.: Կենտկոմի քաղ-*
*բյուրոյի (Նախագահության) անդամ 1948—1958 թթ.:*
*2. Բլոս Վիլհելմ (1849—1927), գերմանացի հրապարակախոս և պատմաբան:*
*3. Լասալ Ֆերդինանդ (1825—1864), գերմանական բանվորական շարժման գործիչ:*
*4. Խոսքը «Նամակ համագումարին»-ի մասին է, որը ներառում էր այն գրառումները, ո-*
*րոնք թելադրված են Վ. Ի. Լենինի կողմից 1922 թ. դեկտեմբերի 23-ին, 24-ին, 25-ին, 26-ին,*

29-ին և 1923 թ. հունվարի 4-ին (տե՛ս Երկ. լիակատ. ժող., հ. 45, էջ 405—411)։

5. Զինովև Գ. Ե.։

6. Նկատի է առնվում «ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի որոշման նախագիծը»՝ գրված Վ. Ի. Լենինի կողմից 1920 թ. հոկտեմբերի 26-ին (տե՛ս Երկ. լիակատ. ժող., հ. 41, էջ 471, 647)։

7. Բերիա Լ. Պ. (1899—1953), ԽՍՀՄ ներքին գործերի նախկին ժողկոմ (մինիստր), ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, ԽՄԿԿ Կենտկոմի նախագահության անդամ։ 1953 թ. հուլիսին ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը հակակուսակցական և հակապետական հանցավոր գործողությունների համար հանեց նրան Կենտկոմի կազմից և վտարեց կուսակցությունից։ Նա հեռացվեց բոլոր պետական պաշտոններից։

1953 թ. դեկտեմբերի 23-ին ԽՍՀՄ Գերագույն դատարանի հատուկ դատական ատյանը դատապարտեց Լ. Պ. Բերիային գնդակահարության։

8. ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1941 թ. հոկտեմբերի 2-ի որոշմամբ նախատեսվում էր հրավիրել ԽՄԿԿ Կենտկոմի պլենում 1941 թ. հոկտեմբերի 10-ին հետևյալ օրակարգով. «1. Մեր երկրի ռազմական դրությունը։ 2. Կուսակցական և պետական աշխատանքը երկրի պաշտպանության համար»։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1941 թ. հոկտեմբերի 9-ի որոշմամբ պլենումի հրավիրումը հետաձգվեց «նկատի ունենալով ռազմաճակատներում վերջերս ստեղծված տագնապալի դրությունը և ռազմաճակատներից ղեկավար ընկերներին կտրելու աննպատակահարմարությունը»։ Պատերազմի տարիներին եղել է Կենտկոմի միայն մեկ պլենում, որը կայացել է 1944 թ. հունվարի 27-ին։

9. Խոսքն այն հանձնաժողովի մասին է, որ կազմել է ԽՄԿԿ Կենտկոմի նախագահությունը 1955 թ։ դեկտեմբերի 31-ին՝ կուսակցության XVII համագումարի կողմից ընտրված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամների և անդամության թեկնածուների և 1935—1940 թթ. ընթացքում մյուս խորհրդային քաղաքացիների նկատմամբ զանգվածային ճնշամիջոցների նյութերի ուսումնասիրման համար։ Հանձնաժողովի կազմի մեջ մտան ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ Պ. Ն. Պոսպելովը և Ա. Բ. Արիստովը, ՀԱՄԿԽ-ի նախագահ Ն. Մ. Շվերնիկը, ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահի տեղակալ Պ. Տ. Կոմարովը։

10. Ենուկիձե Ա. Ե. (1877—1937), կուսակցության անդամ 1898 թ., 1918 թվականից Համառուսաստանյան Կենտգործկոմի և ԽՍՀՄ կենտգործկոմի նախագահության անդամ։

11. Խոսքը վերաբերում է ԽՍՀՄ Կենտգործկոմի 1934 թ. դեկտեմբերի 1-ի «Տեռորիստական ակտերի նախապատրաստման կամ կատարման վերաբերյալ գործերը վարելու կարգի մասին» որոշմանը, որը հետագայում ստացավ «1934 թ. դեկտեմբերի 1-ի օրենք» անվանումը և գործեց մինչև 1956 թ., Տվյալ որոշումը չի մտցվել ԽՍՀՄ Կենտգործկոմի նստաշրջանի կողմից հաստատվելու՝ ինչպես դա պահանջվում էր ըստ ԽՍՀՄ սահմանադրության։

12. Նիկոլաև Լ. Վ. (1904—1934), կուսակցության անդամ է եղել 1924 թվականից։ Որոշ ժամանակ եղել է կուսակցության Լենինգրադի մարզկոմի և ՀամԿ(բ)Կ պատմության Լենինգրադի ինստիտուտի հրահանգիչ։ 1934 թ. ապրիլին ազատվել է ինստիտուտից, ոչ մի տեղ չի աշխատել։ 1934 թ. դեկտեմբերի 1-ին մահափորձ կատարեց Ս. Մ. Կիրովի դեմ։ Դատապարտված է և գնդակահարված։

13. Ժդանով Ա. Ա. (1896—1948), կուսակցության անդամ 1915 թ., 1934—1948 թթ. ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար և միաժամանակ 1934—1944 թթ. Լենինգրադի մարզկոմի և քաղկոմի առաջին քարտուղար։ 1935 թվականից քաղբյուրոյի անդամության թեկնածու։ 1939 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։

14. Կագանովիչ Լ. Մ. (ծնվ. 1893 թ.), կուսակցության անդամ է եղել 1911 թ.։ 1924 թվականից Կենտկոմի անդամ, 1925 թ.՝ քարտուղար, 1930 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։ 1957 թ. հակակուսակցական գործունեության համար հանվել է ԽՄԿԿ Կենտկոմի կազմից։ 1962 թ. վտարվել է կուսակցությունից։

15 Մոլոտով (Սկրյաբին) Վ. Մ. (1890—1986), կուսակցության անդամ 1906 թվականից։ 1920 թ. Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար։ 1921—1930 թթ. կուսակցության Կենտկոմի քարտուղար։ 1930—1941 թթ. ԽՍՀՄ ժողկոմխորհի նախագահ։ 1941—1957 թթ. ԽՍՀՄ ժողկոմխորհի (Մինիստրների խորհրդի) նախագահի առաջին տեղակալ, միաժամանակ 1941—1945 թթ. Պաշտպանության պետական կոմիտեի նախագահի տեղակալ։ 1939—1949 և 1953—1956 թթ. ԽՍՀՄ արտաքին գործերի ժողկոմ, այնուհետև՝ մինիստր, պետվերահսկողության մինիստր։ 1957 թվականից ԽՍՀՄ դեսպան ՄԺՀ-ում։ 1960 թվականին ՄԱԳԱՏԷ-ին (Ավստրիա) առընթեր ԽՍՀՄ ներկայացուցիչ։ 1921 թվականից կուսակցության Կենտկոմի անդամ։ 1921—1926 թթ. ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի (նախագահության) անդամության թեկնածու, իսկ 1926—1957 թթ.՝ անդամ։ 1957 թ. հակակուսակցական գործունեության համար հանված է ԽՄԿԿ Կենտկոմի կազմից։ 1962 թ. վտարված է ԽՄԿԿ անդամությունից։ 1984 թ. վերականգնված է որպես կուսակցության անդամ 1906 թվականից։

16. Եժով Ն. Ի. (1895—1940), կուսակցության անդամ է եղել 1917 թվականից։ Կուսակցության XVII համագումարում ընտրվել է Կենտկոմի անդամ։ 1935 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար, կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահ։ 1936—1938 թթ. ԽՍՀՄ ներքին գործերի ժողկոմ, այնուհետև ջրային տրանսպորտի ժողկոմ։ 1938 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու։ Ձերբակալվել է 1939 թ., գնդակահարվել է 1940 թ. հունվարին՝ համաձայն ԽՍՀՄ գերագույն դատարանի զինվորական կոլեգիայի դատավճռի։

17. Յագոդա Գ. Գ. (1891—1938), կուսակցության անդամ է եղել 1907 թվականից։ 1934—1936 թթ. ՕԳՊՈՒ-ի (Միացյալ պետքաղվարչության) նախագահ, ՆԳԺԿ-ի ժողկոմ։ 1936 թվականից ԽՍՀՄ կապի ժողկոմ։ 1938 թ. դատի տրվեց այսպես կոչված «հակախորհրդային աջտրոցկիստական բլոկի» գործով և գնդակահարվեց։

18. Պոստիշև Պ. Պ. (1887—1939), կուսակցության անդամ 1904 թ.։ 1926 թվականից Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար։ 1930 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար, կազմբյուրոյի անդամ։ 1933—1937 թթ. Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի երկրորդ քարտուղար, այնուհետև՝ կուսակցության Կույբիշևի մարզկոմի առաջին քարտուղար։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ 1927 թվականից, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու 1934 թվականից։

19 Կարպով Մ. Մ. (1901—1939), կուսակցության անդամ 1920 թվականից։ Մինչև ձերբակալությունն աշխատել է որպես Ուկրաինայի Կ(բ)Կ Կիևի մարզկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ։

20. Էյխե Ռ. Ի. (1890—1940), կուսակցության անդամ 1905 թվականից։ Հեղափոխության և հանուն Լատվիայում խորհրդային իշխանության պայքարի մասնակից։ 1925 թվականից Սիբիրի երկրգործկոմի նախագահ, ՀամԿ(բ)Կ Արևմտա-Սիբիրյան երկրկոմի առաջին քարտուղար։ 1937—1938 թթ. ԽՍՀՄ հողագործության ժողկոմ։ 1930 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ, 1935 թվականից Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու։ ԽՍՀՄ Կենտգործկոմի անդամ։

21. Ուշակով Զ. Մ., Նիկոլաև-Ժուրիդ Ն. Գ., ՆԳԺԿ աշխատակիցներ։ 1939 թ. ձերբակալվել են։ 1940 թ. հունվարին գնդակահարվել են ԽՍՀՄ գերագույն դատարանի ռազմական կոլեգիայի դատավճռի համաձայն։

22. Ռուխիմովիչ Մ. Լ. (1889—1938), կուսակցության անդամ 1913 թվականից։ Հոկտեմբերյան հեղափոխության և Ուկրաինայում քաղաքացիական պատերազմի ակտիվ մասնակից։ 1920 թվականից Դոնեցկի գավգործկոմի նախագահ։ 1925 թ. անցել է պետական և կուսակցական աշխատանքի, ԽՍՀՄ պաշտպանական արդյունաբերության ժողկոմ։ 1924 թվականից կուսակցության Կենտկոմի անդամ։

23. Մեժլաուկ Վ. Ի. (1873—1938), կուսակցության անդամ 1917 թվականից։ 1920 թվականից մի շարք երկաթուղիների կոմիսար, եղել է պետական աշխատանքում, ԽՍՀՄ ժողկոմխորհի նախագահի տեղակալ։ 1927 թվականից Կենտկոմի անդամության թեկնածու։ 1934 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ։

24. Ռուձուտակ Յա. Է. (1887—1938), կուսակցության անդամ 1905 թվականից։ 1917 թվականից Մոսկվայի ժողտնտխորհի նախագահ։ 1920 թվականից երկաթուղային բանվորների Կենտկոմի նախագահ, միաժամանակ ՀԱՄԿԽ-ի գլխավոր քարտուղար, այնուհետև ՌԿ(բ)Կ Կենտկոմի Միջասբյուրոյի նախագահ։ 1923 թվականից ՌԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար։ 1924—1930 թթ. ԽՍՀՄ հաղորդակցության ճանապարհների ժողկոմ։ 1926 թվականից ԽՍՀՄ ժողկոմխորհի և Աշխատանքի ու պաշտպանության խորհրդի նախագահի տեղակալ, միաժամանակ 1931 թվականից ՀամԿ(բ)Կ ԿՎՀ-ի նախագահ և բանվորագյուղացիական տեսչության ժողկոմ։ 1923—1926 թթ. և 1934 թվականից Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, 1926—1932 թթ. Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։ Ապօրինի կերպով ճնշամիջոցի է ենթարկված։

25. Կոմարով Ն. Պ. (Սոբինով Ֆ. Ե.) (1886—1937), կուսակցության անդամ 1909 թվականից։ 1917 թ. ՌՍԴԲ(բ)Կ Պետրոգրադի կոմիտեի անդամ։ 1925 թ. ՌԿ(բ)Կ Կենտկոմի Հյուսիս-Արևմտյան բյուրոյի քարտուղար։ 1926—1929 թթ. Լենինգրադի քաղաքային և նահանգային գործկոմների նախագահ։ 1931 թվականից ՌԽՖՍՀ կոմունալ տնտեսության ժողկոմ։ Կուսակցության Կենտկոմի անդամ 1921, 1923—1930 թթ.։ Կենտկոմի անդամության թեկնածու 1922—1923 թթ.։

26. Զակովսկի Լ. Մ., 1937 թ. Լենինգրադի մարզի ՆԳԺԿ վարչության պետ։

27. Չուդով Մ. Ս. (1893—1937), կուսակցության անդամ 1913 թվականից։ 1928—1936 թթ. կուսակցության Լենինգրադի մարզկոմի երկրորդ քարտուղար։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ 1925 թվականից։

28. Ուգարով Ա. Ի. (1900—1939), կուսակցության անդամ 1918 թվականից։ 1934—1938 թթ. ՀամԿ(բ)Կ Լենինգրադի քաղկոմի քարտուղար, 1938 թվականից ՀամԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի և Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու

29. *Սմորոդին Պ. Ի. (1897—1938), կուսակցության անդամ 1917 թվականից։ 1921—1924 թթ. ՌԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար։ 1928—1936 թթ. անցել է կուսակցական աշխատանքի Լենինգրադում։ 1937 թվականից ՀամԿ(բ)Կ Ստալինգրադի մարզկոմի քարտուղար։ 1930 թվականից Կենտկոմի անդամության թեկնածու։*

30. *Պոզեռն Բ. Պ. (1882—1939), կուսակցության անդամ 1902 թվականից։ 1917—1918 թթ. Հյուսիսային ռազմաճակատի կոմիսար, այնուհետև հրամանատարական-քաղաքական պաշտոններ է վարել կարմիր բանակում։ 1921 թվականից տնտեսական ու կուսակցական աշխատանք է վարել։ 1937—1938 թթ. Լենինգրադի մարզի դատախազ։ 1930 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու։*

31. *Շապոշնիկովա Լ. Կ. (1895—1942), կուսակցության անդամ 1917 թվականից։ 1934 թվականից կուսակցության Լենինգրադի քաղկոմի բյուրոյի անդամ։*

32. *Կաբակով Ի. Դ. (1891—1937), կուսակցության անդամ 1914 թվականից։ Մինչև 1934 թ. կուսակցության Սվերդլովսկի մարզկոմի առաջին քարտուղար։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ 1925 թվականից։*

33. *Կոսիոր Ս. Վ. (1889—1939), կուսակցության անդամ 1907 թվականից։ 1917 թ. հոկտեմբերին Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեի կոմիսար։ Ուկրաինայի Կ(բ)Կ կազմակերպիչներից մեկը։ 1919—1920 թթ. Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար։ 1922 թվականից ՌԿ(բ)Կ Կենտկոմի Սիբբյուրոյի քարտուղար։ 1926 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար։ 1928 թվականից Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար։ 1938 թվականից ԽՍՀՄ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ, խորհրդային վերահսկողության հանձնաժողովի նախագահ։ 1924 թվականից ՌԿ(բ)Կ Կենտկոմի անդամ։ 1927 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, իսկ 1930 թվականից՝ անդամ։*

34. *Չուբար Վ. Յա. (1891—1939), կուսակցության անդամ 1907 թվականից։ 1918—1923 թթ. Համառուսաստանյան ժողտնտխորհի նախագահության անդամ։ 1920 թվականից Ուկրաինայի ժողկոմխորհի նախագահի տեղակալ, այնուհետև՝ նախագահ։ 1934 թվականից ԽՍՀՄ ժողկոմխորհի ու Աշխատանքի և պաշտպանության խորհրդի նախագահի տեղակալ։ 1937 թվականից ԽՍՀՄ ֆինանսների ժողկոմ։ Կուսակցության Կենտկոմի անդամ 1921 թվականից։ 1926 թվականից Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, իսկ 1935 թվականից՝ անդամ։*

35. *Կոսարև Ա. Վ. (1903—1939), կուսակցության անդամ 1919 թվականից։ 1926 թվականից ՀամԼԿԵՄ Մոսկվայի կոմիտեի քարտուղար։ 1927 թվականից ՀամԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար, իսկ 1929 թվականից՝ գլխավոր քարտուղար։ 1934 թվականից ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և կազմբյուրոյի անդամ։*

36. *ՀամԿ(բ)Կ Կենտկոմի՝ 1938 թ. հունվարի 14-ին կայացած պլենումում Գ. Մ. Մալենկովի զեկուցման կապակցությամբ ընդունվեց «Կուսակցությունից կոմունիստներին վտարելիս կուսկազմակերպությունների սխալների, ՀամԿ(բ)Կ-ից վտարվածների՝ բողոքարկումներին ձևական-բյուրոկրատական վերաբերմունքի և այդ թերությունները վերացնելու միջոցների մասին» որոշումը։*

37. *Ռոդոս Բ. Վ. (1905—1956), ԽՍՀՄ ՆԳԺԿ-ՊԱԺԿ հատուկ կարևոր գործերով հետաքննչական բաժնի պետի տեղակալ, գնդապետ։ Անձամբ մասնակցել է հետաքննչական գործերի կեղծմանը։ 1956 թ. ԽՍՀՄ գերագույն դատարանի զինվորական կոլեգիայի կողմից դատապարտված է գնդակահարության։*

(Շարունակությունը՝ հաջորդ համարում)

**«Известия ЦК КПСС», 1989, № 3**

---



# ԿԻՆՈՆ, ՄԵՆՔ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ԳԱՂԱՓԱՐԸ

**Ս. ՀԱՍՄԻԿՅԱՆ**

Այն, ինչ պրոպագանդա ենք կոչում, լուրջ դժվարություններ է կրում մեր կյանքի արդի փուլում: Չէ որ պրոպագանդան ենթադրում է անվերապահ առկայությունը այնպիսի կոնցեպցիաների ու պատկերացումների, որոնք արժանի են ամենալայն տարածման, ներդրման, երբեմն, նաև՝ ներշնչման: Ներկայումս կայուն գաղափարների համալիրը նոր մեկնություններ է պահանջում, այդ իսկ պատճառով հնարավոր չէ ցանկացած հաղորդագրությունը եզրափակել անվերապահորեն անվիճելի եզրակացություններով ու կոչերով, ինչպես արվում էր դեռևս ոչ հեռու անցյալում: Վերջերս կայացած ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում ծանոթ կարգախոսներով («Տերություն, Հայրենիք, Կոմունիզմ») հռետորներից մեկի ճառը թեև ոտքի հանեց ամբողջ դահլիճը, բայց դա ավելի շուտ տուրք էր իներցիային:

Խոստովանենք, որ այսօր հեշտ չէ կառչել որևէ կարծր բանից՝ վստահ լինելով, որ դա ընդմենը բեկոր չէ... Փրկարար «վերակառուցումը» որքան ավելի հաճախ ու ջանադրաբար է արտաբերվում, այնքան ավելի պարզ է դառնում, որ այդ հասկացությանը կարելի է ներարկել ամենատարբեր հետաքրքրություններին համապատասխանող բովանդակություն և, միևնույն է, այդ հմայախոսքերից ու ձեռնածություններից մենք ոչ հարստանում ենք, ոչ էլ երջանկանում: Ուրեմն ստիպված ենք ընդունելու, որ այսօր չկա որևէ դրույթ, որը կկարողանար կախարդական բանալու նման բացել բավական լուրջ պրոբլեմների ու հակասությունների կողպեքը: Այդպիսի հնարավորություն չկա, բայց դա չի վերացնում որոնելու իրավունքն ու անհրաժեշտությունը, ընդ որում, հարկ է ընդգծել՝ այսօրվա վիճակով զուրկ լինելով համապիտանի մեթոդաբանությունից: Այս, հաճախ ստիպված ենք լինելու սկսել այսպես ասած «նոր էջից»՝ իմանալով, որ այն վայրկենապես չի լցվելու «անվնասբեկ ճշմարտություններով», սակայն հուսալով, որ առջևում մեզ, այնուամենայնիվ, սպասում է մտքի գուցեև ինչ-որ մասնավոր փայլատակում, երբ անգամ ոչ մեր մտքի, ապա նրանց, ով անում է մեզ... Սա արդեն ոչ թե պրոպագանդա է, այլ համատեղ ստեղծագործություն: Չէ որ այսօրվա պահանջը միլիոնների միտքն արթնացնելն է:

Կա «կոնստրուկտոր» տիպի այսպիսի մանկական խաղալիք՝ խորանարդիկների, քառակուսիների, արտասովոր ձև ունեցող մարմինների հավաքածու... Երեխան, որին ոչինչ չեն սովորեցրել, դետալների այդ բազմությունից ինչ-որ բան է կառուցում: Կարող է ստացվել «տնակ», բայց կարող է նաև անմիջապես փլվել անհեթեթ շինությունը: Երեխան չգիտի, թե ինչ հերթականությամբ պետք է վերցնել դետալները. նա ինքնուրույն է որոնում և սխալվում: Թե ինչ է ուզում կառուցել, նույնպես կարևոր չէ: Կարևորն այն է. որևէ բան կստացվի՞, թե՞ ոչ: Այդ բազմությունից ընտրենք երեք «խորանարդիկ»՝ գուցեև անհամաչափելի ու անզուգակցելի, և տեսնենք, թե ինչ կստացվի: Գիտական փորձի մաքրության ջատագովները անմիջապես կասեն. մակարդակներն անհամեմատելի են... Սակայն ո՞վ գիտե, ինչ մակարդակի վրա պետք է մնալ:

Եվ այսպես. «կինո», և այսպես, «մենք», և այսպես «ազգային գաղափար»: Մի շտապենք մեթոդաբանական առարկություններ անել: Պայմանավորվենք, որ ոչ մի մեթոդաբանություն չկա: Ինչի՞ կհասնենք մենք և ի՞նչը կըմբռնենք մեր «անարատությունից» զատ, եթե անընդհատ հոգանք «կուսական մաքրության» մասին: Եվ հետո, մի՞թե մենք գիտենք, թե ինչ իմաստ է դրված «խորանարդիկներից» յուրաքանչյուրում: Կարծում եք, կինոն սոսկ կինոնկարնե՞ր են, արվեստի ստեղծագործություններ, որոնք ինչ-որ

---

*ՀԱՍՄԻԿՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԳՈՒՐԳԵՆԻ— ՀԽՍՀ կուլտուրայի վաստակավոր գործիչ, դոցենտ, արվեստագիտության թեկնածու, կինոքննադատ։*

մարդիկ նկարահանում ու տարածում են: Կարծում եմ, կինոն կինեմատոգրաֆիստների աշխատա՞նքն է, հանդիսախաղ, որը կոչված է զվարճացնելու ու շահույթ բերելու: Ո՛չ, կինոն համամոլորակային տեսողություն է, մեր դարում ստեղծված ու համակերպը չունեցող լեզու: Կյանքիս ընթացքում տեսա լավագույն կինոնկարը ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի նիստերի անընդմեջ ցուցադրումն էր կենտրոնական հեռուստատեսության երկրորդ ծրագրով՝ առանց պաստառման ու մեկնաբանման: Ինչ-որ մեկը ժամանակին վարկածային կանխագուշակություն է արել, թե իդեալական կինոնկարը մարդու կյանքի արձանագրումն է ծննդյան օրից մինչև մահ: Պարզ է, որ դա իդեալական, բայց անիրագործելի կինոնկար է: Ավելացնենք նաև, որ եթե նույնիսկ այն հնարավոր լիներ տեխնիկապես, միևնույն է, նրանում թաքնված կլիներ առանց հանդիսատեսի, այսինքն՝ առանց «մեզ» առանց «մենք»-ի մնալու սպառնալիքը: Տվյալ դեպքում համագումարի տրանսլյացիան երկրի «իդեալական» կինոնկարի լիովին հաջողված հոյակապ մի դրվագ էր, որն իրականացվեց նաև այն պատճառով, որ գոյություն ունենք «մենք», գոյություն ունի հանդիսատեսը:

Ես չեմ վախենում ուղղադավան գեղագետների զայրույթը հարուցելուց. համագումարը՝ համագումար, սակայն ի՞նչ կապ ունի այստեղ գեղեցիկի կատեգորիան, ո՞ւր է գեղարվեստական ընտրությունը, ո՞ւր է արարչի ձեռքը, կամ գուցե ես հակված եմ կարծելու, թե դա հմուտ ռեժիսորի բեմադրած ներկայացու՞մ էր: Ոչ մի դեպքում, դա ներկայացում չէր, այլ հենց կինոնկար, ուր պարտադիր չէ հեղինակի ներկայությունն ու միջամտությունը: Եվ հետո, ո՞վ է համոզված, թե որտեղ պետք է փնտրել այդ հեղինակին:

Հենց նման կինոյում, եթե այն ամենից առաջ համամոլորակային տեսողություն է, հեղինակը ինքը կյանքն է, իրականությունը: Իսկ ինչ վերաբերում է այսպես ասած «տեսակետին», ապա այն չի կարող գոյություն ունենալ մեզնից՝ ընկալողներիցս դուրս: Մենք այդ համամոլորակային կինոստեղծագործության համահեղինակներն ենք: Եվ մեր տեսակետը վայրկենապես արգասավորում է այդ կինոյի բովանդակային պոտենցիալը:

Իհարկե, մենք տարբեր ենք: Ես, նա, երրորդը... Ինձ համար, օրինակ, Անդրեյ Սախարովի էկզեկուցիան, ի տես բազմամիլիոնանոց հեռուստալսարանի, հիշողությանս մեջ արթնացրեց ու ակնառու պլաստիկ տեսք տվեց «սառը պատերազմի» և 37-ի դարաշրջանում երկրագնդի բոլոր լայնություններում սանձազերծված և, ինչպես պարզվեց, դեռևս արխիվ չհանձնված «վհուկների գիշերաժողովը»... Եվ հուսով եմ, որ ինձ նմանները, այնուամենայնիվ, մեծամասնություն են կազմում, քանի որ Կրեմլի պալատը ի վերջո մեկ դահլիճ է և ոչ ավելի, իսկ լսարանը, բացարձակ մեծամասնությունը (և սա է այդ կինոյի հասարակական արժեքը) այդ դահլիճում չէ, այն ավելի շուտ Լուժնիկիում է կամ ցրված է բնակարաններում: Եվ «համընդհանուր քամահրանքը» հասցեագրված է ոչ թե նրան, ում ուղղվեց ամբիոնից, այլ, ավելի շուտ, հակառակը: Ժամանակակից կինոնկարի կադրերը մենք պետք է ընթերցենք ոչ թե բառացիորեն, այլ միայն ու միայն՝ համատեքստում:

Այսպիսով, կինոյից, որը նույն հաջողությամբ նաև հեռուստատեսություն է (ընդհանրապես, արժե տերմինների հարցում պայմանավորվել, չէ որ «հեռուստատեսություն» ասել է թե «տեսնել հեռուն», սակայն գուցե «շարժման գրանցումը»՝ կինեմատոգրաֆը, ավելի ընդհանրական հատկանիշ է, որովհետև «շարժվող պատկերները» էականորեն փոխում են մտածողությունը), բնականորեն գալիս ենք «մենք»-ը հասկանալուն:

Ով ենք «մենք»: Ես «մյուսը», բոլորս միասին: Հնարավոր է, որ կրկին չկարողանանք դուրս գալ կախարդված շրջանակից: Սախարովին ծափահարություններով խանգարողներից մեկը կարող է նույնպես պատահաբար խցկվել «մենք»-ի շարքեր: Չէ որ ըստ մասնավոր բնակարանների ու հեռուստացույցների ցրված վերացական «մենք» գոյություն չունի:

Որոշ սահմանափակումներ, այնուամենայնիվ, հարկավոր են: Խոսենք կուսակցության XX համագումարից հետո կյանք մտած սերնդի մասին, 60-ական, 70-ական, 80-ականների սերնդի... Իհարկե, դա մեկ սերունդ չէ, սակայն ինչ-որ բան միավորում է բոլորին:

Անկասկած է, որ «ձնհալի» իրադրությունում որոշ չափով վերածնվեց անհատի զգացողությունը, սկսեց հստակ գիտակցվել «ես» հասկացությունը: Որքան էլ տարօրինակ է, «մենք»-ը սկսվում է «ես»-ի իրավունքի գիտակցությունից: Թող չնեղանան մեր պապերն ու հայրերը, ովքեր բարձրացրել են «մեծ կառույցները», հաղթանակներ տարել մեծ Հայրենականում. վետերանների ու հերոսների նրանց փառքը անձեռնմխելի է: Եվ նրանց ոչ թե մեղքն է, այլ դժբախտությունը, կարող է նաև՝ եզովքը, որ այդ սերնդի սեփական «ես»-ը ոչ միայն սոսկ ոտնահարված էր «անձնականի նկատմամբ հասարակական արժեքների առաջնայնության» կարգախոսով, այլև բռնությամբ վտարված նույնիսկ ոչ գիտակցության, այլ ենթագիտակցության ծայրամասը: Անհատի պաշտամունքը փիլիսոփայորեն սնանկ հասկացություն է, հենց անհատն էր, որ վերացված էր համընդհանուր ապագյուղացիացման ու ֆիզիկական հետապնդման, ոչ միայն այլախոհության, այլև ինքնապաշտպանության բնական իրավունքի համար ոչնչացման պայմաններում: «Որդին հոր համար պատասխանատու չէ» երեսպաշտ դրույթը անբարոյականության ու մանկուրտիզմի գագաթնակետն է՝ բարձրացված բարոյականության նորմերի ու արժեքների համակարգի աստիճանին: Այդ պատմական մեղքից ապաքինվելը հեշտ չէ. այս առաջին, որոշ իմաստով իմպուլսիվ համագումարից անգամ տասնամյակներ անց գումարվելիք համագումարներից շատերը ստիպված են լինելու տուրք տալու «հլու մեծամասնության ագրեսիվությանը» և ընդհանրապես մտածողության իներցիալությանը:

«Ձնհալը» «ես»-ի մեջ հալեցրեց օտարացածության ու ճնշվածության սառույցը: Դա, անշուշտ, մարդու մեջ արթնացրեց ստեղծագործական և քաղաքացիական ակտիվությունը, բայց նաև բարձրացրեց հարցեր, որոնք այլևս հնարավոր չէր չնկատելու տալ. «Անկողինը՝ արդեն բաց, ու դու հեզ, մոլորված, շշնջում էիր հլու. «Հետո՞ ինչ է լինելու» (Եվգ. Եվտուշենկո): Սրանք լուրջ, բարդ հարցեր են, որոնց չէր կարող պատասխանել բանաստեղծը:

«Ես»-ը նայեց ինքն իրեն, գուցե զարմացավ սեփական մկաններում ամփոփված էներգիայից, ապշեց, որ իր երևակայության մեջ կարող են առկայծել այդքան շատ անսպասելիորեն վառ գաղափարներ, որ այդքան հեշտ ու անբռնազբոս են հանգավորվում միմյանցից շատ հեռու կանգնած գաղափարները... Սակայն 60-ական թվականների սկզբին անսպասելիորեն պարզվեց, որ կարելի է թռչել տիեզերք, իսկ հետո ամենասովորական ձևով պայթել սովորական ինքնաթիռի հետ միասին: Կարելի է աշխարհի ամենահզոր պետության քաղաքացիների համար ստեղծել առավելագույն բարեկեցության օրակարգ. բայց և ամենածամծմված եղանակով սպանել այդ նույն պետության պրեզիդենտին... Այո, միաժամանակ ըմբռնվում ու գիտակցվում էր անհատի և՛ ազատագրումը, և՛ զարմանալի անպաշտպանվածությունը. այս իրողությունը միանգամից բացահայտեց իր ողբերգական եզրը, և ելք որոնող անհատը սկսեց տենդագին դեսուդեն ընկնել:

Պատմության հերթական շրջապտույտում մարդուն սպասում էր դավանանական «կուռ»՝ կարիերայի և անձնական բարեկեցության գայթակղությունը: Պետք չէ թերագնահատել այդ «հրապուրանքը», որն այնքան էլ անվնաս չէ, որքան կարող է թվալ առաջին հայացքից: Այն ամենազոր է, քանի որ միշտ արդարացում ունի (ամեն ոք ուզում է նորմալ ապրել, և մի՞թե պախարակելի է դրան ձգտելը). քաղքենիության դեմ ուղղված բոլոր կշտամբանքներն ապարդյուն են, որովհետև մենք իրավունք չունենք մարդուց պահանջմունքների սահմանափակում պահանջելու, առավել ևս՝ խաղաղ ժամանակաշրջանում: Բայց «կուռն» ամենազոր է նաև այն պատճառով, որ սկզբունքորեն հասանելի է, եթե առաջնահերթ խնդիր համարել հենց անձնական շահը և ամեն կերպ ձգտել դրան՝ չխորշելով միջոցներից: Այս հեշտ ճանապարհով հասցրին գնալ նրանք, ում արթնացած «ես»-ը չվերանեց անհատի, և հենց այդ հողի վրա էլ ծիլեր տվեց «լճացման» գիտակցությունն ու հոգեբանությունը: Ըստ էության, հասարակական գիտակցության տեղը գրավեցին ոչինչ չնշանակող շաբլոնները, գիտակցությունը դադարեց զարգանալ, իսկ մի օր, նաև՝ գործել: Առաջացավ երկտակ բարոյականություն, մեկը՝ խոսելիս, մյուսը՝ գործելիս, երբ ամեն բան ստորադասված էր անձնական շահին, և ցանկացած բարոյականություն իմաստազրկվում էր:

«Ես»-ը բազմավորում էր պետության հաշվին կազմակերպվող խնջույքներում, պետերի և մայրաքաղաքից եկած «ռևիզորների» պատվին բարձրացվող բաժակաճառերը շողոքորթությամբ ու շաղակրատանքով գերազանցում էին մեկը մյուսին: Ճիշտ է, «ես»-ը, որպես կանոն, չէր ներփակվում, ինչպես «փղոսկրե աշտարակում». խմբակային շահերը բազմաթիվ «ես»-երին միավորում էին մաֆիաներում, որոնք մշակում էին վարքի ու պատվի սեփական, բավական խիստ կանոնները՝ տաբու դնելով այն ամենի վրա, ինչը կարող էր վտանգ ներկայացնել այդ «ես»-երից յուրաքանչյուրի համար: Սակայն երբ վտանգն անխուսափելի էր դառնում, կարելի էր հանուն «խմբի» շահերի զոհել առանձին «ես»-ը: Բայց դա կեղծ միավորում էր, որքանզի ոչինչ այդ աստիճան անհուսալի չէ, որքան շահի վրա հիմնված միավորումը, որը ստիպում է դավաճանել կամ միայնակ թողնել երեկվա ընկերոջը:

Լճացումը ճահիճ է, ուր ամեն ոք միայնակ է կործանվում, վաղ թե ուշ այն անխուսափելիորեն կլանում է բոլորին, ոչ ոքի վիճակված չէ փրկվել: Որտե՞ղ է այն ճյուղը, որից կարելի է կառչել, և հետո ի՞նչ հույս կա, որ դա ծղոտ չէ: Չէ որ ծանրության ուժին, հենց ուժին հարկ է հակադրել մեկ այլ ուժ՝ ծանրություն: Իսկ դրա համար պետք է ձեռք ձեռքի տալ, միասին գործել: «Ես»-ը կարող է փրկվել, եթե միայնակ չմնա: Անհատը կարող է միավորվել մեկ ուրիշ անհատի հետ, և այդ միությունը լոկ այն դեպքում կդառնա միաձույլ, անվտանգության ու փրկության երաշխիք, եթե գոյացող «մենք»-ը բեղմնավորվի Գաղափարով, այսինքն՝ ոգեկոչվի:

Փորձենք հասկանալ, թե երբվանից և ինչու մենք սկսեցինք փախչել հենց միայն «գաղափարախոսություն» բառից: Դե իհարկե, դա ստալինիզմի ժառանգությունն է, երբ գաղափարախոսությունն օգտագործվում էր հակառակորդին վերջնականապես ոչնչացնելու համար, հենվելով հրեշավոր այն դրույթին, թե որքան մոտենում ենք կոմունիզմին, այնքան սրվում է դասակարգային պայքարը: Դրա հետ մեկտեղ փարիսեցիաբար հորջորջվում էր. «Կյանքը դարձել է լավ ու ուրախ»: Նման պայմաններում գաղափարախոսությունը վերջին հաշվով դատապարտված է հեղինակազրկման ու այլասերման:

Պետք է հստակորեն գիտակցել, որ թե՛ քաղաքականությունը և թե՛ գաղափարախոսությունը

վերաբերում են վերնաշենքին, սակայն դա չի նշանակում, թե դրանք հավասարանշանակ են ու հավասարամեծ: Գաղափարախոսությունը ներառնում է նաև ստրատեգիան, իսկ քաղաքականությունը ընդամենը տակտիկա է: Վերջինիս գերագնահատումը մեզ կարող է թողնել կոտրած տաշտակի առջև, որից ջրի հետ նաև «երեխան» էլ է դուրս նետվել:

«Դուրս նետելով» գաղափարախոսությունը, «լճացումը» ազատված «սուրբ տեղը» հանույքով նախապատրաստեց բոլոր բարոյական սկզբունքներից լիովին ազատագրված մերկանտիլիզմի (չարչիականության) համար. եսակենտրոնությունը, շահամոլությունն ու ցինիզմը վայրկենապես դուրս մղեցին հոգևորը: Հեռանալով լճացումից, մենք պատրաստ ենք բոլոր մեղքերը բարդել գաղափարախոսության վրա՝ մոռանալով, որ հրաժարվելով մի խումբ իսկապես արժեզրկված գաղափարներից, մենք իրավունք չունենք հրաժարվելու գաղափարախոսությունից ընդհանրապես և, մասնավորապես, արվեստի ապագաղափարայնացման դրույթը ոչ միայն օրինաչափ չէ, այլև՝ անիմաստ է:

Վերջին տարիներին խորհրդային կինոնկարների մի ամբողջ հոսանք կարծես կոչված է պսակազերծելու որոշակի գաղափարախոսական դրույթները, ընդհանուր առմամբ արժեքների այն համակարգը, որը մեր հասարակական գիտակցության մեջ ձևավորվել կամ կառուցվել է պատմության հայտնի ժամանակաշրջանում: Այնպիսի կինոնկարների ապակառուցվածքայնությունը, ինչպիսիք են «Փոքրիկ Վերան» և «Շատրվանը», հասկանալի ու արդարացված է ոչ միայն բուն գեղագիտական իմաստով (մեկում՝ կյանքի ճշմարտության մերկության ոճային միտումը, մյուսում՝ կյանքի ճշմարտության գրոտեսկային սրումը): Այդ ամենը հավաստում է, որ մեր զարգացման ներկա փուլը միջանկյալ է. իսկապես վերակառուցման պտուղները դեռևս պլաստիկորեն շոշափելի չեն (վաճառասեղանները դեռ դատարկ են): Այդ ամենն ունի իր բացատրությունը, սակայն ինչու՞, այդուհանդերձ, այդ դեկոնստրուկտիվ կինոնկարները, որոնցում հանված են ոչ հեռավոր անցյալի արգելքներից շատերը, տեղ-տեղ շփոթեցնում են անգամ գերինտելիգենտ հանդիսատեսին, որը թե՛ երեկ, թե՛ այսօր էկրանի վրա լրիվ ճշմարտության կողմնակիցն է: Երկար եմ խորհել այդ մասին և հանգել եմ այն եզրակացության, որ ապագաղափարայնացումը կարող է սնել արվեստի առանձին ստեղծագործություններ, որոնցում քանդելն ինքնանպատակ է, սակայն արդեն հաջորդ ստեղծագործության մեջ արվեստն անպայման կաղաղակի գաղափարի մասին, առանց որի այն չի պատկերացնում ո՛չ իր նշանակությունը, ո՛չ էլ գոյությունը: Կատարսիսը (հին աշխարհի մարդկանց հնարանքը չէ) ինտելեկտի համառ պահանջմունքն է գտնելու ելքը եթե ոչ կյանքում, գոնե մտքի ու երևակայության ոլորտում:

Իսկ որտե՞ղ է ելքը: Գաղափարի մեջ, առանց դրա յոլա չես գնա:

Ըստ Գյոթեի ու Հեգելի, Բաբելոնյան աշտարակը կառուցվում էր հանուն «հոգիների միաբանման»: Կարևոր չէ, որ շինարարությունը մինչև վերջ չհասցվեց, շինությունը փլվեց՝ միաբանումը ողբերգականորեն չկայացավ ու մարդիկ ցրվեցին և՛ ըստ հետաքրքրությունների, և՛ ըստ ազգային բնակարանների:

Այսօր աշխարհը հայտնվել է միջուկային և էկոլոգիական աղետի իրական սպառնալիքի առջև. տեսանելի է նաև այն անդունդը, ուր կարող է ընկնել բնակարաններից յուրաքանչյուրը: Հայաստանի երկրաշարժը, ինչպես Չեռնոբիլը համընդհանուր կործանման Հովհաննու Հայտնության նախակարապետներն են: «Բաբելոնյան խառնաշփոթությունը» կարող է ներշնչել և՛ միստիկական, և՛ տիեզերական սարսափ: Սակայն մեկուսացված մարդկային ճակատագրերը, անհատի մակարդակին բարձրացած կամ չբարձրացած անթիվ «ես»-երը հոգևորություն, կնշանակի նաև ուժ կարող են գտնել ամենից առաջ իրենց «բնակարաններում», որոնցում, իհարկե, մինչև այդ պետք է կարգուկանոն հաստատել:

Վերականգնել ոտնահարված արդարությունը, վերացնել անիրավահավասարությունը... Ելքի որոնումների ընթացքում միաբանման անհրաժեշտությանը հանգած մարդիկ ամենից առաջ պահանջ են զգում մտածելու ոչ միայն սեփական անձի, այլև մերձավորի մասին: Իսկ ահա, մերձավորն առաջին հերթին նա է, ով մոտ է արյունով, ազգակցությամբ, այսինքն՝ ըստ ազգային հատկանիշի: Ազգային գաղափարը սկսեց հավակնել ինչ-որ համընդհանրության, առավել ևս՝ աշխարհի սոցիալ-քաղաքական վերափոխման անհիմն նախագծերի ֆոնի վրա:

Կարող ենք հարցնել, ժամանա՞կն է արդյոք հանգրվանելու ազգայինի ափին, երբ նոր մտածողությունը կոչում է համաշխարհային հաշտության: Արդյոք այստեղ հակասություն չկա՞: Անշուշտ, հակասությունն առկա է, սակայն այն դիալեկտիկական բնույթի է և կարող է հաղթահարվել միայն բնական ճանապարհով, այն կարելի է «հանել» միայն այն դեպքում, եթե չքշվի ավելի հեռավոր անկյուն, բարձրացվի բանականության մակարդակին, և ոչ թե խորտակվի չվերահսկվող կրքերի սանձազերծման մեջ:

Իմ հայ ընթերցողը, հետևելով խորհրդածություններիս շղթային, ուզում է անպայման հասկանալ, թե ի՞նչ նկատի ունի հեղինակը և ի՞նչ կասի Արցախի պրոբլեմի մասին, որն այսօր ողջ հայ ժողովրդին հուզող ու ոգեշնչող մեր ազգային գաղափարն է, այն գաղափարը, որը Մարքսի բնորոշմամբ, տիրելով մասսաներին, իրական ուժ է ստանում: Ուրեմն, ի՞նչ «իրական ուժ» ենք ստացել և ի՞նչ հույսեր կարող ենք ունենալ:

Պետք է հաշվի առնել, որ «իրական ուժը» կարող է բախվել մեկ այլ «իրական ուժի», և այս դեպքում այդ «ուժերը» ոչ մի լավ բան չեն կարող խոստանալ, ո՛չ իրենց ժողովուրդներին, ո՛չ էլ աղետի եզրին հայտնված մարդկությանը: Պետք է հաշվի առնել, որ մենք միայնակ չենք աշխարհում... Բայց չէ որ մենք ճիշտ ենք, և դրանում համոզված է մարդկային հասարակության գործնականորեն մտածող մեծամասնությունը: Ինչպե՞ս վարվել, երբ քո կողմն է թե՛ պատմական, թե՛ տրամաբանական և թե՛ բարոյական ճշմարտությունը: Ինչպես առանձնացնել, միմյանցից անջատել ճշմարիտն ու կեղծը ազգային գաղափարներում, երբ «պարահրապարակի տերն» արդեն առճակատումն է, բախումները: Անցյալի և մեր օրերի քաղաքական գործիչների սխալները վկայակոչելը դեռևս չի հուշում ելքը: Անտինոմիաների (հակասությունների) փակուղի, բայց ոչ թե բանականության ոլորտում, այլ ամենառեալ իրականության մեջ: Եվ այնուամենայնիվ, ելքը նույնն է, կանտյանը՝ կատեգորիկ իմպերատիվը: Թույլատրելիի և անթույլատրելիի խստագույնս սահմանազատումը:

Անթույլատրելի է, անթույլատրելի է ժամանակակից աշխարհում բռնության ձևերին դիմելը: Մենք՝ հայերս, պետք է հավատարիմ մնանք սեփական դեմոկրատիզմին և շարունակենք այդ ուղու վրա համառորեն փնտրել գաղափարի իրագործման միջոցները: Գուցե չափազանց շատ համբերություն կպահանջվի երկրաշարժից վիրավոր հայ հոգու ու մարմնի համար, բայց ոգին կոգնի, կսատարի և իր ուսերի վրա դուրս կբերի: Այնուհետև, որքան էլ տարօրինակ է, գիտակցումն այն բանի, որ մենք աշխարհում միայնակ չենք, դառը նստվածքից բացի (դարձյալ մեր դժբախտությունները ոչ ոքի չեն հետաքրքրում), պարունակում է և՛ դրական իմաստ, և՛ կատարսիս: Մենք դրանում համոզվեցինք երկրաշարժից հետո, երբ ամբողջ աշխարհը մեզ կարեկցանքի ու օգնության ձեռք մեկնեց, ինչպես նաև համագումարի ժամանակ, երբ տեսանք, որ մեր երկրի գործնականում բոլոր ժողովուրդներն ունեն իրենց ցավոտ, ընդ որում ոչ միայն սոցիալ-տնտեսական պրոբլեմները: Իհարկե, «ղարաբաղյան պրոբլեմը» եզակի է և նման չէ ռեգիոնալ պրոբլեմներից ոչ մեկին, սակայն, որքան էլ պարադոքսալ չէ, նրա լուծումը հնարավոր է միայն երկրի քաղաքական միատեսակ վերակազմավորման պայմաններում: Այսինքն, եթե ոչ միայն սահմանադրությամբ հռչակվի մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների հավասարությունն ու սուվերենությունը, այլև ռեալ ապահովվի ներփակ ազգային կազմավորումների վարչական անկախությունը: Այս առնչությամբ նոր քաղաքական մտածողությունը տակավին առաջին անվստահ քայլերն է անում:

Իսկ ի՞նչ կապ ունի այստեղ կինոն: Պարզապես կինեմատոգրաֆը իրականության լեզուն է, այն պարտավոր է փաստարկ լինելու վիճաբանության մեջ: Այն կարող է լավ ծառայություն մատուցել մեզ՝ հայերիս. մենք թաքցնելու ոչինչ չունենք, «շարժվող պատկերի» լեզվով արտահայտված ճշմարտությունը փաստարկի անվիճարկելիություն կստանա:

Իսկ վերջնական եզրակացությունը անելու ենք «մենք»՝ ոչ թե առանձին խորշերում ու բնակարաններում տեղավորվածներս, այլ ողջ մարդկության «մենք»-ը՝ ճշմարիտը կեղծից, անհատը «ես»-ից, ժողովուրդը հոտից տարբերակելուց հետո...

Կգա՞ արդյոք նման «մենք»-ի ժամանակը: Չգիտեմ: Սակայն դա արդեն ուրիշ «գաղափար» է, որի համար պետք է հասունանանք:

---

կաների արտաքին ձևաբանության և այլ գործոնների հետ կապի խնդիրը հետևողականորեն քննարկվում է Վ. Համբարձումյանի նաև այլ աշխատություններում։ Նման սևեռուն ուշադրությունը պատահական չէ, և հենց այդ ուսումնասիրություններն ու դրանցում բերվող փաստարկները կարողացան աստղագետների շրջանում բոլորովին նոր, հին նկատմամբ տրամագծորեն հակառակ տեսակետ արմատավորել գալակտիկաների առաջացման ու զարգացման վերաբերյալ։ «Ես կրկին կփորձեմ սկսել ոչ թե կանխակալ կարծիքից, այլ հիմնվելով դիտողական փաստերի վրա,— նշում է հեղինակը 1964 թվականին Բրյուսելում կարդացած իր «Գալակտիկաների միջուկների և նրանց ակտիվության մասին» զեկուցման մեջ։— Կանխակալ կարծիքները հաճախ են խոչընդոտում ճիշտ եզրակացությունների հասնելուն, եթե նույնիսկ վերջիններս որոշակիորեն հաստատվում են դիտումներով։ Ինձ թվում է, որ դեռևս կան այդպիսի նախապաշարումներ։ Իմ կարծիքով, գալակտիկաների էվոլյուցիայում միջուկների դերի ցանկացած թերագնահատում այդպիսի կանխակալ տեսակետի օրինակ է»։

Այնուհետև, որպես փաստերի ուսումնասիրման ու վերլուծման գլխավոր ուղղություն, հեղինակն ուշադրություն է հրավիրում երկու խնդիրների վրա. ա) միջուկների բնույթի և նրանցում ընթացող պրոցեսների ուսումնասիրում, բ) գալակտիկաների ամբողջական զարգացման վրա այդ պրոցեսների ազդեցության ուսումնասիրում։ Եվ որպես այդ հետազոտությունների կազմակերպման փաստական հիմք նշվում են միջուկների ակտիվության արտահայտման տարբեր ձևեր՝ միջուկների տիրույթից վայրկյանում տասնյակ և հարյուրավոր կիլոմետր արագությամբ գազի արտահոսքը, ռելյատիվիստական լիցքավորված մասնիկների հոսքերը, որոնց հետևանքով գալակտիկաների շուրջն առաջանում են ռադիոհալոներ, գազային նյութի և պլազմայի հզոր արտավիժումները, բավականին խիտ նյութի թանձրակների արտանետումները և այլն։

60-ական թվականներին Վ. Համբարձումյանի և Բյուրականի աստղադիտարանի գիտական կոլեկտիվի հետևողական աշխատանքի շնորհիվ գալակտիկաների միջուկների ակտիվության վերաբերյալ այդ գաղափարներն աստիճանաբար դարձան իշխող։ Որպես դրա արտահայտություններից մեկը, ՄԱՄ-ի «Անկայուն երևույթները գալակտիկաներում» գիտաժողովը 1966 թվականին տեղի ունեցավ Բյուրականում։ Հատորում տեղ է գտել գիտաժողովում Վ. Համբարձումյանի ներածական խոսքը, որը նույնպես նվիրված է գալակտիկաների միջուկների ակտիվությանը։ Առաջարկելով շրջանառության մեջ դնել միջուկների գոյությանը վերաբերող չափանիշներ, հեղինակը միաժամանակ նշում է, որ աստղագետները դեռևս հնարավորություն չունեն քիչ թե շատ մանրամասնորեն խոսելու գալակտիկաների միջուկների երկրաչափական բնութագրերի մասին։ Ուրեմն անհրաժեշտ է կիրառել ինտեգրալ բնութագրիչներ, ինչպիսին է, ասենք, միջուկի բաժինը գալակտիկայի ընդհանուր ճառագայթման մեջ։ Այդ բնութագրիչի մեծությունը գալակտիկայից գալակտիկա փոխվում է հսկայական սահմաններում։ Եթե մեր հարևան Անդրոմեդայի միգամածությունում այն կազմում է ճառագայթման ընդամենը մեկ հազարերորդական մասը, ապա Սեյֆերտի տիպի որոշ գալակտիկաներում հասնում է մի քանի տասնյակ տոկոսի։ Ավելին, որոշ դեպքերում դիտվում են նաև մեկուսացված միջուկներ, որոնց համար վերոհիշյալ բնութագրիչը կարող է համարվել հարյուր տոկոս։ Առաջարկվող բնութագրիչը գործածության տեսակետից բավականին ճկուն և, այդ իսկ առումով, հարմար մեծություն է։

Այս աշխատանքում կրկին անդրադառնալով միջուկների ակտիվության նշանակությանը, հեղինակը գրում է. «Միջուկների ակտիվությունը հիմնական գործոնն է, որ կանխորոշում է յուրաքանչյուր գալակտիկայի առաջացումը։ Այդ տեսակետից, յուրաքանչյուր գալակտիկայի և՛ պարուրաթևերը, և՛ գնդոլորտային բաղադրիչի բնակչությունը (հալոն) գալակտիկաներում առաջացել են կենտրոնական խիտ միջուկի ակտիվության շնորհիվ՝ որպես տարաբնույթ արտանետումների ու արտահոսքերի հետևանք... Տվյալ պահին նպատակահարմար է քննարկումից հանել զանազան հնարավոր ենթադրական ակտիվության ձևերն ու խոսել միայն այն ձևերի մասին, որոնց գոյությունը շատ թե քիչ որոշակիորեն մատնանշում են դիտումները»։

Ինչպես տեսնում ենք, Վ. Համբարձումյանն իր եզրահանգումները կառուցում է բացառապես դիտողական փաստերի հիման վրա, բոլոր պարագաներում դրանք համարելով առաջնային գիտական առաջընթացի համար։ Սա այն կարևոր պայմաններից մեկն է, որ միշտ ապահովել է նրա աշխատանքների ու տեսակետների խիստ հետևողականությունը, որ դրանք անխոցելի է դարձրել հակառակ կարծիքների դեմ շարունակ մղվող պայքարում։ Իսկ այդպիսի պայքար տեղի է ունեցել նրա գիտական գործունեության ամբողջ ընթացքում։

Մասնագետներին քաջ հայտնի է, որ Վ. Համբարձումյանը մշտապես առանձնահատուկ ուշադրություն է դարձրել տիեզերքում դիտվող անկայուն երևույթներին, դրանք համարելով տիեզերական օբյեկտների կյանքում շրջադարձային ժամանակահատվածների բնութագրիչներ։ Այն փաստը, որ անկայուն երևույթները տեղի են ունենում աստղագիտական մասշտաբներով չափազանց կարճ ժամանակամիջոցում, թույլ է տալիս համեմատաբար ավելի հեշտությամբ ուսումնասիրել տիեզերական մարմինների զարգացման ուղղությունը։ Դա էլ, իր հերթին, թույլ է տալիս



լուծել նյութի էվոլյուցիայի հետ կապված բազմաթիվ խնդիրներ և, վերջին հաշվով, դառնում կոսմոգոնիական պատկերացումների հիմքը։

Աստղերում տեղի ունեցող անկայուն պրոցեսներին նվիրված բաժինն սկսվում է «Բռնկվող օբյեկտների վիճակագրության մասին» աշխատությամբ։ Ասենք, որ այս թեմայով հեղինակն առաջին անգամ զեկուցել է 1968 թվականին։ Այսօր արդեն ամենայն համոզվածությամբ կարելի է պնդել, որ այդ աշխատանքը շրջադարձային եղավ բռնկվող աստղերի ուսումնասիրման բնագավառում։ Փաստորեն հենց այդ աշխատանքը և դրանում կատարված եզրակացությունները պատճառ հանդիսացան, որպեսզի երկարատև պարբեկային դիտումներ կազմակերպվեն աստղակույտերում բռնկվող աստղերի որոնման նպատակով։ Բանն այն է, որ զեկուցումը ներկայացնելու ժամանակ հայտնի բռնկվող աստղերի թիվն առանձնապես մեծ չէր, և աստղագետների շրջանում իշխում էր այն կարծիքը, թե աստղային բռնկումը հազվադեպ հանդիպող երևույթ է։ Չնայած դրան, ելնելով Բազումք աստղակույտում հայտնի 70 բռնկվող աստղերի վիճակագրական ուսումնասիրությունից, հեղինակը չափազանց սրամիտ ձևով ապացուցեց, որ վերոհիշյալ աստղակույտում բռնկվող աստղերի թիվը պետք է լինի առնվազն 320։ Այն ժամանակ այդ եզրակացությունը համարվում էր չափազանց համարձակ, սակայն հետագայում ապացուցվեց, որ իրականում Բազումքի բռնկվող աստղերի թիվն անհամեմատ ավելի մեծ է. բավական է ասել, որ այսօր արդեն այնտեղ հայտնաբերվել են 550-ից ավելի բռնկվող աստղեր, և հայտնագործումների թիվը շարունակում է աճել։

Անհրաժեշտ է նաև նշել, որ բռնկվող աստղերի այդ քանակության որոշումն ինքնանպատակ չէր։ Ապացուցելով, որ Բազումքի բոլոր աստղերը բռնկվող են, ցույց տրվեց նաև, որ իրենց զարգացման սկզբնական փուլում բռնկումային ակտիվությամբ օժտված են փոքր լուսատվության բոլոր աստղերը։ Իսկ դա չափազանց կարևոր եզրակացություն էր, որի դերն անհնար է գերագնահատել աստղերի առաջացման ու նրանց զարգացման առանձնահատկությունները պարզաբանելու գործում։

Գրախոսվող հատորի նույն բաժնում ներկայացած են նաև Վ. Համբարձումյանի և հեղինակակիցների՝ այս խնդրին նվիրված մի քանի այլ հոդվածներ ևս։ Դրանցում աստիճանաբար կուտակվող դիտողական նյութի հիման վրա ճշգրտվում են տրված գնահատականները, ինչպես նաև կատարվում է աստղային անկայունության այլ դրսևորումների և բռնկումների էվոլյուցիոն կապի մանրամասն քննարկում։ Այդ տեսակետից պետք է առանձնացնել ՀԽՍՀ ԳԱ թղթակից անդամ Լ. Միրզոյանի հետ ներկայացրած «Աստղային ագրեգատներում բռնկվող աստղերի դիտումների հանրագումար» աշխատությունը, որտեղ 1975 թ. դրությամբ տրվում են տարբեր աստղախմբերում դիտված բռնկվող աստղերի բաշխումներն ըստ աստղային մեծությունների ու բռնկումների հաճախության։ Առանձին-առանձին քննվում են Բազումքում, Օրիոնում, Մսուրում, Կարապում և աստղային այլ ագրեգատներում կատարված բազմամյա դիտումների արդյունքները։ Ցույց է տրվում, որ առավել երիտասարդ խմբերում բռնկվող աստղերի հետ մեկտեղ դիտվում են նաև ավելի երիտասարդ աստղեր, իսկ ավելի ծերերում վերջիններս բացակայում են, ինչը լիովին համընկնում է խմբերի ծերացման հետ նրանց անդամ հանդիսացող աստղերի ծերացման բնական ենթադրությանը։

Բռնկվող աստղերի վիճակագրական ուսումնասիրությանը նվիրված աշխատանքների շարքի հետևողական շարունակությունն է «Աստղային ագրեգատում աստղային բռնկումների հաճախությունների բաշխման արտածումը» աշխատությունը։ Եթե նախորդ աշխատություններում հեղինակը հարցին մոտենում էր համեմատաբար ավելի կոպիտ քանակական գնահատականներ ստանալու միտումով, ապա այստեղ նրա նպատակն է պարզել, թե ինչպիսի բաշխում ունեն բռնկվող աստղերն ըստ բռնկման հաճախության, այսինքն, ինչպիսին է միավոր ժամանակամիջոցում տարբեր քանակության բռնկումներ ցույց տվող աստղերի հարաբերական թիվը։ Բավականին պարզ, բայց իրենց սրամտությամբ գերող մաթեմատիկական եղանակներով հեղինակը խնդիրը հանգեցնում է ինտեգրալ հավասարումների մի տարբերակի, որի լուծումն էլ տալիս է որոնվող բաշխման ֆունկցիան։

Այս բաժնում առանձնանում է նաև «Ֆուօրներ» աշխատությունը, որը նվիրված է աստղային անկայունության բռնկումներին հարող մի այլ երևույթի ուսումնասիրմանը։ Ֆուօրի երևույթը, հեղինակի առաջարկությամբ, այդպես է կոչվել Օրիոնի համաստեղության FU աստղի անունով։ Բանն այն է, որ այդ աստղը 1936 թվականին բռնկվելով և, իր պայծառությունը հարյուրավոր անգամ մեծացնելով, իր սկզբնական վիճակին չի վերադարձել սովորական բռնկվող աստղերի նման բավականին արագ։ Նա իր պայծառությունը նվազեցնում է չափազանց դանդաղ և մինչև այժմ էլ մոտ 100 անգամ ավելի պայծառ է իր սկզբնական վիճակի համեմատությամբ։ Պայծառության նման աճ են ցուցաբերել ևս մի քանի աստղեր, որոնք պայծառանալուց հետո իրենց բնութագրերով նմանվել են բարձր լուսատվության լավ հայտնի աստղերին։ Նշանակում է, տեղի է ունեցել այդ աստղերի բավականին լուրջ որակական փոփոխություն, և այդ երևույթը կարոտ է հիմնավորված ֆիզիկական մեկնաբանության։ Աշխատության մեջ Վ. Համբարձումյանը առաջարկում է բացատրություն, որը հիմնված է նախաաստղային գերխիտ

նյութի կողմից տարբեր ձևերով առաքվող էներգիան բռնկման հետևանքով սովորական էլեկտրամագնիսական ճառագայթման փոխարկվելու վրա։ Հեղինակը, որպես Ցուրի երևույթը սովորական բռնկումների հետ կապող օղակ, մատնանշում է, այսպես կոչված, դանդաղ բռնկումները, որոնք աչքի են ընկնում իրենց երկարատևությամբ և բռնկումային էներգիայի մեծ չափերով։

Հարկ է նշել, որ աստղային անկայունության տարբեր դրսևորումների ազգակցական կապի հաստատումը չափազանց կարևոր նշանակություն ունի և, որոշակի իմաստով, այդ հարցի պարզաբանումից է կախված աստղերի զարգացման տարբեր փուլերի մեր ըմբռնումը, դրա վերաբերյալ հիմնավորված տեսությունների ստեղծումը։ Ուստի պատահական չէ, որ այդ պրոբլեմների լուծման նպատակով ներկայումս հետազոտություններ են կատարվում աշխարհի բազմաթիվ գիտական կենտրոններում։

Զուտ մաթեմատիկական բնույթի խնդիրներ են դիտարկվում «Լույսի ցրման տեսություն» բաժնում, որոնք կարևոր նշանակություն ունեն տարբեր ֆիզիկական միջավայրերից մեզ հասնող լույսի օգնությամբ այդ միջավայրերի մասին ինֆորմացիա ստանալու տեսակետից։ Այս բաժնում քննարկվում են ինչպես համեմատաբար պարզ գծային խնդիրներ, այնպես էլ ոչ գծային խնդիրներ, որոնցում անհրաժեշտություն է առաջանում խստորեն հաշվի առնել նաև ճառագայթային դաշտի ազդեցությունը միջավայրի հատկությունների վրա։ Այս բարդ խնդիրների լուծման նպատակով Համբարձումյանը կիրառում է դեռևս 40-ական թվականներին իր իսկ առաջարկած ինվարիանտության սկզբունքը։

Պետք է նկատել, որ ինվարիանտության սկզբունքը հետագայում կիրառվել է նաև գիտության տարբեր բնագավառների բազմաթիվ այլ խնդիրների լուծման համար։ «Ինվարիանտության սկզբունքի և նրա կիրառությունների մասին» աշխատությունում հեղինակը հակիրճ ամփոփել է այդ սկզբունքի ստեղծումից հետո անցած քառասուն տարիների ձեռքբերումները։ Հիշյալ աշխատության վերջում հեղինակը որոշակիորեն արտահայտում է իր տեսակետը ինվարիանտության սկզբունքի նկատմամբ. «Ինվարիանտության սկզբունքը մենք միշտ էլ դիտարկել ենք որպես օգտակար գործելակերպ մաթեմատիկական ֆիզիկայի, տեսական աստղաֆիզիկայի, մաթեմատիկայի որոշ բաժինների դժվար խնդիրների լուծման համար։ Եվ ինչպես ցանկացած այլ գործելակերպ, այն կարող է արդյունավետ զարգանալ միայն լուծման այլ գործելակերպի և միջոցների հետ սերտ համագործակցության մեջ։ Կարծում ենք, որ հատկապես կարևոր է լավ զուգադրման հասնել այդ գործելակերպի և մեքենայական հաշվարկների զուտ թվային մեթոդների միջև»։

Հատորի չորրորդ՝ «Աստղերի կառուցվածքն ու էվոլյուցիան» բաժինը սկսվում է գերխիտ նյութի հավասարակշիռ գոյաձևերին նվիրված երեք աշխատություններով։ Ասենք, որ դրանցում զետեղված ուսումնասիրությունները կատարվել են ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Սահակյանի հետ։ Այդ աշխատությունները նախաստղային գերխիտ նյութի գոյության մասին հեղինակի առաջ քաշած վարկածի տեսական հիմնավորումն են։ Այդ վարկածը, որ չափազանց արդյունավետ եղավ աստղերում և գալակտիկներում անկայուն երևույթներն ընդհանուր ելակետից բացատրելու, ինչպես նաև տիեզերական օբյեկտների էվոլյուցիայի վերաբերյալ նոր տեսակետ ձևավորելու համար, կարոտ էր տեսական հիմնավորման, և վերոհիշյալ աշխատանքները, անկասկած, չափազանց կարևոր ներդրում են այդ գործում։ Չնայած այնուհետև Վ. Համբարձումյանն այլևս չի զբաղվել գերխիտ գոյաձևերի տեսական հետազոտությամբ, սակայն դրանց գոյության հնարավորությունն ապացուցելով, նա հիմք դրեց տեսական հետազոտությունների բավականին լայն բնագավառի։

Տասնամյակներ շարունակ աստղաֆիզիկոսներն ինտենսիվորեն զբաղվում են աստղերի և միգամածությունների առաջացման հարցով։ Ընդ որում, նրանց մեծ մասը ելնում է աստղառաջացման, այսպես կոչված, խտացման տեսակետից։ Վերջինիս կողմնակիցները պնդում են, որ աստղերն առաջանում են միջաստղային գազի և փոշու խտացման հետևանքով. դրա հիման վրա ստեղծվում են բազմաթիվ տեսություններ։ «Միգամածությունների առաջացման մասին» աշխատությունը նվիրված է այդ խնդրի վերաբերյալ գոյություն ունեցող փաստական նյութի վերլուծությանն ու նշված տեսակետի սնանկության ապացուցմանը։ Ելնելով նորագույն դիտողական տվյալներից, հեղինակը համոզչորեն ցույց է տալիս, որ միգամածությունները կամ առաջանում են աստղերից արտանետվող նյութից, կամ՝ դրանց հետ միասին։ Այնպես որ, խոսք չի կարող լինել միգամածություններից աստղերի առաջացման մասին։ Պետք է վերջիվերջո ընդունել, որ թե՛ առաջինների, թե՛ վերջինների առաջացումը կապված է նախաստղային նյութի տրոհման հետ։

Նույն թեմային է նվիրված նաև «Կարծիքներ աստղերի առաջացման խնդիրների վերաբերյալ» ուսումնասիրությունը, որտեղ շարադրված են Բյուրականի աստղադիտարանում վերջին երեք-չորս տասնամյակների ընթացքում հետևողականորեն զարգացվող տեսակետները։ Անդրադառնալով երիտասարդ աստղերից նյութի դիտվող բավականին հզոր արտահոսքերին, հեղինակը այդ փաստը համարում է աստղառաջացման տեսությունների ստեղծման ամենակարևոր հիմքերից մեկը, առանց որի հաշվառման անհնար է իրականությունը նկարագրող տեսակետներ առաջարկելը։ «Դիտումներն ուղղակիորեն ցույց են տալիս, որ նրանք (ցրված միգամածությունները— Հ. Հ.) առաջանում են նյութից, որը դուրս է նետվում զանգվածեղ օբյեկտներից (այդ թվում նաև երիտասարդ աստղերից) և այնուհետև անհետանում են ցրման ու տրոհման հետևանքով»,— եզրակացնում է հեղինակը։



Վ. Համբարձումյանը նաև բնագիտության փիլիսոփայության խոշորագույն ներկայացուցիչներից մեկն է մեր երկրում։ Նրա նույնիսկ զուտ մասնագիտական աշխատությունների մեծ մասը, որոնք նվիրված են տիեզերական տարբեր օբյեկտների առաջացման ու էվոլյուցիայի խնդիրներին և նպատակ չունեն իմացաբանական ընդհանրացումների, կարող են դիտարկվել որպես մատերիալիստական մտածողության ու մեթոդաբանության կիրառման լավագույն օրինակներ։ «Աշխատությունների» երրորդ հատորի վերջին բաժինը, որտեղ զետեղվել են ընդհանուր բնույթի հոդվածներ, սկսվում է «Ժամանակակից բնագիտությունը և փիլիսոփայությունը» աշխատանքով։ 1968 թվականին գիտնականը այս թեմայով զեկուցում է կարդացել փիլիսոփայական միջազգային 15-րդ կոնգրեսում։ Հոդվածի սկզբում հեղինակը նշում է. «Պարզվեց, որ համապարփակ համարվող տեսություններն ընդունելի են միայն որոշակի և բավականին նեղ սահմաններում։ Արմատացած շատ դոգմաներ, կանխակալ կարծիքներ և նախապաշարումներ, որոնք համարվում էին «անսասան», այժմ դարձել են բնագիտության պատմության սեփականությունը։ Ժամանակակից բնագիտությունն ստեղծել է նոր հիմնարար հասկացություններ, աշխարհի բնագիտական նոր պատկեր, որն ավելի խոր է արտացոլում բնության օբյեկտիվ իրականությունը»։ Այս խոսքերը մեծ չափով վերաբերում են նաև հենց իր՝ Վ. Համբարձումյանի աշխատություններին, որոնք իսկական հեղաշրջում մտցրին տիեզերական օբյեկտների առաջացման և էվոլյուցիայի վերաբերյալ պատկերացումների մեջ։ Քննելով տարբեր գիտությունների զարգացման ինտենսիվությունը մեր հարյուրամյակում, հեղինակը եզրակացնում է, որ մոտ ապագայում աստղագիտությունը կրկին կարող է դառնալ ամբողջ բնագիտության իսկական առաջատար, քանի որ միայն նա է ի վիճակի տալու բազմաթիվ նոր փաստեր։

Քննության առնելով գիտության մեջ իմացության օբյեկտի և սուբյեկտի խնդիրները, ինչպես նաև հետազոտողի առաջադրած խնդրի կամ հարցադրման կարևորությունը, հեղինակը եզրակացնում է. «Իհարկե, գիտության համար որոշակի արժեք է ներկայացնում ճիշտ դրված ցանկացած փորձի արդյունքը, բայց, այնուամենայնիվ, պետք է խոստովանել, որ գիտական առաջընթացի համար մեծագույն խթան են հանդիսացել այն դեպքերը, երբ բնությունը տվել է հետազոտողի համար անսպասելի պատասխաններ կամ ինքն է դրել էլ ավելի անսպասելի հարցեր»։ Խոսելով գիտության զարգացման օրինաչափությունների մասին, հեղինակը ուշադրություն է հրավիրում նաև այն փաստի վրա, որ նույնիսկ ֆիզիկայից անկախ ծնված ու զարգացած մաթեմատիկական շատ ուղղություններ հետագայում կիրառություն են գտնում ֆիզիկայում ծագած նոր ուղղությունների համապատասխան տեսություններ ստեղծելու համար։ Դա բնագիտական օրինաչափությունների սերտ համակապակցվածության արդյունքն է, որի շնորհիվ գիտության տարբեր բնագավառներ շարունակ փոխհարստացնում ու փոխադարձաբար օգնում են իրար։

Հետաքրքիր է նաև գիտության մեջ ինտուիցիայի դերի քննումը։ Հեղինակը գտնում է, որ «մարգարեական» եզրակացությունները, որոնք թվում է, առաջ են անցել իրենց ժամանակից, սովորաբար հիմնված են գոյություն ունեցող փաստական նյութի վրա։ Հետազոտողի ինտուիցիան, իրադրության ճիշտ գնահատումն ու խնդրին մոտենալու ճիշտ տարբերակ ընտրելը կանխորոշում են առաջին հայացքից անակնկալ եզրակացություններ անելու հնարավորությունը։ «Բնության մասին գիտությունների և, մասնավորապես, ֆիզիկայի ժամանակակից զարգացումը համոզում է մեզ, որ, չնայած իմացության սուբյեկտի աճող ակտիվությանը, այդ գիտություններում կատարվող եզրահանգումներն այժմ, ինչպես և առաջ, համապատասխանում են սուբյեկտից դուրս և նրանից անկախ օբյեկտիվ իրողությանը, իսկ, ավելի ճիշտ, նրա որոշակի կողմերին»,— նշում է հեղինակը։ Ֆիզիկոսների կողմից ուսումնասիրվող օբյեկտիվ իրողությունը, որին կարելի է տալ ֆիզիկական իրողություն անունը, ժամանակի ցանկացած հատվածում բնութագրվում է հայտնի փաստերի և օրինաչափությունների հավաքածուով, որի վրա էլ հենց հիմնվում են հետագա եզրակացությունները։ Սա է գիտության զարգացման միակ ճիշտ ուղին։

Փիլիսոփայության և բնագիտության կապին նվիրված այս աշխատանքը չափազանց կարևոր նշանակություն ունի գիտական խնդիրների ձևակերպման և լուծման ճիշտ ստրատեգիա ընտրելու գործում։ Այն օգտակար կարող է լինել գիտության ցանկացած բնագավառի ներկայացուցչի համար։ Այստեղ, բնականաբար, հնարավոր չէ մանրամասն կանգ առնել հոդվածում քննարկվող բոլոր խնդիրների վրա, որոնցում շոշափվում են նաև աշխարհի վերաբերյալ միասնական բնագիտական մոտեցման, ժամանակակից բնագիտության զարգացման բազմաթիվ այլ հարցեր։

Մեր խնդիրը չէ ներկայացնել ստվարածավալ հատորի բոլոր աշխատությունները։ Դա պարզապես անհնար է իրականացնել։ Մեր խորին համոզմամբ, այդ ուսումնասիրությունների մեջ իրենց հետաքրքրող գաղափարներ ու հարցադրումներ կգտնեն ոչ միայն աստղաֆիզիկոսները։ Գրեթե բոլոր գիտություններում տեղի ու-

նեցող մաթեմատիկացումը, վիճակագրական տարբեր եղանակների կիրառումը հնարավորություն են ստեղծել մի գիտության նպատակների համար ստեղծված մեթոդները օգտագործել նաև այլ, հաճախ նույնիսկ շատ տարբեր գիտություններում։ Որպես նման հետաքրքիր կիրառության օրինակ կարելի է հիշատակել վերջերս անգլիացի լեզվաբանների կողմից վիճակագրական որոշ բանաձևերի կիրառումը մի բանաստեղծության համար Շեքսպիրի հեղինակությունն ապացուցելիս։ Որքան էլ զարմանալի կարող է թվալ, այդ նպատակով օգտագործվել են ճիշտ այն բանաձևերը, որոնք Վ. Համբարձումյանը 1968 թվականին կիրառել էր Բազումք աստղակույտում բռնկվող աստղերի քանակը որոշելու նպատակով։ Կասկած չկա, որ դարերի խորքը գնացող մեր գրականության ու պատմագրության մեջ էլ կան էջեր, որոնք նույնպես կարոտ են նման ուսումնասիրությունների, և դրանք կարող են իրականացվել Վ. Համբարձումյանի առաջարկած եղանակով։

Մենք միայն մեկ օրինակ բերեցինք, թե ինչպես կարող է որևէ նպատակով ստեղծված մաթեմատիկական ապարատը կիրառություն գտնել բոլորովին այլ բնագավառում, որը, թվում է, ոչ մի կապ չի կարող ունենալ աստղային բռնկումների վիճակագրության հետ։ Կասկած չկա, որ ժամանակի ընթացքում բազմաթիվ նոր կիրառություններ կգտնեն աստղաֆիզիկայի տարբեր խնդիրների լուծման նպատակով առաջարկված այլ մեթոդներ, և այսօր կարող ենք համոզված պնդել, որ ակադեմիկոս Վ. Համբարձումյանի առաջադրած գաղափարները, խնդիրների լուծման եղանակները դեռևս շատ երկար կմնան մասնագետների ուշադրության կենտրոնում ու կդառնան նորանոր ուսումնասիրությունների աղբյուր...

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Բյուրականի աստղադիտարանի դիրեկտորի գիտական աշխատանքների գծով տեղակալ, ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու

## ԸՆԴԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ՀԱՆՑԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ

Իրավաբանական գրականության մեջ դեռևս լիովին չեն բացահայտված երկրորդ համաշխարհային պատերազմում հիտլերյան Գերմանիայի պարտության հետևանքով միջազգային հարաբերություններում կատարված տեղաշարժերը։ Վերոհիշյալ հրատապ հարցին է նվիրված Ս. Չոբանյանի «Երրորդ ռայխի հանցագործությունները և արդիականությունը»* գիրքը։

Ընթերցողներին ներկայացվող այս ուսումնասիրության մեջ բազմաթիվ փաստաթղթերի, արխիվային նյութերի հիման վրա ցույց է տրվում նացիստների հանցավոր գործունեությունը։ Հեղինակը նշում է, որ Նյուրնբերգյան դատավարությունը շրջադարձային կետ դարձավ միջազգային ծանր հանցագործությունների բացահայտման գործում։

Միջազգային քրեական իրավունքը ամեն մի պետության վրա դնում է որոշակի պարտականություններ, հատկապես միջազգային բնույթ կրող հանցագործությունները կանխելու և մեղավորներին պատժելու առնչությամբ։ Միջազգային հանցագործությունը խաղաղության և մարդկության դեմ կատարած հանցագործություն է՝ ինչպես ձևակերպված է Նյուրնբերգյան միջազգային ռազմական տրիբունալի կանոնադրությունում, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի՝ 1946 թ. դեկտեմբերի 11-ի և 1947 թ. նոյեմբերի 21-ի բանաձևերում և ցեղասպանության կանխման ու նրա համար պատժի մասին՝ 1948 թ. դեկտեմբերի 9-ի համաձայնության մեջ։

Հայտնի է, որ ֆաշիստական պարագլուխները ոտնակոխ արեցին և ոչնչացրին անձի ազատության մեծ երաշխիքներ տվող Վեյմարյան օրենսդրությունը։ Վերջինիս 114-րդ հոդվածը նախատեսում էր անձի ազատության անձեռնմխելիություն։ Հասարակական իշխանության կողմից անձի ազատության սահմանափակումը կամ նրանից լրիվ զրկելը պետք է օրինական հիմք ունենար։

Միավորված ազգերի կազմակերպությունը, ինչպես հայտնի է, միջազգային տեռորիզմի մասին չի ընդունել միջազգային-իրավական ակտ։ ՄԱԿ-ի օրգաններում դեռ քննարկվում է միջազգային տեռորիզմը բնորոշելու հարցը։

Երրորդ ռայխի գործունեության ուսումնասիրության հիման վրա հեղինակն առաջադրում է պետական տեռորիզմի հետևյալ բնորոշումը. «Պետական տեռորիզմը անհատի ֆիզիկական և բարոյական ոչնչացման միջոցների ու գործողությունների ամբողջությունն է պետության ու նրա պաշտոնատար անձանց կողմից՝ հիմնված ռասայական մարդատյացության գաղափարների վրա, նպատակ ունենալով համատարած կերպով ոչնչացնել «ոչ լիարժեք» ժողովուրդներին

* **Чобанян С. С.** Преступления Третьего рейха и современность. Ереван, изд. Айастан, 1988, 275 стр.



և ազգերին։ Դա միջոց է ճնշելու առաջադիմական շարժումը, բարոյալքելու, վախեցնելու մարդկանց, դա համընդհանուր բռնությանը նպատակաուղղված ակտ է։ Այս գործողությունները միջազգային հանցագործություն են» (էջ 90)։

Երկրորդ գլխում, ուսումնասիրելով գերմանական ֆաշիզմի հանցագործությունները, հեղինակը նորովի է մոտենում դրանցից մեկին՝ դիակապտությանը։ «Նյուրնբերգյան ռազմական տրիբունալի դատավճռում ասվում է, որ միջազգային խաղաղության դեմ հանցագործությունները «կատարվում են մարդկանց միջոցով և ոչ թե վերացական կատեգորիաների» (էջ 93)։ Ռազմական տրիբունալը պատերազմը պլանավորելու, նախապատրաստելու, սանձազերծելու և վարելու համար կոնկրետ անձանց նկատմամբ դատավճիռ կայացնելիս տվել է ագրեսիայի միջազգային գնահատականը, որակելով այն որպես մարդկության դեմ ուղղված միջազգային ծանրագույն հանցանք։

Զինված ագրեսիայի հետևանք հանդիսացող, ձևով և բովանդակությամբ այնպիսի մի նոր հանցագործություն, ինչպիսին դիակապտությունն է, չդիտվեց և չորակավորվեց որպես միջազգային բնույթի ծանրագույն հանցանք։ Հետազոտողն իր եզրակացությունները հիմնավորում է հետևյալ համոզիչ փաստարկներով. գերմանական ֆաշիստների «Քաղաքակրթված» ոհմակը պատերազմ էր մղում հիվանդների և վիրավորների, ռազմագերիների և պարտիզանների, տարագիրների, ինչպես նաև ոչ արիական ծագում ունեցողների դեմ։ Պետականորեն կազմակերպված դիակապտությունը նա իրագործում և ղեկավարում էր մասսայական թալանի, սպանությունների միջոցով՝ մահվան ճամբարներում, հատուկ պատրաստված մեկուսարաններում, «բաղնիքներում», բժշկական քննության վայրերում, այնպիսի տեղերում, ուր կարելի է կենդանի կամ մեռած մարդուց ստանալ մաշկ, արյուն, մազեր, ոսկորներ, ճարպ՝ տեխնիկական յուղ և օճառ պատրաստելու համար և այլն։ Միջազգային իրավունքի մեջ «դիակապտություն» հասկացությունը որպես միջազգային բնույթի քրեական հանցանք, մեր կարծիքով, ձևակերպված է ոչ այնքան ճշգրիտ։ Այն որպես ռազմական բնույթի հանցագործություն երևան է եկել անցյալ դարի վերջին։ Սույն խնդիրն ուսումնասիրող մենագրությունները քիչ են։

Այս առնչությամբ հեղինակը հավաստի փաստեր բերելով հայ ժողովրդի նկատմամբ դարասկզբին կատարված մեծ եղեռնագործությունից, նշում է, որ պետականորեն կազմակերպված դիակապտությունը որպես միջազգային հանցագործություն թուրքական կառավարության կողմից կիրառվել է առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ, այնուհետև զարգացվել, կատարելագործվել է Երրորդ ռայխի կողմից։

ԱՄՆ-ի կառավարող շրջանների հեգեմոնիզմին և ագրեսիային նվիրված գլխում նորովի է բնութագրվում «սառը պատերազմի» սկիզբը, քանի որ, շատ միջազգայնագետների կարծիքով, տնտեսական և քաղաքական պայքարը ԽՍՀՄ-ի ու նրա դաշնակիցների դեմ, այսինքն՝ «սառը պատերազմը», սկզբնավորվել է Անգլիայի նախկին պրեմիեր մինիստր Ուինստոն Չերչիլի կողմից տակավին 1943 թվականին։ Ոմանք նշում են 1946, 1947 թվականները. որոշ միջազգայնագետներ էլ «սառը պատերազմի» սկիզբը կապում են ավելի ուշ ժամանակների՝ 50-ական թվականների հետ։

Հեղինակը պնդում է, որ Տրումենի պրեզիդենտության հենց առաջին օրից սկիզբ է դրվել ագրեսիվ, հանցավոր քաղաքականության խիստ կուրսի, Յալթայի և Պոտսդամի համաձայնագրերից և միջազգային պարտավորություններից նահանջի։ Իսկ 1945 թ. կեսերին սկսվեց «ատոմային դիվանագիտությունը»՝ որպես ԽՍՀՄ-ի վրա ճնշում գործադրելու միջոց։

Հեղինակն ընդգծում է, որ աշխարհի ժողովուրդների զանգվածային շարժումները բարենպաստ պայմաններ են ստեղծել բոլոր տերությունների համագործակցության հիման վրա միջուկային, քիմիական-մանրէաբանական և սովորական զենքերը կրճատելու կամ վերացնելու հարցերի քննարկման համար։ Այս մարզում «առաջին ծիծեռնակները» եղան փոքր և միջին հեռահարության հրթիռների վերացման պայմանագիրը և «Միջազգային խաղաղության և անվտանգության համապարփակ համակարգ ստեղծելու» հարցի մասին ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նստաշրջանի բանաձևը։ Ընթերցողը գրքում կգտնի ուշագրավ նորահայտ փաստեր, վավերագրեր։

Վերոհիշյալից հետևում է, որ լույս է տեսել միջազգային հարաբերությունների պատմության կարևոր հարցերին նվիրված հետաքրքիր ուսումնասիրություն։

Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու

**ՀԱՐԳԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ**

**Շարունակվում է «Լենինյան ուղիով» ամսագրի 1990 թ. բաժանորդագրությունը։**

**Շտապեցե՛ք բաժանորդագրվել։**

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 9, 1989 թ., Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարելու 26.08.89 թ.։ Ստորագրվել է տպագրելու 21.09.89 թ.։ ՎՖ 02349։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 12 232։ Պատվեր № 1039։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.